ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 ՀՈՒՆԻՍ • 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
„ЛЕНИНЯН УГИОВ" ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## Բովանդակություն

Ն. Ս. Խրուշչովը նշել է, որ բոլոր մարդկանց դաստիարակումը կոմունիստական իդեալների ոգով՝ ներկայումս մեր պարտիայի գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրն է:

Կոմունիստական գաղափարախոսության դեմ իմպերիալիզմի կողմից կատարվող գաղափարական դիվերսիան նույնպես հրամայաբար պահանջում է ուժեղացնել մեր գաղափարական աշխատանքը, վճռական հակահարված հասցնել բուրժուական գաղափարախոսության բոլոր դրսևորումներին: Պարտիան վճռականորեն դատապարտում է գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության քարոզը, այն դիտելով որպես դավաճանություն կոմունիզմի գործին: Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումն ընդգծեց. **«Ժամանակակից պայմաններում պարտիայի գաղափարա-դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրն է՝ գաղափարապես ապահովել ՍՄԿՊ ծրագրի կենսագործումը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորումը, նոր մարդու դաստիարակությունը, բարձրացնել քաղաքական զգոնությունը, ծավալուն հարձակում գործել իմպերիալիստական գաղափարախոսության վրա, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների վրա»:**

Անցած մեկ տարին, իիրավի, բեղմնավոր տարի էր մեր պարտիայի, սովետական ամբողջ ժողովրդի կյանքում: Պարտիայի կողմից գաղափարական ճակատի աշխատողներին առաջադրված նոր, պատասխանատու խնդիրները հիմք հանդիսացան այդ բնագավառի ամբողջ գործունեության աշխուժացման համար:

Կենսագործելով պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն առավել չափով իրենց ուշադրությունը կենտրոնացրին գաղափարական աշխատանքի վրա: Այն դարձավ ավելի նպատակասլաց, ավելի կոնկրետ, բարձրացավ նրա դերը պարտիական կազմակերպությունների ամբողջ գործունեության մեջ: Այժմ մենք կարող ենք գոհունակությամբ նշել, որ պարտիական կազմակերպությունները զգալի փորձ են կուտակել ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումների կատարման ուղղությամբ:

ՀԿՊ Կենտկոմը, քաղկոմները, շրջկոմներն ու պարտկոմները, գաղափարական աշխատանքի հաստատությունները մի շարք միջոցառումներ իրականացրին հունիսյան պլենումի որոշումները բնակչության մեջ մասսայականացնելու, գաղափարական աշխատանքը նոր խնդիրների մակարդակին բարձրացնելու նպատակով: Պարտիական կոմիտեները հատկապես մեծ ուշադրություն նվիրեցին պարտիական պրոպագանդայի ազդեցության ոլորտի ընդլայնման հարցերին: Այդ մասին է վկայում քաղաքական լուսավորության ոլորտի հետագա ընդլայնումը: Քաղաքական լուսավորության ընթացիկ ուսումնական տարում ունկնդիրների թիվը հասավ 210 հազարի: Հատկանշական է, որ քաղաքական լուսավորության սիստեմում ընդգրկված են մոտ 120 հազար անկուսակցականներ: ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջներին համապատասխան կարգացավ ինքնուրույն ուսուցման սիստեմը, հատկապես, նրա սեմինարային ձևը:

Տարեցտարի ավելի է մեծանում պարտիականների և անպարտիականների հետաքրքրությունը տնտեսական գիտելիքների նկատմամբ, աճում է մարքս-լենինյան տնտեսական ուսմունքը և կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրողների թիվը: Բավական է նշել, որ ընթացիկ ուսումնական տարում տնտեսական գիտելիքներ է ձեռք բերում քաղաքական լուսավորության ցանցի ունկընդիրների 42 տոկոսը:



Տնտեսագիտական ուսուցումը կազմակերպվել է ավելի դիֆերենցված, արտադրության ճյուղերին և մասնագիտություններին համապատասխան: Տնտեսագիտական թեորիայի ընդհանուր պրոբլեմներից բացի ունկնդիրներն ուսումնասիրում են արտադրության կատարելագործման, կապիտալ ներդրումների ու ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման հարցերը: Ուսուցումը նպաստում է աշխատավորների թե՛ քաղաքական և թե՛ արտադրական ակտիվության բարձրացմանը: Նրանք համարձակ վերլուծում են ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական գործունեությունը, հանդես են գալիս գործարար առաջարկություններով, նպաստելով տնտեսական առաջադրանքների հաջող կատարմանը:

Բանվորների և կոլտնտեսականների համար ստեղծվել են արտադրական ուսուցման դպրոցներ ու դասընթացներ, տեխմինիմումի դպրոցներ արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, ագրո-զոոտեխնիկական և մեխանիզատորական ուսուցման դասընթացներ սովխոզներում և կոլտնտեսություններում: Տասնյակ հազարավոր կոմունիստներ ու անկուսակցականներ ուսումնասիրում են ՍՄԿՊ պատմությունը, մարքս-լենինյան փիլիսոփայությունը, ընթացիկ քաղաքականության, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման և գիտական աթեիզմի հարցերը:

Ծավալվել ու կարգանում են պրոպագանդայի մասսայական ձևերը: Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 128 ժողովրդական համալսարան, կոմունիստական աշխատանքի 106 դպրոց, 138 մասսայական լեկտորիումներ, որոնցում ընդգրկված են 24.572 ունկնդիրներ:

Զգալիորեն բարելավվել է պրոպագանդիստական կադրերի կազմը, բազմակողմանի է դարձել նրանց հետ տարվող աշխատանքը: Ներկայումս պարտիական-պրոպագանդիստական աշխատանք են տանում 9113 պրոպագանդիստներ, որոնցից 7645-ը ունեն բարձրագույն, 956-ը՝ թերի բարձրագույն կրթություն: Պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողների զգալի մասը անմիջապես մասնակցում է պրոպագանդիստական աշխատանքին:

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումն ընդգծեց պրոպագանդիստական կադրերին սիստեմատիկաբար օգնելու, նրանց ուսուցումը ճիշտ կազմակերպելու հարցը: Եվ այդ հասկանալի է: Չէ՛ որ որքան էլ մենք խոսենք խմբակների և սեմինարների պարապմունքների, գաղափարական, քաղաքական մակարդակի բարձրացման մասին, վերջին հաշվով նրանց գործունեության հաջողության գլխավոր առանցքը պրոպագանդիստի, սեմինարի ղեկավարի ունակությունն է, պատրաստականությունը, ուսումնասիրվող նյութը մատուցելու նրա վարպետությունը:

Քաղաքական լուսավորության գաղափարական-տեսական մակարդակը պայմանավորված է պրոպագանդիստների կազմով, այն բանով, թե պարտիայի քաղկոմները, շրջկոմները, արտադրական պարտիական կոմիտեները և սկզբնական կազմակերպություններն ինչ մոտեցում ունեն դեպի պրոպագանդիստական կադրերը, ինչպես են աշխատում նրանց հետ, օգնում և հոգ տանում նրանց մասին:

Վերջին տարվա համար հատկանշական է երիտասարդ, տեսականորեն պատրաստված պրոպագանդիստների առաջքաշումը: Բայց գիտելիքներ ունենալը դեռ բավական չէ մարդկանց կոմունիստական դաստիարակությունը պատշաճ մակարդակով վարելու համար: Գիտելիքների հետ մեկտեղ պրոպագանդիստից պահանջվում են կազմակերպչական ունակություններ, բավարար կենսափորձ, համոզելու, ունկնդիրների վրա ազդելու ձիրք: Այս բնագավառում տակավին մենք շատ անելիքներ ունենք:

Պարտիական կոմիտեները և կազմակերպությունները պրոպագանդիստին հաստատելիս պետք է ճիշտ ընտրություն կատարեն, ելակետ ունենալով այն անհրաժեշտ պայմանը՝ թե նա կարո՞ղ է իսկապես ղեկավարել խմբակ կամ սեմինար, լինել մասսաների քաղաքական դաստիարակ: Պետք է վերջ դնել այն արատավոր պրակտիկային, երբ առանձին պարտիական կոմիտեներ պրոպագանդիստներին հաստատում են ցուցակով, առանց նույնիսկ նրանց հետ զրուցելու: Անհրաժեշտ է պրոպագանդիստների հետ քրտնաջան, նպատակասլաց աշխատանք տանել, վերացնել ֆորմալիզմը քաղաքական աշխատանքի բոլոր օղակներում:

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումից հետո գաղափարական աշխատանքում նոր թափ ստացան հասարակական հիմունքները: Ռեսպուբլիկայում հասարակական հիմունքներով այժմ գործում են քաղաքական լուսավորության 147 կաբինետներ, 84 մեթոդական խորհուրդներ, 138 գաղափարական հանձնաժողովներ: Փորձը ցույց է տվել, որ գաղափարական հանձնաժողովները գաղափարական աշխատանքի կոորդինացման լավագույն ձևերից են, որոնք կգալի օգնություն են ցույց տալիս պարտիական կազմակերպություններին պրոպագանդիստական, ագիտացիոն և քաղաքական-դաստիարակչական աշխատանքները բարելավելու գործում: Այս տեսակետից ուշագրավ է ՀԿՊ Երևանի 26 կոմիսարների շրջկոմին կից գործող գաղափարական հանձնաժողովի աշխատանքը: Նրա անդամները լինում են կազմակերպություններում, կոնկրետ մեթոդական ու տեսական օգնություն ցույց տալիս պարտկազմակերպությունների քարտուղարներին, պրոպագանդիստներին ու ագիտատորներին:

Դրական փորձ է կուտակել պոլիվինիլացետատ գործարանի պարտիական կոմիտեին կից գործող գաղափարական հանձնաժողովը, որի անդամները ակտիվ մասնակցեցին քաղուսցանցի խմբակների ու սեմինարների կոմպլեկտավորմանը: Գործարանի յուրաքանչյուր երկու աշխատողից մեկը ընդգրկված է քաղաքական լուսավորության ցանցում: Գաղափարական հանձնաժողովը հատուկ ուշադրություն է նվիրում կադրերի տնտեսագիտական ուսուցմանը, կազմակերպում է գիտա-արտադրական կոնֆերանսներ: Գործարանում հիմնվել են կոմունիստական աշխատանքի 40 դպրոց, որոնց պարապմունքներին ներգրավվում են ինժեներներ, տեխնոլոգներ, արտադրության նորարարներ:

Պարտիական-քաղաքական աշխատանքում լայնորեն տարածվել են նաև պարտիական կոմիտեներին կից ստեղծված արտահաստիքային բաժիններն ու հրահանգիչների խմբերը: Կիրովականում հաջողությամբ գործում են երիտասարդ ռացիոնալիզատորների ինստիտուտը, կոնստրուկտորական և նախագծային բյուրոն, կոմունիստական կենցաղին աջակցող խորհուրդները և այլն: Երևանում և Լենինականում պարտիական, սովետական և տնտեսական ակտիվի համար գործող կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի համալսարանների պարապմունքներում ոչ միայն դասախոսություններ ու զեկու-



ցումներ են կարդացվում մարքս-լենինյան տեսության կարևորագույն հարցերի և կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրների շուրջ, այլև կոնկրետ առաջարկներ են արվում, վերլուծվում են պարտիական, սովետական և տնտեսական օրգանների աշխատանքներում տեղ գտած թերությունները, նշվում դրանց հաղթահարման ուղիներն ու միջոցները:

Պարտիայի կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումներից հետո առանձնապես մեծացել է աշխատավորների հետաքրքրությունը քիմիական գիտելիքների նկատմամբ: Ուշադրության է արժանի Արտաշատում կազմակերպված ագրոքիմիայի համալսարանը: Համալսարանի ունկնդիրներն են արտադրական վարչության աշխատողները, սովխոզների դիրեկտորներն ու կոլտնտեսությունների նախագահները, պարտիական կազմակերպությունների քարտուղարները, գյուղատնտեսության մասնագետները: Կարևոր է այն, որ համալսարանի պարապմունքների մի մասն անց է կացվում հենց կոլտնտեսություններում ու սովխոզներում, որի շնորհիվ տեսական գիտելիքներն անմիջականորեն կապվում են տնտեսության կոնկրետ խնդիրների հետ:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում զգալիորեն ակտիվացել է դասախոսական խմբերի և «Գիտելիք» ընկերության դերը: Ուշագրավ է, որ մենք այժմ դասախոսական խմբեր ունենք մի շարք խոշոր սկզբնական պարտիական կազմակերպություններում: Այս տեսակետից ուսանելի փորձ ունի ՀԿՊ Երևանի Օրջոնիկիձեի շրջկոմը, որը շրջանի 27 սկզբնական պարտիական կազմակերպություններին կից ստեղծել է դասախոսական խմբեր:

Մեր ինտելիգենցիայի ներկայացուցիչների բազմահազարանոց «Գիտելիք» ընկերությունը զգալի աշխատանք է կատարում պարտիայի որոշումների և գիտության ու տեխնիկայի նվաճումների մասսայականացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը նպաստելու գործում: Ընկերության ռեսպուբլիկական վարչությունը, նրա քաղաքային ու շրջանային բաժանմունքները, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում ստեղծված դասախոսների խմբերը հատուկ ուշադրություն են նվիրում միջազգային իրադրության կարևոր հարցերի պարզաբանմանը և ռևիզիոնիզմի, դոգմատիզմի ու աղանդավորության, հատկապես Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների պառակտիչ քաղաքականության դեմ, հանուն միջազգային կոմունիստական շարժման միասնության ՍՄԿՊ-ի մղած հետևողական պայքարի հարցերի պարզաբանմանը:

Ավելի լայնորեն են կիրառվում դասախոսական պրոպագանդայի այնպիսի ներգործուն ձևեր, ինչպես՝ դասախոսությունների ցիկլերը, թեմատիկ և հարց ու պատասխանի երեկոները, տեսական ու գիտա-արտադրական կոնֆերանսները, հանդիպումներն աշխատանքի վետերանների, արտադրության առաջավորների ու նորարարների հետ:

***

Պարտիան դաստիարակչական աշխատանքի կենտրոնը, նրա ուղն ու ծուծը համարում է հասարակության բոլոր անդամների աշխատանքային դաստիարակությունը, աշխատանքի նկատմամբ գիտակից, կոմունիստական վերաբերմունքի արմատավորումը: Մեր ամբողջ գաղափարական աշխատանքի կարևորագույն նպատակն է՝ համոզել յուրաքանչյուրին, որ մարդը չի կարող ապրել

առանց աշխատանքի, որ միայն աշխատանքով են ստեղծվում նյութական ու հոգևոր բոլոր արժեքները: Կոմունիզմը կառուցվում է աշխատանքով և միայն միլիոնների աշխատանքով,— ասում է Ն. Ս. Խրուշչովը:— Ահա թե ինչու պարտիան բոլոր ջանքերը գործադրում է, որպեսզի կոմունիզմի կառուցմանը որպես աշխատանքային միասնական ու միաձույլ կոլեկտիվ ակտիվորեն մասնակցի ամբողջ սովետական ժողովուրդը: Ամեն կերպ պետք է զարգացնել ու ծավալել կոմունիստական աշխատանքի շարժումը, որը միաժամանակ աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևոր միջոց է:

Մեր ժամանակի այդ հզոր, օրըստօրե ծավալվող շարժման մեջ միաձուլվում են սովետական հայրենասեր մարդկանց աշխատանքային ակտիվությունը և բարձր գիտակցականությունը:

Պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները պետք է հմտորեն օգտագործեն այդ շարժման դաստիարակչական դերը, ընդհանրացնեն կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների աշխատանքի փորձն ու արժեքավոր նախաձեռնությունները և նպաստեն դրանց տարածմանը:

Սովետական յուրաքանչյուր աշխատողին պետք է դաստիարակել աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման ոգով: Գաղափարական աշխատանքն էլ հենց պետք է մարդկանց մոտ շարժի հետաքրքրասիրությունը տեխնիկական գիտելիքների, գիտության, կուլտուրայի նորությունների նկատմամբ, խթանի գյուտարարության, նորարարության և ռացիոնալիզատորական շարժման ծավալումը:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են հատկացնում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին: Այս բնագավառում կիրառվում են աշխատանքի կանակչն ձևեր ու մեթոդներ: Կազմակերպվում են եղբայրական ռեսպուբլիկաներին նվիրված օրեր ու շաբաթներ, երեկոներ ու հանդիպումներ, աշխատանքի փորձի փոխանակում, պատվիրակությունների փոխայցելություններ, համատեղ գիտական սեսիաներ ու կոնֆերանսներ: Նոր թափ է ստացել սոցիալիստական մրցությունը եղբայրական ռեսպուբլիկաների արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և ամբողջ քաղաքների միջև: Երևան—Կիև—Թբիլիսի—Բաքու, Կիրովական — Բաթումի — Սուխումի — Սումգաիթ—Լենինական—Կիրովական—Քութայիսի քաղաքների, Ադրբեջանական ՍՍՌ Թովուզի, Զանգելանի ու Ղափանի և Հայկական ՍՍՌ Շամշադինի, Ղափանի ու Իջևանի, Վրացական ՍՍՌ Բոլնիսի և Կուբաթլինի և Հայկական ՍՍՌ Ստեփանավանի ու Նոյեմբերյանի շրջանների մրցությունը դարձել է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության իսկական դպրոց:

Իջևանի պարտիական կոմիտեն սիստեմատիկաբար կազմակերպում է միութենական ռեսպուբլիկաներին նվիրված բարեկամության միամսյակներ: Միամսյակի օրերին կազմակերպվում են եղբայրական ռեսպուբլիկաների կինո-փեստիվալներ, սպորտային միջոցառումներ, կինոլեկտորիումներ, ինչպես նաև գրքերի քննարկումներ:

Հետաքրքրական էր Ադրբեջանական ՍՍՌ Զանգելանի պարտկոմի և Ղափանի արդյունաբերական պարտկոմի՝ Ղափանում անցկացված միջշրջանային համատեղ կոնֆերանսը՝ նվիրված Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու 150-ամյակին, որն անցավ ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների բարեկամության ամրապնդման նշանաբանով:



Պարտիական կազմակերպությունները պետք է հմտորեն օգտագործեն աշխատավորների ինտերնացիոնալիստական դաստիարակության բնագավառում ձեռք բերված դրական փորձը, լայնորեն կիրառեն նոր, ավելի հետաքրքրական ու ներգործուն ձևեր: Ժողովուրդների բարեկամության հաստատումը սովետական կարգերի, կոմունիստական պարտիայի մեծագույն նվաճումն է: Գաղափարական աշխատանքն ամեն կերպ պետք է նպաստի այդ բարեկամության էլ ավելի ամրապնդմանն ու զարգացմանը:



ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը նշեց, որ ժամանակակից պայմաններում ժողովրդի կոմունիստական դաստիարակության մեջ առանձնահատուկ կարևոր նշանակություն ունեն գաղափարական ճակատի հարվածային ուժերը՝ մամուլը, ռադիոն, կինոն և հեռուստատեսությունը: Անցած մեկ տարում մեր մամուլի օրգաններն կցալի գործ են կատարել սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի և կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելու բնագավառում: Նրանք գնահատելի ջանքեր են գործադրել լայնորեն լուսաբանելով ժողովրդա-տնտեսական պլանների կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության պարտիական ղեկավարության բարելավման, կուլտուրական շինարարության պրոբլեմների լուծման ընթացքը: Մամուլի օրգանները արդյունավետ պայքար են մղել բյուրոկրատիզմի, շռայլության, ձրիակերության և հակահասարակական ուրիշ երևույթների դեմ, սուր և սկզբունքային քննադատության են ենթարկել մեր կյանքի թերությունները:

Թերթերը հատուկ համարներ ու էջեր, իսկ ռադիոն և հեռուստատեսությունը մի շարք հաղորդումներ են նվիրել եղբայրական ռեսպուբլիկաների և սոցիալիստական երկրների նվաճումների դրվատմանը: Վերջին ամիսներին ռեսպուբլիկայի թերթերը իրենց էջերում, ռադիոն և հեռուստատեսությունն իրենց հաղորդումներում առանձնապես մեծ տեղ տվեցին ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների որոշումների ու նյութերի մասսայականացմանը, ժողովրդական տնտեսության քիմիացման պրոբլեմների լուսաբանմանը:

Սակայն այս ամեն դրականի հետ մեկտեղ, պետք է նշել, որ ռեսպուբլիկայի մամուլի էջերում և ռադիո ու հեռուստատեսային հաղորդումներում դեռևս ոչ լրիվ ու բավարար խորությամբ են լուսաբանվում այն գլխավոր խնդիրները, որոնք դրված են ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության առջև: Դեռևս քիչ չեն ընդհանուր, կոնկրետությունից զուրկ հոդվածներն ու հաղորդումները, որոնք չեն օգնում գործին, չեն ազդում մարդկանց մտքին ու սրտին: Միշտ չէ, որ մեր մամուլը կարողանում է ժամանակին տեսնել ու գնահատել առաջավորը կյանքում և պաշտպանել, ծավալել այն: Թերթերն ու ամսագրերը դեռևս թույլ են կազմակերպում ու լուսաբանում սոցիալիստական մրցության ընթացքը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում: Այդ գործում երբեմն նրանք անհետևողականություն են հանդես բերում, մինչև վերջ չեն հասցնում սկսած նախաձեռնությունը: Ցածր է տպագրվող առանձին նյութերի մակարդակը, թերթերի ու ամսագրերի էջերում քիչ չեն մակերեսային հոդվածներն ու թղ-

թակցությունները: Հաճախ ճչացող վերնագրերով քննադատական նյութեր են նվիրվում մանր, աննշան, նեղ հարցերին, իսկ ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական կյանքին վերաբերող բազմաթիվ հրատապ, կենսական պրոբլեմներ դուրս են մնում նրանց տեսադաշտից:

Մամուլում բավարար ուշադրություն չի նվիրվում գրականության և արվեստի զարգացման հարցերին, պահանջվող խորությամբ չի գնահատվում մեր գրական արտադրանքը, գրախոսականները մեծ մասամբ անոտացիոն բնույթ են կրում:

Ռեսպուբլիկայի թերթերի ու ամսագրերի առջև ներկայումս մեծ խնդիրներ են դրված: Նրանք պետք է ավելի խոր կերպով լուսաբանեն էկոնոմիկայի, արտադրության կազմակերպման ու կառավարման հարցերը: Հարկավոր է ավելի բարելավել մամուլում պրոպագանդիստական նյութերի բովանդակությունն ու որակը, մարքսիզմ-լենինիզմի տեսական դրույթները պարզաբանել ժողովրդական մասսաների գործունեության հետ անխզելի կապի մեջ, ավելի խոր ընդհանրացնել և մամուլում լայնորեն ծավալել պարտիական կազմակերպությունների քաղաքական-կազմակերպական աշխատանքի փորձը, աշխատավորներին մոբիլիզացնել պարտիայի առաջադրած խնդիրների հաջող լուծման համար: Ավելի սուր պետք է լինեն մամուլի ելույթները հասարակական կարգը խախտողների և դիպուկ՝ պորտաբույծների և հակահասարակական այլ տարրերի դեմ:

Անցած մեկ տարին բեղմնավոր էր հայ գրողների և արվեստագետների համար: Ստեղծվեցին գեղարվեստական արձակի և պոեզիայի մի շարք արժեքավոր գործեր, որոնք ջերմորեն ընդունվեցին ընթերցողների լայն շրջանների կողմից: Առանձնապես արգասավոր էր սովետահայ կոմպոզիտորների ստեղծագործությունը: Ստեղծվեցին բարձր գաղափարայնությամբ և անկեղծ ներշնչմամբ տոգորված, վարպետությամբ գրված երաժշտական մի շարք գործեր, որոնք համընդհանուր ճանաչում են գտել: Սովետահայ արվեստն ապրում է բուռն ծաղկման շրջան: Դրա լավագույն ապացույցը հանդիսացան այս տարվա ապրիլին Մոսկվայի Համագումարների պալատում հայ արվեստի վարպետների համերգները:

Սակայն հայ գրողներն ու արվեստի աշխատողները մեծ անելիքներ ունեն: Կյանքը նոր խնդիրներ է առաջադրում նրանց: Ռեսպուբլիկայի աշխատավորները մեծ ակնկալիքներ ունեն գրողներից, կոմպոզիտորներից, նկարիչներից, արվեստի բոլոր գործիչներից: Մեր ժամանակաշրջանի, կոմունիզմ կառուցող հերոսի ամբողջական, լիարյուն կերպարի ստեղծումը շարունակում է մնալ մեր գրողների գլխավոր խնդիրը: Սովետական մարդիկ սպասում են նոր գործերի՝ վեպերի, կինոնկարների, պիեսների, օպերաների, կենսախինդ մասսայական երգերի, որոնք բարձր գեղարվեստականությամբ արտացոլեն մեր ժողովրդի հերոսապատումները կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում:



ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը մեծ խնդիրներ դրեց հասարակական գիտությունների աշխատողների առջև: Նրանք կոչված են կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում ընդհանրացնելու մասսաների կենդանի պրակտիկան ու պատմական փորձը, համարձակորեն, ստեղծագործաբար զարգացնելու ռևոլյուցիոն տեսությունը, պայքարելու նրա գաղափարական անաղարտության համար: Պլենումը մեր գիտնականների առաջնահերթ խնդիրը համարեց երկու հակադիր սիստեմների պայքարի, կապիտալիստական կարգի կործանման, ռևոլյուցիոն բանվորական ու ազգային-ազատագրական շարժման վերելքի պրոցեսների խոր վերլուծությունը, սոցիալիստական երկրների միասնության հետագա ամրապնդման ուղիների ու ձևերի և նրանց զարգացման ընդհանուր օրինաչափությունների ուսումնասիրումը:



Ռեսպուբլիկայի հասարակական գիտությունների բնագավառի աշխատողները որոշակի գործ են կատարել պլենումի պահանջները կենսագործելու ուղղությամբ: Վերանայվեցին ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հասարակական գիտությունների բաժանմունքի ինստիտուտների գիտահետազոտական աշխատանքների պլանները. ավելի մեծ տեղ տրվեց առավել ակտուալ պրոբլեմների ուսումնասիրմանը:

Մեր գիտնականներից պահանջվում է ավելի խոր ու բազմակողմանիորեն մշակել սոցիալիստական հասարակության գիտական պատմությունը, ընդհանրացնել կոմունիստական շինարարության փորձը, սովետական մարդկանց դաստիարակել ռևոլյուցիոն տրադիցիաների ոգով:

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը պահանջեց վճռականորեն բարելավել կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքը, բարձրացնել պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների պատասխանատվությունը կուլտուր-լուսավորական հիմնարկների վիճակի ու աշխատանքի համար: Այժմ զգալի չափով աշխուժացել է կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեությունը: Մի շարք կուլտուրայի տներ, ակումբներ, մասսայական գրադարաններ և կուլտուր-լուսավորական այլ հաստատություններ դարձել են կուլտուրայի իսկական օջախներ, մասսաների կոմունիստական դաստիարակության կարևոր օբյեկտներ:

Սակայն ինչպես ցույց տվեցին Էջմիածնի, Ամասիայի, Կրասնոսելսկի, Երևանի Օրջոնիկիձեի շրջանների կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեության վերջերս կատարած ստուգումները, այդ հիմնարկների աշխատանքը դեռևս չի համապատասխանում մեր այսօրվա պահանջներին: Կուլտուր-լուսավորական մի շարք հիմնարկներ ըստ էության անգործության են մատնված, չեն կազմակերպում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը նպաստող հետաքրքրական միջոցառումներ, գեղարվեստական ինքնագործունեության խմբակներ, իսկ շատ տեղերում այդ հիմնարկները վատ են կոմպլեկտավորված կադրերով:

Պարտիական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները պետք է վճռականորեն բարելավեն կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքը, ձգտեն հասնել այն բանին, որպեսզի նրանք ամենուրեք դառնան մասսաների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքի իսկական կենտրոններ:

Պարտիական կազմակերպությունները և գաղափարական աշխատանք կատարող հիմնարկներն ու գերատեսչությունները դեռևս շատ բան պետք է անեն բնակչության աթեիստական դաստիարակության ուղղությամբ մինչև վերջ կենսագործելու այն բոլոր խնդիրները, որ առաջ քաշեցին ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը և պարտիայի Կենտկոմի վերջերս ընդունած որոշումը:

Կոմունիստական պարտիան մեր գաղափարական աշխատանքի կարևորա-

գույն խնդիրն է համարում պայքարը հանուն մարքսիզմ-լենինիզմի գաղափարների անաղարտության, միջազգային կոմունիստական շարժման միասնության ամրապնդման: Նա մշտապես վճռական հակահարված է տալիս ամեն մի շեղմանը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքից, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից: Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության ավանտյուրիստական, պառակտիչ գործունեությունը լուրջ վտանգ է սպառնում համաշխարհային կոմունիստական շարժման միասնությանը:

Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումը որոշում ընդունեց՝ մերկացնել չինական ղեկավարների հակալենինյան հայացքներն ու պառակտողական գործունեությունը, հանդես գալ նրա խիստ քննադատությամբ:

Գաղափարական ճակատի աշխատողների խնդիրն է՝ լայնորեն մասսայականացնել ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումները, յուրաքանչյուր աշխատավորի պարզաբանել չինական պառակտիչների քաղաքականության վնասակարությունը կոմունիզմի գործի համար, մինչև վերջ մերկացնել Չինաստանի ղեկավարների դոգմատիզմը, մեծապետական շովինիզմը, լայն լուսաբանել ՍՄԿՊ-ի քաղաքականությունը ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության հետագա ամրապնդման ասպարեզներում:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն այսուհետև ավելի պետք է ուժեղացնեն իրենց գործունեությունը գաղափարական աշխատանքի ասպարեզում, չմոռանալով, որ նոր մարդու ձևավորումը գլխավորն է մեր պարտիայի գաղափարական գործունեության մեջ: Պետք է անել ամեն ինչ մարքսիզմ-լենինիզմի, կոմունիստական գիտակցականության ոգով մարդկանց դաստիարակելու, կոմունիզմի գաղափարներն անշեղորեն կենսագործելու համար:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՕՐԻՆԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ ՄԵՐ ՊԱՐՏՔՆ Է

Գ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆՑ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորներն ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին ակտիվորեն պայքարում են ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը կենսագործելու համար:*

*Այդ պայքարի ընթացքում ակնառու կերպով դրսևորվում են սովետական մարդկանց ջերմ հայրենասիրությունը, աշխատանքային ստեղծագործությունը, համաժողովրդական ունեցվածքի պահպանման ու հարստացման բուռն ձգտումը, նրանց բարձր գաղափարայնությունն ու կոմունիզմին անսահման նվիրվածությունը: Այս ամենը յոթ մղոնանոց քայլերով առաջ են մղում մեր հասարակարգը, ուր ամենուրեք լայնորեն արմատավորվում է նորը, կոմունիստականը:*

*Բայց, չնայած դրան, մեր կյանքի տարբեր բնագավառներում դեռևս հանդիպում ենք վաղուց կործանված անցյալի վերապրուկներին: Ինքնին հասկանալի է, որ դրանք վնասակար ու խորթ են կոմունիզմ կառուցող ժողովրդի վեհ գործին: Ահա թե ինչու մեր պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը ոչ մի կերպ չեն կարող հաշտվել մեր կարգերի համար խորթ երևույթների դրսևորման հետ: Հայտնի է, թե Վ. Ի. Լենինը դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին որքան մեծ նշանակություն էր տալիս հանցագործությունների և անցյալի մնացուկների դեմ մղվող պայքարին: Այն ժամանակ նա ամենախիստ կերպով նշավակում էր սպեկուլյանտներին, գողերին, խուլիգաններին և հակահասարակական մյուս տարրերին, նրանց դնում էր շահագործողների հետ միևնույն շարքում և պահանջում էր ամենաանողոք պայքար մղել նրանց դեմ:*

*Հանցագործության դեմ վճռական պայքար մղելու վերաբերյալ լենինյան նակազը պահպանել է իր ակտուալությունը նաև մեր օրերում: Այժմ էլ մենք չենք կարող հանդուրժել մեր հասարակության մեջ առանձին այնպիսի անձանց ներկայությունը, որոնք ոտնահարում են սովետական օրենքներն ու բարոյականությունը, չեն ցանկանում ազնվորեն աշխատել և կատարել ՍՍՌՄ քաղաքացու պարտականությունները:*

Հանրահայտ է, որ կոմունիստական շինարարության վիթխարի պլանների հաջող կենսագործումը սերտորեն կապված է աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևոր խնդիրների, նոր մարդու ներդաշնակ զարգացման հարցերի հետ։ Մեր ամբողջ դաստիարակչական աշխատանքի նպատակն է նպաստել բարոյապես բարձր, հոգեպես հարուստ և ֆիզիկապես կատարյալ միլիոնավոր մարդկանց նորմալ զարգացմանը։ Մեր առաջընթացի տվյալ էտապում, երբ մարդկանց գիտակցությունից անցյալի մնացուկների հաղթահարումը դառնում է ավելի քան հրատապ, ապա հասարակական կարգ ու կանոնի պահպանումը հանդիսանում է բոլորիս սրբազան պարտքը։

Այդ առումով էլ ՍՄԿՊ ծրագիրն ընդգծում է, որ «պարտիան խնդիր է դնում ապահովել սոցիալիստական օրինականության խստիվ պահպանումը, կարգ ու կանոնի ամեն տեսակ խախտումների վերացումը, հանցագործությունների, այդպիսիք ծնող բոլոր պատճառների վերացումը»։

Պարտիայի այդ պահանջը նոր պատասխանատու խնդիրներ է դնում պարտիական, սովետական, վարչական և հասարակական բոլոր կազմակերպությունների առջև՝ աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը բարելավելու, հանցագործությունների դեմ պայքարելու և սոցիալիստական օրինականությունը ռեսպուբլիկայում էլ ավելի ամրապնդելու ասպարեզում։

Այդ կարևորագույն խնդիրն իրականացնելու համար պահանջվում է արմատապես բարելավել հասարակական կարգի պահպանության մինիստրության, դատարանի և դատախազության օրգանների գործունեությունը։



ՎԵՐՋԻՆ տարիներս Հայաստանի կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն, պարտիայի քաղկոմները, շրջկոմները և արտադրական պարտկոմները սկսել են ավելի մոտիկից զբաղվել այդ օրգանների աշխատանքի բարելավման, հանցագործությունների դեմ պայքարի կազմակերպման հարցերով։ Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի բոլոր քաղաքներում ու շրջաններում տեղի ունեցան պարտիական ակտիվի ժողովներ և պլենումներ՝ վարչական օրգանների աշխատողների մասնակցությամբ, որտեղ քննարկվում էին հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու և սոցիալիստական օրինականությունն էլ ավելի ամրապնդելու հարցերը։

Ռեսպուբլիկայում նշանակալի չափով հաղթահարված է այն տարընթացությունը, որ նկատվում էր հասարակական կարգի պահպանության մինիստրության, դատարանի ու դատախազական օրգանների գործունեության մեջ։ Այժմ ավելի սերտ կապ է ստեղծված ռեսպուբլիկայի պարտիական, սովետական, վարչական օրգանների ու հասարակական կազմակերպությունների միջև։

Այդ ամենի շնորհիվ ռեսպուբլիկայում վերջին ժամանակներս նկատելիորեն կրճատվել են հանցագործությունները։ Դա արդյունք է ոչ միայն միլիցիայի, դատախազության և դատարանների, ընդհանրապես ռեսպուբլիկայի վարչական օրգանների աշխատանքի բարելավման, այլև առավելապես պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կատարած լուրջ աշխատանքի։



Բայց, չնայած դրան, դեռևս նկատվում են պետական և հասարակական միջոցների վատնումների ու հափշտակումների փաստեր։ Իսկ այդ երևույթները, ինչպես հայտնի է, կատարվում են միայն այն տեղերում, որտեղ ղեկավարները պատշաճ կարգ չեն սահմանում նյութական արժեքների պահպանման և հաշվառման նկատմամբ, որտեղ բացակայում է վերահսկողությունը։

Հանցագործությունների վերլուծությունը մեզ թելադրում է հատուկ ուշադրություն նվիրել դրանց վտանգավոր տեսակներին, որոնք դեռևս դրսևորվում են մեր կյանքի տարբեր բնագավառներում։

Պարտիական կազմակերպությունները պետք է ձեռք առնեն բոլոր անհրաժեշտ միջոցները՝ վերջնականապես արմատախիլ անելու այնպիսի վտանգավոր հանցագործություն, որպիսին սոցիալիստական սեփականության հափըշտակումն է. այդ պետք է դիտել իբրև մեր տնտեսական հզորության դեմ ուղղված գործողություն։ Իսկ ե՞րբ և որտե՞ղ են տեղի ունենում այդպիսիք։ Պատասխանը պարզ է. այդպիսիք տեղի են ունենում այնտեղ, ուր անբավարար է վերահսկողությունը, անփույթ է վարվում հաշվապահությունը և, վերջապես, խախտված է նյութական պատասխանատու պաշտոններում կադրերին տեղաբաշխելու պարտիական սկզբունքը։

Այս տեսակետից բավական ակնառու և վրդովեցուցիչ է շինարարության մինիստրության № 1 շինվարչությունում կատարված հափշտակումների օրինակը։ Իրոք, ժամանակին կարելի կլիներ կանխել պետական արժեքների հափշտակումը և մերկացնել ու պատժել հաշվապահության մեջ խցկված ժուլիկին, եթե ռեսպուբլիկայի շինարարության մինիստրության ղեկավարությունը ցուցաբերեր տարրական զգոնություն և անհրաժեշտ վերահսկողություն սահմաներ իր ստորադաս կազմակերպությունների ֆինանսա-տնտեսական գործունեության վրա։

№ 1 շինվարչությունում կատարված հափշտակությունը, այսպիսով, պատահական երևույթ չէ։ Գլխավոր հաշվապահ Ս. Բաբայանը պետական միջոցները վատնելու համար անցյալում դատապարտված է եղել 10 տարվա ազատազրկման։ Բայց ահա շինարարության մինիստրության ղեկավարությունը, որքան էլ այդ տարօրինակ է, այդ ժուլիկին նշանակում է շինվարչության գլխավոր հաշվապահ։ Դեռ ավելին, վերջին երեք տարում ոչ մի վերստուգում չի կատարվել այդ շինվարչությունում, իսկ անցյալ տարվա փետրվարին մինիստրության վերստուգման բաժնի պետ Ա. Խաչատուրովի և նույն բաժնի վերստուգիչ Ս. Կոստանյանի կատարած ստուգումը հափշտակման ոչ մի փաստ չի հայտաբերել։ Եվ դա պատահական չէ, որովհետև վերստուգիչ Կոստանյանն ինքը վալյուտային հանցագործության համար անցյալում դատապարտված է եղել երեք տարվա ազատազրկման։ Գերագույն դատարանի քրեական գործերի դատական կոլեգիան միանգամայն ճիշտ է վարվել, երբ դատապարտել է նաև Կոստանյանին ու Խաչատուրովին, որոնք չարաշահել են իրենց պաշտոնը և քողարկել հափշտակությունը։

Առանձին ձեռնարկությունների, հիմնարկների և գերատեսչությունների ղեկավարների կողմից հաճախ խախտվում է կադրերի ընտրության և տեղաբաշխման պարտիական սկզբունքը։ Դրա հետևանքով էլ տնտեսական կարևոր պաշտոններում խցկվում են անազնիվ մարդիկ և անգամ այնպիսի ժուլիկներ, որոնք անցյալում մի քանի անգամ դատվել են։ Այսպես, օրինակ, Նիկողոսյան Հրանտը, որը Լենինականի քաղսննդառի № 1 խանութի վարիչն էր, 1963 թվա-

կանին սովետական առևտրի կանոնները կոպտորեն խախտելու և չարաշահումների համար դատապարտված էր ազատազրկման։ Ընդ որում դատարանի վճռով արգելված էր նրան երկու տարվա ընթացքում նյութական պատասխանատու պաշտոններ վարել։ Բայց իրականում դեռ մի քանի ամիս չէր անցել պատիժը կրելուց, երբ Նիկողոսյանը դարձավ Լենինականի 2-րդ հացի գործարանի պահեստապետ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն բազմիցս ցուցում է տվել պարտիական կազմակերպություններին՝ արմատապես բարելավել նյութական տեսակետից պատասխանատու պաշտոնների համար կադրեր ընտրելու գործը, խստորեն պատժել պետական միջոցները հափշտակողներին ու վատնողներին։ Մինչդեռ ոչ բոլոր սկզբնական պարտիական կազմակերպությունները, պարտիայի ոչ բոլոր շրջկոմներն ու քաղկոմները, ինչպես նաև ոչ բոլոր արտադրական պարտկոմներն են ժամանակին անդրադառնում այդ փաստերին։ Նրանք ոչ միշտ են սուր քաղաքական գնահատական տալիս այդ հափշտակումներին ու վատնումներին և անհաշտելիության մթնոլորտ չեն ստեղծում ծուլիկների ու հափշտակիչների նկատմամբ։

Չի կարելի նորմալ համարել, երբ մի շարք մինիստրություններ և ժողտնտխորհի վարչություններ մինչև օրս անհրաժեշտ միջոցներ չեն կիրառում՝ լիովին իրագործելու պարտիական և պետական վերադաս օրգանների որոշումները՝ սոցիալիստական սեփականության պահպանման վերաբերյալ։ Միայն ֆինանսների մինիստրությունը և ժողտնտխորհը իրենց սիստեմում ունեն 260 ռևիզորներ։ Այս աշխատունակ կոլեկտիվը ի վիճակի է հսկայական օգնություն ցույց տալու մեր ժողովրդին՝ հաջողությամբ պայքարելու հասարակական բարիքները հափշտակողների դեմ։

Սակայն պրակտիկան ցույց է տալիս, որ նույնիսկ շատ ռևիզորներ անբարեխիղճ են վերաբերվում իրենց պարտականությունների հանդեպ, իսկ նրանցից մի քանիսը կանգնելով հանցագործ ճանապարհի վրա, չարաշահելով իրենց բարձր կոչումը, կաշառակերությամբ սքողում են հափշտակումները։ Այսպես, վերջերս էր, որ մերկացվեց և պատժվեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերման մինիստրության ռևիզոր Ա. Ազիզյանը, որը կաշառքով Հոկտեմբերյանի շրջանի Մյասնիկյանի անվան սովխոզում թաքցրել էր տեղի ունեցած խոշոր հափշտակությունը։

Ֆինանսների մինիստրությունը, ժողտնտխորհը, շինարարության և առևտրի մինիստրությունները պարտավոր են ձեռք առնել մի շարք միջոցներ, որպեսզի բարձրացվի ռևիզորական աշխատանքի որակը, նրանց նկատմամբ ցուցաբերվի առավելագույն խստապահանջություն, իսկ հանցանքները թաքցնելու դեպքում՝ նրանց հանձնել դատական պատասխանատվության։

Վերոհիշյալ տիպի հանցագործություններին լրիվ վերջ տալու համար պարտիական կոմիտեները պետք է մշտապես աչալուրջ լինեն, որպեսզի նյութական տեսակետից պատասխանատու պաշտոններում չնշանակվեն վստահություն չվայելող անձինք։

Անհրաժեշտ է ձեռնարկություններում և հատկապես թեթև ու սննդի արդյունաբերության սիստեմում վերանայել հումքի ծախսման նորմաները, սահմանել նոր, ավելի ռեալ նորմաներ։ Դա հնարավորություն կտա բացառելու հաշվառումից դուրս արտադրանքի արտադրությունը, որը գողության և հափշտակումների աղբյուր է դառնում։





**Ս**ՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ սեփականության հափշտակումների դեմ դեռևս անբավարար են պայքարում նաև միլիցիայի օրգանները։ Այդ տեսակետից առանձնապես վատ են աշխատում Երևան քաղաքի միլիցիայի վարչության, Լենինականի, Կիրովականի, Սևանի և մի քանի այլ շրջանների միլիցիայի օրգանները։

Այդ ապարատի աշխատողները լավ չեն ուսումնասիրել սոցիալիստական սեփականության պահպանության վիճակը ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում, որի հետևանքով էլ լրիվ չեն բացահայտվում այն պատճառներն ու պայմանները, որոնք առիթ են տալիս հանցագործությունների։

Սոցիալիստական սեփականության հափշտակումների դեմ մղվող պայքարը չի կարելի դիտել որպես սոսկ կարճատև մի կամպանիա։ Մեր առջև ծառացած այդ լուրջ խնդիրը մենք կարող ենք և պետք է լուծենք պարտիական, սովետական, վարչական օրգանների և հասարակական կազմակերպությունների համատեղ ջանքերով։

Պարտիական և վարչական օրգանները լուրջ անելիքներ ունեն կյանքում դեռևս նկատվող կաշառակերության վերացման ուղղությամբ։ Հանցագործության այդ տեսակն առանձնապես վտանգավոր է այն իմաստով, որ այն կարող է խախտել պետական օրգանների հեղինակությունը, սոցիալիստական կարգ ու կանոնի նկատմամբ տածած մեր մարդկանց հավատը։

Անհրաժեշտ է սիստեմատիկ պայքար մղել նաև սպեկուլյացիայով զբաղվող այն տարրերի դեմ, որոնք խույս տալով հանրօգուտ աշխատանքից, շուկա են հանում մեծ քանակի պարենային մթերքներ, արդյունաբերական ապրանքներ։ Փոքր չէ այն մարդկանց թիվը, որոնք կոլտնտեսականի անվան տակ ռեսպուբլիկայից զգալի քանակությամբ գինի և այլ ոգելից խմիչքներ են դուրս տանում սպեկուլյատիվ գներով վաճառելու համար։ Քիչ չեն նաև ավտոմեքենաների սպեկուլյացիայի դեպքերը, հատկապես Երևանում և Լենինականում։

Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և հասարակական կազմակերպությունների, վարչական օրգանների խնդիրն է՝ ուժեղացնել պայքարը սպեկուլյացիայի դեմ, անհանդուրժողական մթնոլորտ ստեղծել և հասարակական պարսավանքի ենթարկել անաշխատ եկամուտներով ապրողներին։

***

**Բ**ՆԱԿՉՈՒԹՅԱՆԸ որոշ դժբախտություններ են պատճառում ճանապարհա-տրանսպորտային պատահարները։ Դրանց հետևանքով ամեն տարի բազմաթիվ քաղաքացիներ լուրջ խեղումներ են ստանում։ Այդ տեսակետից առանձնապես վատ է Երևան քաղաքի վիճակը, որտեղ ավտոբուսների և տրամվայների աղետների հետևանքով եղել են նաև մարդկային զոհեր։ Պարտիայի Երևանի քաղկոմը և քաղաքային սովետի գործադիր կոմիտեն պետք է լրջորեն զբաղվեն ավտոբուսային և հատկապես տրամվայ-տրոլեյբուսային պարկերի գործունեությամբ, ամրապնդեն այդ կարևոր տնտեսությունների ղեկավարությունը և ձեռք առնեն այնպիսի միջոցներ, որոնք լիովին ապահովեն քաղաքային տրանսպորտի հուսալի և անվտանգ աշխատանքը։

Ավտոճանապարհային պատահարների հիմնական պատճառներն են՝







ավտոտնտեսությունների կոլեկտիվներում տարվող դաստիարակչական թույլ
աշխատանքը, վարորդների չափազանց ցածր կարգապահությունը, երթևեկու-
թյան կանոնների և ավտոմեքենաների տեխնիկական շահագործման կանոն-
ների կոպիտ խախտումները: Դեռևս լինում են դեպքեր, երբ վարորդները ավ-
տոմեքենաները վարում են հարբած վիճակում: Բազմաթիվ ավտոտնտեսու-
թյուններում դեռ չկա պատշաճ կարգ ու կանոն, ավտոմեքենաները ոչ միայն
վատ են խնամվում, այլև վատ են շահագործվում, ցածր է արտադրական և
աշխատանքային կարգապահությունը: Քիչ չեն այն փաստերը, երբ ավտոմե-
քենաներն օգտագործվում են շահադիտական նպատակներով:

Ավտոտրանսպորտի մինիստրության ղեկավարությունը կոպիտ սխալներ
է թույլ տվել ավտոտնտեսությունների ղեկավար կադրերի, ինչպես նաև վա-
րորդների ընտրության ու տեղաբաշխման գործում, վատ է զբաղվել նրանց
դաստիարակության հարցերով: Հենց դրանով պետք է բացատրել ավտո-
վթարների դեպքերը:

Ավտովթարների աճը ռեսպուբլիկայում ցույց է տալիս, որ անբավարար է
նաև ռեսպուբլիկայի միլիցիայի պետական ավտոմոբիլային տեսչության գոր-
ծունեությունը: Պետական ավտոմոբիլային տեսչությունը բավարար միջոցներ
ձեռք չի առնում կանխելու տրանսպորտային վթարները. Նրա օրգանները տե-
ղերում վատ են կազմակերպում ճանապարհային հսկողությունը, անհրաժեշտ
ուշադրություն չեն դարձնում տրանսպորտի տեխնիկական վիճակին: Պե-
տական ավտոմոբիլային տեսչության որոշ աշխատողներ իրենց պարտակա-
նությունները կատարում են անբարեխղճորեն, երթևեկության և ավտոտնտե-
սության ղեկավարման կանոնները խախտողների նկատմամբ հանդես են բե-
րում լիբերալիզմ: Մինչդեռ ժամանակն է, որպեսզի ռեսպուբլիկայի միլիցիայի
վարչությունը և պետական ավտոմոբիլային տեսչությունը արմատական մի-
ջոցներ ձեռք առնեն բոլոր գծերով պայքարելու ավտովթարների դեմ և ապա-
հովելու մեր տրանսպորտի աշխատանքը:

Պարտիայի քաղկոմները, շրջկոմները և արտադրական կոմիտեները պետք
է հատուկ ուշադրություն նվիրեն ավտոտնտեսությունների սկզբնական պար-
տիական կազմակերպությունների գործունեությանը, զգալիորեն բարելավեն
վարորդների մեջ կատարվող դաստիարակչական աշխատանքը և իրենց վերա-
հսկողության տակ վերցնեն ավտոտնտեսությունների կադրերի ընտրության
ու տեղաբաշխման գործը: Դա պետական ամուր կարգ ու կանոն կհաստատի
յուրաքանչյուր ավտոտնտեսությունում:



ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ սոցիալիստական կարգ ու կանոնն ամրապըն-
դելու գործը նշանակալի չափով կախված է հասարակական կարգի
պահպանության մինիստրության, դատարանների, դատախազու-
թյան օրգանների աշխատանքից:

Պարտիական և սովետական օրգանները պետք է մշտապես իրենց
ուշադրության կենտրոնում պահեն հասարակական կարգի պահպանության
մինիստրության օրգանների գործունեությունը: Այդ մինիստրության, ինչպես
նաև միլիցիայի քաղաքային ու շրջանային մի շարք օրգանների աշխատանքը
որոշ չափով բարելավվել է, սակայն ամբողջությամբ վերցրած այն դեռևս չի



համապատասխանում մեր պարտիայի ու կառավարության առաջադրած պա-
հանջներին:

Հասարակական կարգի պահպանության մինիստրության օրգանների գոր-
ծունեության գլխավոր թերությունը պետք է համարել օպերատիվ աշխատանքի
ցածր մակարդակը, սոցիալիստական օրինականության կոպիտ խախտումնե-
րի առկայությունը, կատարված հանցագործությունների հաշվառումը լավ
չկատարելը և ընդհանրապես աշխատանքի ցածր կուլտուրան:

Միլիցիայի շատ օրգաններ ժամանակին չեն կանխում հանցագործու-
թյունները և էֆեկտիվ կերպով չեն կազմակերպում նրանց հայտաբերումը:

Հասարակական կարգի պահպանության մինիստրության ղեկավարու-
թյունն անհրաժեշտ միջոցներ պետք է ձեռնարկի կադրերի համակողմանի և
խոր ուսումնասիրության, նրանց գործունեության նկատմամբ վերահսկողու-
թյան ուժեղացման, նրանց մոտ պաշտոնական և պարտիական պարտքի կա-
տարման պատասխանատվության զգացմունքի դաստիարակման ուղղությամբ:

Մինիստրության ղեկավարությունը և պարտիական կազմակերպություն-
ները, ինչպես նաև միլիցիայի տեղական օրգանների ղեկավարները պետք է
արագորեն վերացնեն իրենց պրակտիկ աշխատանքում եղած լուրջ թերություն-
ները և ապահովեն հանցագործությունների դեմ պայքարի և սոցիալիստական
օրինականության հետագա ամրապնդման գծով պարտիայի Կենտկոմի ցու-
ցումների հաջող կատարումը:

Այս կապակցությամբ անհրաժեշտ է հասարակական կարգի պահպանման
մինիստրության ուշադրությունը հրավիրել աշխատանքային գաղութներում
մարդկանց դաստիարակության գործի բարելավման վրա:

Պետք է հասնել նրան, որպեսզի պատիժ կրող հանցագործը աշխատանքի
ընթացքում խորապես գիտակցի իր վարքագծի սխալականությունը և վնասա-
կարությունը. միայն այդ գիտակցությունը նրա ուղղման հուսալի երաշխիքն
է: Տվյալ դեպքում չի կարելի ճիշտ համարել այն, երբ կալանավորին վաղա-
ժամ ազատ են արձակում, ելնելով միայն նրա արտադրական ձևական ցուցա-
նիշներից, բոլորովին մոռացության տալով նրա հոգեբանությունը և վարքա-
գիծը: Մինչդեռ վերջինս վճռական նշանակություն ունի կալանավորին ժամկե-
տից շուտ ազատ արձակելու գործում:

Առավելապես բարելավելով աշխատանքային գաղութների արտադրական-
տեխնիկական բազաները, մինիստրության ղեկավարները պետք է հոգան և
այն մասին, որպեսզի աշխատանքային գաղութներում գործի գլուխ կանգնեն
գերազանցապես այն վարչական աշխատողները, որոնք օժտված են նաև ման-
կավարժական հակումներով և պատշաճ գիտելիքներով: Պատիժը ստանալուց
հետո կալանավորը պետք է մշտապես գտնվի սովետական դաստիարակության
վերափոխիչ ներգործության ներքո, որը սակայն չի բացառում նրա մեկուսաց-
ման համար սահմանված ռեժիմի խստագույն պահպանումը:

Սովորել զուգակցել վարչական ու մանկավարժական ներգործության մե-
թոդները, ահա թե որն է հասարակական կարգի պահպանության մինիստրու-
թյան այն աշխատողների պարտականությունը, որոնք կոչված են աշխատան-
քային գաղութներում իսկական դաստիարակների պատվավոր գործը վարելու:

Ռեսպուբլիկայի Գերագույն դատարանը և ժողովրդական դատարանները
հիմնականում ճիշտ են պայքարում հանցագործությունների դեմ: Այժմ ավելի

հաճախ և ճիշտ կերպով են զուգակցվում քրեական պատժի և հասարակական ներգործության միջոցները։

Սակայն պետք է ասել, որ ռեսպուբլիկայի գերագույն դատարանի և բազմաթիվ ժողովրդական դատարանների աշխատանքում դեռևս կան լուրջ թերություններ ու սխալներ, որոնք հաճախ հանգեցնում են սոցիալիստական օրինականության կոպիտ խախտումների։ Դատական օրգանների գործունեության էական թերություններ են՝ քաշքշուկը, քրեական գործերի մակերեսային քննությունը, դատավարական նորմաների խախտումները։

Շատ ժողովրդական դատարանների գործունեության լուրջ թերություններից մեկը՝ դատաքննության ցածր որակն է, որի հետևանքով Գերագույն դատարանը հարկադրված բեկանում է ժողովրդական դատարանների ոչ բավարար հիմնավորված վճիռներն ու որոշումները։

Դատարանները շատ դեպքերում կոպիտ կերպով խախտում են քրեական գործերի քննության՝ օրենքով նախատեսված ժամկետները։ Այսպես, օրինակ, քաղաքացի Հայրապետյանի քրեական գործը Հոկտեմբերյանի ժողովրդական դատարանում (ավագ դատավոր Գ. Մելիքսեթյան) առանց ընթացք տալու մնացել էր 11 ամիս։

Սպանդարյանի ժողովրդական դատարանում (ավագ դատավոր Ա. Մանուկյան) գործերի քննությունն ուշացվում է 6—8 ամսով։ Գործերի քննության ժամկետների խախտումներ են թույլ տրվում նաև Գերագույն դատարանում։

Շատ ժողովրդական դատավորներ, դժբախտաբար, դեռևս չեն հրաժարվել քաղաքացիներին անհիմն մեղադրանքներ ներկայացնելուց, որոնք առաջին անգամ կատարելով աննշան հակահասարակական արարքներ, պատահաբար են դատարան բերված։ Դեռ քիչ չեն դեպքերը, երբ փոխանակ պայմանական դատապարտություն կրելու և կոլեկտիվներին վերադաստիարակության հանձնելու որոշում կայացնելու, ժողովրդական դատարանները անարդարացիորեն կիրառում են այն պատիժները, որոնք սահմանված են կարճատև ազատազրկման համար։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ ոչ մի քաղաքացի ապօրինի պատիժ չստանա, առանց որի խոսք չի կարող լինել սոցիալիստական օրինականության մասին։

Լուրջ թերություններ կան նաև դատարանների աշխատանքի կազմակերպման բնագավառում։ Այսպես, Ղափանի, Սևանի, Շահումյանի, 26 կոմիսարների անվան շրջանների և մի քանի այլ շրջանների ժողովրդական դատարաններում բացակայում են բարձր կուլտուրան և կազմակերպվածությունը, դատական նիստերն այնտեղ ընթանում են հաճախ ցածր մակարդակով, իսկ դա խախտում է դատարանի հեղինակությունը և նսեմացնում դատական պրոցեսի դաստիարակչական նշանակությունը։ Դատական օրգանները դեռևս անբավարար են հենվում հասարակայնության վրա և թույլ են օգտագործում նրա ուժերը։ Շատ ժողովրդական դատավորներ հազվադեպ են հաշվետու լինում ընտրողների առջև և շատ քիչ են ելույթներ ունենում նրանց ժողովներում։

Վերջին ժամանակներս ռեսպուբլիկայի դատախազության օրգանները որոշ աշխատանք են կատարել իրենց գործունեության մեջ տեղ գտած լուրջ սխալները հաղթահարելու համար։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է նշել, որ հասարակական կարգի պահպանության մինիստրության և դատական օրգաններում հանցագործության դեմ մղվող պայքարի թերությունները, զանազան



գերատեսչություններում, սովետական ու տնտեսական կազմակերպություններում օրինախախտումները շատ ավելի քիչ կլինեին, եթե ռեսպուբլիկայի դատախազությունը և նրա տեղական օրգաններն անշեղորեն ու ժամանակին հրսկողություն սահմանեին սովետական օրենքների ճիշտ կատարման նկատմամբ, վճռականորեն պայքարեին սոցիալիստական օրինականության խախտումների դեմ։

Դատախազության աշխատողները դանդաղ են վերակառուցում իրենց գործունեությունը՝ պարտիայի XXII համագումարի պահանջներին և ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումներին համապատասխան։ Մի շարք շրջանների դատախազություններ թույլ են պայքարում հանցագործությունների դեմ, իսկ ռեսպուբլիկայի դատախազությունը անհրաժեշտ օգնություն ցույց չի տալիս նրանց աշխատանքը բարելավելու գործում։ Քաղաքային ու շրջանային գրեթե բոլոր դատախազությունների գործունեության թույլ օղակը քննչական աշխատանքն է։ Դատախազության ղեկավարությունը պետք է լուրջ հետևություններ անի ռեսպուբլիկայի դատախազական օրգաններում աշխատող կադրերի հետ կատարվող աշխատանքի բարելավման մասին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի 1964 թ. փետրվարի 4-ի որոշումից, բարձրացնի պահանջկոտությունը, ավելի մեծ հաստատակամություն ցուցաբերի նշված թերությունները վերացնելու համար և դատախազական պատշաճ հսկողություն ապահովի ռեսպուբլիկայում սոցիալիստական օրինականությունը խստիվ պահպանելու նկատմամբ։



ՆԵՐԿԱ պայմաններում աննախընթաց չափով աճել է հասարակայնության, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների դերը հանցագործությունների և հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարում։

Օրինականության և կարգ ու կանոնի ամրապնդումը, հանցագործությունների և դրանց պատճառների դեմ մղվող պայքարը չպետք է սահմանափակվի լոկ վարչական օրգանների գործունեության ոլորտով, այլ դրանք պետք է դառնան պարտիական կազմակերպությունների գաղափարական և կազմակերպական աշխատանքի բաղադրիչ մասը, ամբողջ պարտիայի և ժողովրդի գործը։

«Սովետական մարդկանց պարտքն է,—նշվում է ՍՄԿՊ ծրագրում,—պահպանել օրինականությունն ու կարգ ու կանոնը, անհանդուրժողություն ցուցաբերել չարաշահումների նկատմամբ և պայքարել դրանց դեմ»։

Պարտիայի քաղկոմները, շրջկոմները, արտադրական պարտկոմները և ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարել հանցագործությունների և հասարակական կարգի խախտումների դեմ ակտիվ պայքար կազմակերպելու գործում աշխատավորության լայն մասսաների ու մեր ամբողջ հասարակայնությանը ներգրավելու ուղղությամբ։ Ռեսպուբլիկայում ներկայումս գործում են ավելի քան 1500 ժողովրդական դրուժինաներ, որոնց աշխատանքին մասնակցում է 30.000 մարդ։ Գործում են նաև շուրջ 2200 ընկերական դատարաններ, որոնց անդամ-

ների թիվը 15000-ից ավելի է։ Կամավոր հասարակական գործիչների այդ
հոծ ջոկատը շատ օգտակար և մեծ աշխատանք է կատարում։

Սակայն շատ ժողովրդական դրուժինաների և առանձին ընկերական դա-
տարանների գործունեությունը դեռևս կամպանիոն բնույթ է կրում։

Ժողովրդական դրուժինաների և ընկերական դատարանների աշխատան-
քում նկատված թերությունները բացատրվում են այն բանով, որ պարտիայի
քաղկոմներից, շրջկոմներից և արտադրական կոմիտեներից շատերը պատշաճ
ուշադրություն չեն նվիրում նրանց աշխատանքին և պրակտիկ օգնություն չեն
ցույց տալիս նրանց։ Դրա հետևանքով էլ շատ դրուժինաներ գոյություն ունեն
միայն ձևականորեն և չեն կատարում հասարակական կարգի պահպանության
գծով իրենց վրա դրված պարտականությունները։ Մենք պետք է ակտիվաց-
նենք ժողովրդական դրուժինաների աշխատանքը։ Դա կարևոր է մանավանդ,
քանի դեռ ռեսպուբլիկայի շատ քաղաքներում ու շրջաններում նկատվում են
խուլիգանության փաստեր և հակահասարակական այլ երևույթներ։

Ընթացիկ տարվա սկզբին Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախագա-
հությունը, հաշվի առնելով ընկերական դատարանների գործունեության դրա-
կան փորձը, դրանց կանոնադրության մեջ փոփոխություն մտցրեց, որով
ավելի ընդլայնվեցին այդ դատարանների իրավասության սահմանները։ Սո-
վետական դեմոկրատիայի շրջանակների այդ ընդարձակումը լիովին արտա-
հայտում է ՍՄԿՊ ծրագրի ոգին։

Այժմ արդեն ակներև է մասսաների հասարակական այդ գործունեության
խիստ օգտակար բնույթը։ Սոցիալիստական համակեցության կանոնների
խախտողին, աշխատանքի կարգապահությունը ոտնահարողին, անբարոյական
քայլեր կատարողին գամելով հասարակական անարգանքի սյունին, ընկերա-
կան դատարանները մեծապես օգնում են մարդկանց իրենց արժանի տեղը
գտնելու կոմունիզմ կառուցողների մեծ ընտանիքում։

Անհրաժեշտ է զգալիորեն ուժեղացնել նաև ժողովրդական դրուժինաների
աշխատանքը, քանի որ ռեսպուբլիկայի շատ քաղաքներում և շրջաններում
դեռևս նկատվում են խուլիգանության և հակահասարակական այլ երևույթ-
ների փաստեր։

Պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություն-
ները, ինչպես նաև տնտեսական ղեկավարները պետք է ավելի մեծ հոգատա-
րություն ցուցաբերեն աշխատավորության, հատկապես երիտասարդության
հանգիստը ճիշտ կազմակերպելու նկատմամբ։ Հարկավոր է կուլտուր-մասսա-
յական և ֆիզկուլտ-սպորտային աշխատանքն այնպես վարել, որ այն
ընդգրկի բնակչության ավելի լայն շրջաններ և համապատասխանի բոլոր
հասակների, հատկապես պատանիների ու երիտասարդների պահանջներին։

Հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է
ամեն կերպ բարձրացնել ձեռնարկությունների և հիմնարկների կոլեկտիվների
դերը։ Պետք է այնպիսի կարգ սահմանել, որ յուրաքանչյուր աշխատողի գործո-
ղությունների համար պատասխանատու լինեն ձեռնարկությունների ղեկավար-
ները, ինչպես նաև պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազ-
մակերպությունները։

Այդ տեսակետից ճիշտ չպետք է համարել այն պրակտիկան, որ ձեռնար-
կությունների գործունեությունը գնահատելիս հաճախ բոլորովին հաշվի չի



առնվում այդ ձեռնարկությունների բանվորների ու ծառայողների վարքագիծը,
հատկապես ձեռնարկության շրջանակներից դուրս։

Ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները և ղեկավար-
ները պետք է լիովին պատասխանատու լինեն տվյալ ձեռնարկության, կա-
ռույցի, կոլտնտեսության կամ սովխոզի կյանքի բոլոր կողմերի համար։

Անհրաժեշտ է լայնորեն ծավալել այն շարժումը, որի նպատակն է՝ օրի-
նակելի հասարակական կարգ ու կանոն հաստատել բոլոր բնակավայրերում
և թույլ չտալ ոչ մի հակահասարակական երևույթ։

Պարտիական և կոմերիտական օրգանները առանձնահատուկ ուշադրություն
պետք է նվիրեն երիտասարդության մեջ կատարվող աշխատանքը հիմնավո-
րապես բարելավելուն։ Պարտիական օրգանները ամենից առաջ պետք է
հոգ տանեն այն մասին, որ ապահովվի յուրաքանչյուր կոմունիստի և կոմե-
րիտականի իսկական ավանգարդային դերը արտադրության մեջ։

***

Արդի պայմաններում, երբ պարտիան լուծում է կոմունիստական
շինարարության հոյակապ խնդիրները, կոմունիստների առջև դրը-
վող պահանջները ոչ միայն նվազում են, այլ, ընդհակառակը, ան-
համեմատ աճում են։ Բնական է, որ ոչ մի ներողամտություն կամ
բարեսրտություն չպետք է ցուցաբերել նրանց նկատմամբ, ովքեր իրենց ա-
րարքներով վարկաբեկում են լենինյան պարտիայի անդամի բարձր կոչումը։
Օրինական պատիժներից խուսափելու համար պարտիական տոմսը օգտագոր-
ծելու ամեն մի փորձ պետք է կասեցվի ամենավճռական կերպով։

«Մենք պետք է մշտապես ղեկավարվենք Վ. Ի. Լենինի այն ցուցումնե-
րով,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որ պարտիայի անդամները ոչ մի առավե-
լություն և արտոնություն չունեն մնացած աշխատավորների հանդեպ, որ նր-
րանք ունեն միայն ավելի բարձր պարտականություններ»։

Մինչդեռ փաստերը ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի որոշ պարտիա-
կան կազմակերպություններ առանձին դեպքերում խախտում են լենինյան ցու-
ցումները և ՍՄԿՊ կանոնադրության պահանջները, երբ անհրաժեշտ է լինում
լուծելու հանցագործություն կատարած այս կամ այն պարտանդամի կամ թեկ-
նածուի հարցը։ Այսպես, որոշ շրջկոմներ անհրաժեշտ հետևություններ չեն
արել ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումներից և շարունակում են ձգձգել հանցագործու-
թյուն կամ զանցանք կատարած կոմունիստների գործերի քննությունը։

Բոլոր պարտիական կոմիտեների և սկզբնական պարտիական կազմակեր-
պությունների կարևոր խնդիրներից մեկը պետք է լինի՝ ամեն կերպ բարձրաց-
նել դաստիարակչական աշխատանքի մակարդակը այն հաշվով, որ յուրա-
քանչյուր կոմունիստ սրբորեն կատարի պարտիական և պետական կարգա-
պահությունը, ՍՄԿՊ ծրագրի և կանոնադրության պահանջները։

Սովետական օրինականության և հասարակական կարգի պահպանման
բնագավառում լուրջ պարտականություններ ունի մամուլը։ Մինչդեռ հազվա-
դեպ են մեր ժուռնալիստները անդրադառնում դատարանների, դատախազա-
կան օրգանների գործունեության դրական փորձի գրվատմանը։ Առանց օրինա-
կելի աշխատողների կուտակած փորձի մասսայականացման, դժվար է հաս-

նել լուրջ արդյունքների: Այժմ հասունացած է այն հարցը, որ մամուլը պետք է մերթընդմերթ հրապարակով անդրադառնա ուսանելի դատական պրոցեսների, ավելի կարող և բարեխիղճ քննիչների, դատախազական և վերահսկողական մարմինների աշխատողների գործունեության ըստ արժանվույն գնահատմանը: Չի կարելի նորմալ համարել, երբ մեր մամուլի էջերում տարիներով հանդես չեն գալիս ռեսպուբլիկայի իրավաբանները և, առհասարակ, իրավունքի տեսությամբ ու պրակտիկայով զբաղվող ընկերները:

Սովետական մամուլը կոչված է ոչ միայն վեր հանելու հասարակական կարգ ու կանոնի խախտման առանձին դեպքերը, այլև ավելի քան մասսայականացնելու մեր հասարակական կյանքի կատարելագործման տարբեր մեթոդներն ու ուղիները, նպաստելու դրանց մշակմանն ու հիմնավորմանը:

Վերջին տարիներս պարտիայի լենինյան Կենտրոնական կոմիտեն վճռականորեն և հետևողականորեն շարունակում է վարչական օրգանների ամբողջ աշխատանքի արմատական վերակառուցումը: Այդ տեսակետից բացառիկ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական օրինականության լենինյան սկզբունքների վերականգնումն ու հետագա զարգացումը, որոնք կոպիտ կերպով խախտվում էին անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում:

Պետք է նշել, որ ռեսպուբլիկայի դատախազության, դատարանի և հասարակական կարգի պահպանության մինիստրության օրգանների գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողության ուժեղացումը, ինչպես նաև այդ օրգանների ամրապնդումը որակյալ պարտիական կադրերով, աշխատավորության հետ նրանց ունեցած կապերի ընդլայնումը հնարավորություն տվեցին էական փոփոխություններ մտցնելու նրանց աշխատանքի մեթոդների մեջ և վերականգնելու պարտիական սկզբունքները նրանց աշխատանքում: Ներկայումս այդ օրգանները իրենց ֆունկցիաները կատարում են, ամուր կերպով հենված հասարակական կազմակերպությունների, մեր ամբողջ ժողովրդի վրա:

Սակայն այն, ինչ արված է այդ բնագավառում, չի կարող հանգստացնել մեզ: Կոմունիզմի կառուցման շահերը, մեր ամբողջ ժողովրդի շահերը հրամայաբար պահանջում են սրբությամբ պահպանել ու բազմապատկել հասարակական ունեցվածքը, մեր կյանքի բոլոր ոլորտներում ամրապնդել կարգ ու կանոնը, ամեն կերպ արմատավորել կոմունիստական համակեցության սկզբունքները, բարձր պահել սովետական քաղաքացու արժանապատվությունը և բնավ չխախտել սոցիալիստական օրինականությունը:

Սոցիալիստական օրինականության պահպանումն ու զարգացումը եղել և մնում է մեր պարտիական կազմակերպությունների, վարչական օրգանների, բոլոր հասարակական կազմակերպությունների ու ամբողջ սովետական ժողովրդի հարազատ գործը:



# ՄԱՐԴԸ ԵՎ ԴԱՐԱՇՐՋԱՆԸ *

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ուժերի աննախընթաց զարգացումը, գիտության և տեխնիկայի բուռն վերելքը, «մտածող մեքենաների» ստեղծումը և տիեզերքի նվաճումն այսօր պայմանավորում են ո՛չ միայն բազմաթիվ նոր երևույթների իմաստավորելը, այլև շատ հին երևույթների նկատմամբ մեր տեսակետների վերանայումը: Տեղի է ունենում արժեքների վերարժեքավորում: Պատահական չէ, որ բազմաթիվ մտածողների ուշադրությունն այժմ նորից բևեռված է մարդու պրոբլեմի վրա, մարդու՝ բոլոր արժեքների մեջ ամենակարևոր արժեքի, նրա էության մեկնաբանման վրա:

Իր իսկ սեփական էությունն իմանալու մարդու ցանկությունը եղել է դեռևս հին աշխարհում, ուր, ի դեպ, սաղմնային վիճակում առաջացել են ժամանակակից փիլիսոփաների, հասարակագետների, մարդաբանների շրջաններում լայն տարածում գտած մի շարք մտահղացումներ:

Հին հունական մտածող, իմաստակության (որպես ուսմունքի) նշանավոր ներկայացուցիչ Պրոտագորասը (V-րդ դար մ. թ. ա.) առաջադրել է այն նշանաբանը, թե մարդն է գոյություն ունեցող և գոյություն չունեցող բոլոր երևույթների չափանիշը: Այդ սկզբունքը, վերջին հաշվով, Պրոտագորասին և նրա աշակերտներին հանգեցրել է օբյեկտիվ ճշմարտության ժխտմանը, ճշմարտության ռելյատիվիստական չափանիշի ընդունմանը՝ «Ամեն ինչ, ում ինչպես թվում է, այնպես էլ կա»: Եվ ամենևին էլ պատահական չէ, որ Պրոտագորասի հետևորդները հին Հունաստանում հանգում էին այն կեղծ եզրակացության, թե մարդն իր շարժառիթներում և գործողություններում ղեկավարվում է լոկ օգտակարության նշանաբանով: Այդ հայացքներում դժվար չէ նկատել պրագմատիստական փիլիսոփայության առաջացման սաղմերը, մի աշխարհայացք, որը, նույնացնում է ճշմարտացիությունն օգտակարության հետ:

Հելլենական աշխարհի նշանավոր փիլիսոփաներից մեկը՝ Սոկրատը, իր

* Վերջին տարիների ընթացքում մարդու պրոբլեմն իր վրա է բևեռել աշխարհի տարբեր երկրների փիլիսոփաների ուշադրությունը: Միջազգային փիլիսոփայական 12-րդ կոնգրեսում (Իտալիա, 1958 թ.) և 13-րդ կոնգրեսում (Մեքսիկա, 1963 թ.) այդ հարցը քննարկվեց որպես № 1 պրոբլեմ: Խմբագրության հրավերով այդ պրոբլեմի առթիվ մեր ամսագրում հանդես է գալիս այդ կոնգրեսների մասնակից պրոֆեսոր Գ. Բրուտյանը:

երկարամյա կյանքում շատ է մտածել այն հարցի մասին, թե ի՞նչ է մարդը, ի՞նչ է աշխարհը։ Եվ իր մտորումների հետևանքով այն եզրակացությանն է հանգել, թե մենք չենք կարող իմանալ իրերի էությունը, նրանց ֆիզիկական բնույթը։ Միակ բանը, որ կարող ենք իմանալ, մարդու բնույթն է։ Իր մտորումների արդյունքը նա արտահայտել է հետևյալ խոսքերով՝ «Ճանաչիր ինքդ քեզ»։ Սակայն, Սոկրատի կարծիքով, ոչ ամեն մարդ է ընդունակ ինքն իրեն ճանաչելու։ Լինելով արիստոկրատիայի գաղափարախոսը, նա այն միտքն է արծարծել, թե «հողագործները և այլ բանվորները» ի վիճակի չեն իրենք իրենց ճանաչելու, թե իբր նրանք գիտեն միայն այն, ինչ վերաբերում է մարմնին ու ծառայում է վերջինիս։

Արիստոտելը, որին Էնգելսն իրավամբ անվանել է ամենահամապարփակ գլուխը հին հունական փիլիսոփաների մեջ, մարդու էության մեկնաբանման հարցում ևս անհամեմատ բարձր էր կանգնած իր ուսուցիչներից և ժամանակակիցներից։ Նա փորձել է մարդու էությունը բացատրելիս նրան դիտել որպես սոցիալական շրջապատի արդյունք։ «Մարդը հասարակական կենդանի է»,— հին աշխարհի փիլիսոփայի այս եզրակացությունը զարմանալի հայտնագործություն էր իր ժամանակաշրջանի համար։ Չնայած Արիստոտելին նույնպես չհաջողվեց մարդու պրոբլեմը լուծել գիտական դիրքերից, այնուամենայնիվ իր, վերը նշած, մարդու պատկերավոր սահմանումով նա ճիշտ էր հարցի մոտեցման մեջ, մարդու էությունը հասարակական կարգի գործոններով պայմանավորելու փորձում։

Արիստոտելի ձգտումը անհետք չանցավ։ Հետագայում հասարակական մտքի շատ առաջադեմ ներկայացուցիչներ փորձել են մարդու էության ըմբռնման բանալին փնտրել հասարակության մեջ, հասարակական հարաբերությունների մեջ։ Հիշենք անգլիական սոցիալիստ-ուտոպիստ Ռոբերտ Օուենին, որը խորին համոզվածությամբ պնդում էր, թե մարդը լույս աշխարհ է գալիս առանց չարի ու բարու, սակայն թե՛ մեկը և թե մյուսը կարող են նրա մեջ զարգանալ կախված այն միջավայրից, ուր նա ապրում է, կախված այն դաստիարակությունից, որ նա ստանում է ընտանիքում և հասարակության մեջ։ Այդ միտքն իրեն հատուկ կրքոտությամբ, քաղաքացիական մեծ պաթոսով ընդգծել է ռուս ականավոր ռևոլյուցիոն-դեմոկրատ Վ. Գ. Բելինսկին։ Կենդանի մարդը, Բելինսկու խոսքերով, իր հոգու մեջ, սրտի մեջ, իր արյան մեջ կրում է հասարակության կյանքը, ցավում է նրա տկարությամբ, տանջվում նրա տառապանքներով, ծաղկում նրա առողջությամբ, բախտավորվում նրա երջանկությամբ։

Սակայն քիչ չեն եղել և այնպիսի մտածողներ, որոնք մարդուն դիտել են հասարակությունից և հասարակական կյանքից անկախ և հենց այդ պատճառով էլ աղավաղել են քննարկվող պրոբլեմի իրական պատկերը։ Գերմանացի հայտնի իդեալիստ փիլիսոփա Է. Կանտը (18—19-րդ դդ.) մարդուն ներկայացնում էր որպես համընդհանուր և հավերժական բարոյական հատկանիշներով օժտված անձնավորություն, մի բանական էակ, որին հատուկ են տեխնիկական ունակություններ։ Նա չկարողացավ գիտականորեն մոտենալ հարցի քննարկմանը, քանի որ չօգտագործեց անգամ մարդու էության ըմբռնման հարցում այն դրականը, որ հայտնի էր դեռևս Արիստոտելին։

Մատերիալիստ Ֆոյերբախին նույնպես չհաջողվեց լուծել մարդու պրոբլեմը։ Եվ այդ պատահական չէ։ Հիշենք, որ հասարակական կյանքի մեկնա-



բանման բնագավառում Ֆոյերբախը նահանջում էր իր մատերիալիստական դիրքերից և հարում իդեալիստական աշխարհըմբռնողությանը։ Բրուկբերգում՝ Թյուրինգյան գյուղի լռության մեջ, ժամանակաշրջանի քաղաքական և սոցիալական կյանքից հեռու, մոտ քառորդ դար խորհել է Ֆոյերբախը՝ XIX դարի խոշորագույն մտածողներից մեկը։ Եվ թե՛ իր առանձնասենյակում, թե՛ բնության գրկում նրա խոհերում քիչ տեղ չի գրավել մարդու առեղծվածը։ Գերմանացի մեծ փիլիսոփան ցանկանում էր, որ մարդը լինի ազնիվ ու երջանիկ։ Բայց նա ենթադրում էր, թե մարդն այդպիսին պետք է լինի ի ծնե, իր բնույթով։ «Միմյանց սիրելը», որին կոչ էր անում մեծ երազողը, մարդու բնական հատկությունն էր համարում։ Հեռու լինելով մարդու սոցիալական էությունն ըմբռնելուց, Ֆոյերբախը այն սխալ կարծիքին էր, թե բոլոր մարդիկ, անկախ նրանց դասակարգային պատկանելությունից, պետք է սիրեն միմյանց։ Եվ նա ստեղծեց իր անթրոպոլոգիական փիլիսոփայությունը, որի հիմքում ընկած էր համընդհանուր սիրով ստեղծված դասակարգային հաշտությունը։ Վերջինիս դրոշակակրի դերում հանդես էր գալիս կոնկրետ պայմաններից ու ժամանակից կտրված վերացական մարդը։

Գոյություն ունի ժողովրդական մի հին իմաստություն, որը դարձել է տրամաբանության ընդհանուր կանոններից մեկը՝ նա ով շատ է ապացուցում, ոչինչ չի ապացուցում։ Անալոգիայի կարգով կարելի է պնդել, որ Ֆոյերբախյան մարդու համընդհանրությունն արդեն իր մեջ պարունակում է նրա կոնկրետ կիրառման անհնարինությունը։ Ֆր. Էնգելսը դիպուկ կերպով նշում է, որ Ֆոյերբախի մարդը մոր արգանդից չի ծնվել։ Բացահայտելով նրա անթրոպոլոգիական փիլիսոփայության էությունը, Էնգելսն այնուհետև նկատում է, որ այն ստեղծված է բոլոր ժամանակների և բոլոր վիճակների համար և հենց այդ պատճառով կիրառելի չէ երբեք և ոչ մի տեղ։

Մարդու պրոբլեմի, նրա էության շուրջը վեճերն ավելի սուր բնույթ են ստացել մեր օրերում, երբ ամեն ինչ վերաիմաստավորվում է դարաշրջանի փոթորկահույզ զարգացման լույսի ներքո։ Պատահական չէ, որ Փիլիսոփայական ընկերությունների միջազգային ֆեդերացիայի վերջին երկու կոնգրեսների (1958 թ. Իտալիայում, 1963 թ. Մեքսիկայում) քննարկման հիմնական հարցը եղել է մարդու պրոբլեմը, մարդու և բնության, մարդու և դարաշրջանի փոխհարաբերությունը։

Այս հարցի մասին գոյություն ունեցող տեսակետների վերլուծությունը ցույց է տալիս, որ այսօր կարելի է խոսել հիմնականում տվյալ պրոբլեմի երկու իրար հակասող մեկնաբանությունների մասին։ Մի կողմից, Արևմուտքի փիլիսոփաների բազմաթիվ աշխատություններում մարդը դիտվում է որպես վերացական էակ, կտրված կոնկրետ սոցիալական և պատմական պայմաններից, անջատված այն միջավայրից, որի ծնունդն է նա, ուր գործում և գոյություն ունի նա։ Դժվար չէ նկատել, որ այս տեսակետի համար բնորոշ է անթրոպոլոգիական մոտեցումը մարդու նկատմամբ՝ մարդու էության հանգեցումը բիոլոգիական էակին։

Մարդու պրոբլեմով զբաղվում են արդի բուրժուական փիլիսոփայական դպրոցներից շատերը։ Սակայն ամենից ավելի այդ հարցը քննարկվում է էքզիստենցիալիզմի կողմից։ Վերջինիս ներկայացուցիչներ Յասպերսը և Հայդեգգերը, Սարտրը և Մարսելը քիչ էջեր չեն գրել մարդու, անձնավորության պրոբլեմի մասին։ Էքզիստենցիալիզմը հանդես է գալիս մարդու «սոցիալա-

կանության» դեմ, անձնավորությունը դիտում է որպես վերացական գոյություն։ Մարդու իսկական էությունը, էքզիստենցիալիզմի տեսակետից, ի հայտ է գալիս հիվանդ վիճակում, մահամերձ դրության մեջ, կյանքի և մահվան սահմանագծում։ Այդ փիլիսոփայությունը պեսիմիստական, հոռետեսական է, այն քարոզում է անկումային հայացքներ, մարդկանց վհատեցնում, բոլոր հույսերը կապում է մահվան հետ։ Պատահական չէ, որ ֆրանսիացի նշանավոր էքզիստենցիալիստ Մարսելը մեքսիկական կոնգրեսին ներկայացրած իր զեկուցման մեջ մարդկային արժանապատվությունն անգամ առնչում էր մարդու հիվանդագին վիճակի հետ, այն դրության հետ, երբ մարդը սոցիալական էակից վերածվում է ապասոցիալականի, երբ կենսական ուժերը իրենց տեղն են զիջում մահվան հեռանկարին։ «...Ժամանակակից մարդը,— ասված է Մարսելի զեկուցման մեջ,— որոշակի իմաստով ավելի ու ավելի դյուրընկալելի է դառնում դեպի տառապանքի ու մահվան արժանապատվությունը» (տես Memorias del XIII Congreso Internacional de Filosofia», vol, primero. México, 1963)։

Արևմուտքի փիլիսոփաներից ոմանք մարդու պրոբլեմի լուծման համար առաջադրում են այսպես կոչված ֆենոմենոլոգիական մեթոդը։ Հանդես գալով XIII միջազգային փիլիսոփայական կոնգրեսում՝ Մեխիկոյում, արգենտինյան փիլիսոփա Մինգել Անգել Վիրասարոն այդ մեթոդը ներկայացրեց որպես ենթագիտակցության վրա հիմնված մի եղանակ, որը նկարագրում է անձնավորության ներքին ապրումները և որի նպատակն է մարդուն քննել որպես ինքնազարգացման պրոցես։

Արգենտինյան փիլիսոփայի մեկնությունը, զուրկ լինելով անհրաժեշտ պարզությունից, չէր պատասխանում նաև այն կարևոր հարցին, թե ինչպես կարելի է մարդուն դիտել որպես ինքնազարգացման պրոցես, երբ նրան կտրում ենք սոցիալական միջավայրից, այն պայմաններից, որոնք իրականացնում են մարդու գոյությունն ու զարգացումը։

Իսպանացի փիլիսոփա Ադոլֆո Մունյոս-Ալոնսոն, որը հիմնական զեկուցումներով հանդես է եկել ինչպես իտալական, այնպես էլ մեքսիկական միջազգային փիլիսոփայական կոնգրեսում, բարձր ամբիոնից հայտարարեց, թե մարդը խորհրդավոր էակ է, և նրա գաղտնիքը հայտնի է սոսկ աստծուն։ Նա անվերապահորեն հանդես եկավ մարդուն սոցիալական էակ համարելու դեմ, հասարակությունը ներկայացրեց որպես առանձին անհատների գումար։ «Չկա ոչ մի կոլեկտիվ, սոցիալական կամ քաղաքական ազատություն, գոյություն ունի միայն այն, ինչ բխում է անձնական ազատությունից»,— առարկություն չհանդուրժող տոնով ազդարարեց իսպանացին (տե՛ս վերը նշված աղբյուրը)։

Վերն արծարծված տեսակետը, որն իր սկզբունքներով ընդհանուր է ժամանակակից իդեալիստական փիլիսոփայության համար ամբողջությամբ վերցրած, արմատական հակադրությունն է պատմական մատերիալիզմի։ Ոչ մի փիլիսոփայություն այնքան մեծ ուշադրություն չի նվիրում մարդուն, որքան պատմական մատերիալիզմը, որը ելնում է այն բանից, որ մարդու էությունը կարելի է ըմբռնել, ճշմարտացիորեն մեկնաբանել միայն այն դեպքում, երբ նրան դիտենք կոնկրետ սոցիալական, պատմական միջավայրում, որպես որոշակի դարաշրջանի արդյունք։ Մարքսն ու Էնգելսը մարդուն իրավացիորեն անվանել են հասարակական հարաբերությունների միակցություն, ամբողջություն։



Մարդու բոլոր պահանջները վերջին հաշվով բխում են գոյություն ունեցող սոցիալական, նյութական հարաբերություններից, պայմանավորվում են դրանցով։ Մարքսիզմի փիլիսոփայությունը մարդկանց դիտում է որպես գիտակցորեն գործող անձնավորություններ, որոնք իրենց առաջ դնում են աշխարհը վերափոխելու, իրենց նպատակին ծառայեցնելու խնդիրը։

Անշուշտ, մարդկային կյանքը երկու կողմ ունի՝ անհատական և հասարակական, որոնք արտահայտվում են տարբեր ձևով։ Պատմական մատերիալիզմը ոչ մի ընդհանուր բան չունի այն վուլգար-սոցիոլոգիական տեսակետի հետ, որը ժխտում է մարդու մոտ ամեն մի անհատականը, վերջինս բոլոր դեպքերում փոխարինում է միայն հասարակականով։ Մարքսիստական փիլիսոփայության հակառակորդների ջանքերը՝ պատմական մատերիալիզմը նենգափոխել վուլգար-սոցիոլոգիզմով, առաջինին վերագրել վերջինիս արատները, լրիվ ձախողվեցին ինչպես իտալական, այնպես էլ մեքսիկական միջազգային փիլիսոփայական կոնգրեսներում։

Անհատականն ու հասարակականը մարդու մեջ սերտորեն կապված են իրար, միահյուսված են իրար հետ։ Անհատական ազատության, անհատական ունակությունների, անհատականի իրականացումը տեղի է ունենում կոլեկտիվում, հասարակության մեջ։

Մարդու պրոբլեմը, որպես իրական կյանքի պրոբլեմ, չէր կարող լուծվել կապիտալիզմի պայմաններում։ Մարդը մարդ է դարձել աշխատանքի շնորհիվ։ Բայց աշխատանքը, մարդկային աշխատանքը կապիտալիզմի օրոք այնպիսի պայմաններում է իրականանում, որ ամեն կերպ խանգարում է անձնավորության զարգացմանը, նրա ստեղծագործական աճին, նրա կատարելագործմանը։ Դրա պատճառը մարդու շահագործումն է մարդու կողմից, մասնավոր սեփականության գոյությունը, որ սրբագործում է կապիտալիզմը։ Մարդու պրոբլեմի իրական լուծումը կարող է տեղի ունենալ միայն այն հասարակությունում, ուր չկա մարդու շահագործում։ Այդպիսին սոցիալիստական, կոմունիստական հասարակությունն է։

Բուրժուազիայի գաղափարախոսները հաճախ են խոսում մարդասիրության մասին, մարդու նկատմամբ հումանիստական վերաբերմունք ունենալու անհրաժեշտության մասին։ Սակայն այդ կոչերը վերացական են, առարկայազուրկ։ Փիլիսոփաների մեքսիկական կոնգրեսում իր զեկուցման մեջ սովետական պատվիրակության ղեկավար ակադեմիկոս Պ. Ֆեդոսեևը միանգամայն իրավացիորեն ընդգծեց, որ չի կարելի մարդասիրական անվանել այն հասարակությունը, որը մարդկանց հնարավորություն չի տալիս բավարարելու իրենց տարրական պահանջները, որը չի ապահովում բնակչության լրիվ զբաղվածությունը հասարակական-օգտակար աշխատանքում։ Մարդու պրոբլեմի հումանիստական լուծման մասին կարելի է խոսել միայն այն դեպքում, երբ նա ազատագրված է շահագործումից, տնտեսական և քաղաքական ճնշումից։

Մեր ժամանակաշրջանում չի կարելի քննարկել մարդու պրոբլեմը, առանց շոշափելու պատերազմի և խաղաղության հարցերը։ Իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարախոսները համառորեն պնդում են, թե մարդկանց, պետությունների միջև վեճերը պատերազմների միջոցով լուծելու ձգտումը, ռազմամոլությունը բխում են մարդու էությունից, մարդու բնական հատկությունն են։ Նման հայտարարություններն ըստ էության զրպարտություն են մար-

դու հասցեին: Սովետական Միությունում կոմունիստական հասարակության
կառուցումը, սոցիալիստական շինարարության պրակտիկան ժողովրդական
դեմոկրատիայի երկրներում անառարկելիորեն ապացուցում են, որ նոր, ան-
դասակարգ հասարակության ստեղծողները հանդես են գալիս պատերազմի
դեմ, հանուն խաղաղության ամբողջ աշխարհում: Արդի պայմաններում, երբ
ատոմային պատերազմը սպառնում է ոչնչացնել ողջ քաղաքակրթությունը,
բարի կամքի տեր մարդկանց պատասխանատվությունը ավելի է բարձրանում,
և պայքարը նոր, համաշխարհային պատերազմի դեմ դառնում է մարդու
նկատմամբ տածվող հումանիստական վերաբերմունքի չափանիշներից մեկը:
Մարդու պրոբլեմի ամենաընդհանուր քննարկումն իսկ ցույց է տալիս,
որ մարդու էությունը կարելի է ըմբռնել միայն այն դեպքում, եթե նրա նկատ-
մամբ ցուցաբերվի կոնկրետ-պատմական մոտեցում: Մարդուն չի կարելի
կտրել նրա միջավայրից և առաջին հերթին սոցիալական միջավայրից, ուր նա
գոյություն ունի, այն դարաշրջանից, որն անջնջելի հետք է թողնում նրա գո-
յության բնույթի վրա: Բնորոշ է, որ վերջին փիլիսոփայական միջազգային
կոնգրեսում՝ փիլիսոփաների մեքսիկական հավաքում, մարդու պրոբլեմի
քննարկմանն անմիջապես հաջորդեց դարաշրջանի հարցի մեկնաբանությունը:
Մեր դարաշրջանի գնահատման հարցում նույնպես միակարծիք չէին հի-
շատակված բանավեճի մասնակիցները: Միևնույն ժամանակ հարկ է նշել, որ
փիլիսոփաների մեքսիկական կոնգրեսն արտացոլում էր այն հիմնական տե-
սակետները, որոնք տարածված են աշխարհի տարբեր երկրների փիլիսոփա-
ների և սոցիոլոգների մոտ:
Մեր դարաշրջանի հարցը, նրա բնույթի, էության մեկնաբանումը իր վրա
բևեռել է Արևմուտքի բազմաթիվ փիլիսոփաների ուշադրությունը: Նրանցից
շատերի համար բնորոշ է այն եզրակացությունը, որ մեր դարաշրջանը ճըգ-
նաժամ, հոգեվարք է ապրում: Փիլիսոփայական ընկերությունների միջազգային
ֆեդերացիայի այժմյան պրեզիդենտ, մեքսիկացի փիլիսոփա Ֆրանցիսկո Լա-
րոյոն, Մեխիկոյում տեղի ունեցած կոնգրեսում, մեր դարաշրջանն անվանելով
ճգնաժամի դարաշրջան, փորձեց բացատրել այդ երևույթի պատճառները: Նա
իր համոզմունքը հայտնեց այն մասին, թե ժամանակակից գիտության և
տեխնիկայի նվաճումներն են պայմանավորում մեր դարաշրջանի ճգնաժամը:
Տեխնիկայի էպոխան, հայտարարեց նա, իր հետ բերեց մեր ժամանակաշրջա-
նի բնորոշ գծերից մեկը՝ ճգնաժամը, կամ համենայն դեպս, զգալի ազդե-
ցություն ունեցավ այդ հատկանիշի վրա: Մեքսիկական փիլիսոփան հետևյալ
կերպ էր դատում: Մարդը ստեղծել է նորագույն տեխնիկա, կատարել է այն-
պիսի հայտնագործություններ, որոնք բարձրագույն աստիճանին են հասցրել
մարդու քայքայիչ ուժը (ջերմամիջուկային պատերազմի միջոցները): Մյուս
կողմից, տեխնիկան, Լարոյոյի արտահայտությամբ, ստեղծել է մասսայական
մարդուն: Սկզբունքային կարևոր նշանակություն ունի այդ «մասսայական
մարդու» էությունը: Վերջինիս Լարոյոն բնութագրում է որպես ցածր կուլտու-
րական մակարդակի տեր, միշտ դյուրագրգիռ, աշխատանքի ճնշման ենթա-
կա մարդու: Այդ «մարդ-մասսան», Լարոյոյի տեսակետով, կարող է դառնալ
տեխնիկայի տրագիկ հետևանքների պատճառը: Ի վերջո մարդու կողմից
ստեղծված տեխնիկան կդառնա ինքնաոչնչացման միջոց:
Այս «տեսությունը» բնորոշ է Արևմուտքի ժամանակակից շատ փիլիսո-
փաների, նաև սոցիոլոգների համար: Սակայն դա գիտական չէ: Նրա սխա-



լականությունը նախ և առաջ քննարկվող հարցի նկատմամբ ունեցած ընդհա-
նուր և վերացական մոտեցումն է: Լարոյոն, ինչպես և նրա համախոհները,
իմպերիալիստական բուրժուազիայի ճգնաժամը ներկայացնում են որպես
մարդկության ճգնաժամ ընդհանրապես, կապիտալիստական հասարակության
մայրամուտը համարում են քաղաքակրթության վերջը, իմպերիալիզմի սո-
ցիալական հիմքերի խարխլումը պատկերացնում են որպես մարդկային հա-
սարակության վերջալույս, կապիտալիստի բարոյական կերպարի անկումը
անվանում մարդկային անձնավորության բարոյազրկում դարաշրջանի ընդհա-
նուր ճգնաժամի շրջանակներում:
Իրականում ճգնաժամ են ապրում ժամանակակից կապիտալիստական հա-
սարակությունը, նրա սոցիալական կառուցվածքը, տնտեսական բովանդակու-
թյունը, քաղաքական հիմքերը, նրա բարոյա-էթիկական կերպարը: Այդ լավ
են նկատում նաև արևմտյան երկրների այն մտածողները, որոնք ռեալիս-
տական, ողջախոհ մոտեցում են ցուցաբերում մեր դարաշրջանի սոցիալ-քա-
ղաքական իրադարձությունների նկատմամբ: Այդ մասին կրքոտ համոզվածու-
թյամբ էր խոսում Մեխիկոյի կոնգրեսում մեքսիկական առաջադեմ փիլիսո-
փա Ադոլֆո Սանչես-Վասքեզը: Իր ելույթում նա ընդգծեց, որ դրությունն
այժմյան աշխարհում արդեն չի որոշվում կապիտալիզմով: Այսօր սոցիալիզմի
համաշխարհային սիստեմը համընդհանուր զարգացման վճռական գործոն է:
Ահա թե ինչու մեր դարաշրջանը չի կարելի բնորոշել միայն որպես ճգնաժամի
դարաշրջան, չի կարելի մոռանալ այն մասին, որ ժամանակակից աշխարհը
երկու մեծ սիստեմների է բաժանված՝ կապիտալիզմի, որը գտնվում է քայ-
քայման փուլում և սոցիալիզմի, որը մշտապես ամրապնդվում և զարգանում
է: Խոսելով ճգնաժամի մասին, պետք է նկատի ունենալ այդ երկու սիստեմ-
ներից մեկը՝ կապիտալիզմը: Մեր դարաշրջանը երկակի դեմք ունի. մի
կողմից՝ այդ կապիտալիզմի և նրա հետ կապված արժեքների և իդեալների
ընդհանուր ճգնաժամի դարաշրջանն է, մյուս կողմից՝ սոցիալիզմին անցնելու
դարաշրջանը: Այս վերջին հատկանիշը դառնում է գլխավորը, քանի որ սո-
ցիալիզմը վերածվում է համաշխարհային զարգացման վճռական գործոնի:
Մեքսիկական առաջադեմ փիլիսոփայի ելույթը ընդհանուր հավանության
արժանացավ բոլոր այն պատվիրակների կողմից, որոնք արտահայտում էին
պատմության առաջընթացի հետ քայլող մարդկանց գաղափարներն ու հույ-
սերը:
Երկու մեքսիկական փիլիսոփաների՝ Լարոյոյի և Ադոլֆո Սանչես-Վասքեզի
ելույթները ցայտուն կերպով արտահայտում էին մեր դարաշրջանի մասին
երկու հակամարտ տեսակետները՝ մահացող դասակարգի գաղափարախոսու-
թյունը մի կողմից և առաջադեմ դասակարգերի հաղթարշավի փիլիսոփայու-
թյունը՝ մյուս կողմից:
Մեր դարաշրջանի ճգնաժամի պատճառը համարելով ժամանակակից տեխ-
նիկան, նրա աննախընթաց զարգացումը և հսկայական չափերով տարածումը,
մարդկության ձեռքում ինքնաոչնչացման միջոց դառնալու հնարավորությունը,
Լարոյոն և նրա համախոհ փիլիսոփաները քննարկվող հարցի նկատմամբ ցու-
ցաբերում էին անթույլատրելի վերացական մոտեցում, որը և հանգեցնում է
մեր ժամանակաշրջանում տեխնիկայի դերի թյուրըմբռնմանը:
Տեխնիկան կարող է ամբողջովին ի սպաս դրվել հասարակության զար-
գացմանը, կարող է և դառնալ նրա կործանման ուժը, նայած այն բանին,

թե ում ձեռքում է գտնվում տեխնիկան, ինչ պայմաններում է այն կիրառվում,
ում է այն ծառայում։ Պրակտիկայում ապացուցված է, որ սոցիալիզմի պայ-
մաններում տեխնիկան ստեղծվում է մարդու բարեկեցության համար, մար-
դուն է ծառայում։ Այդ պատճառով էլ նոր, բարձրագույն հասարակություն՝
կոմունիստական հասարակարգ կառուցող մարդիկ մեծ նշանակություն են
տալիս տեխնիկական պրոգրեսին, հենվում են ժամանակակից կատարյալ
տեխնիկայի վրա, նրա միջոցով է՛լ ավելի են զարգացնում հասարակության
արտադրողական ուժերը։ Սովետների երկրում կոմունիզմ կառուցողների ծրա-
գրում ասված է. «Կոմունիզմը ապահովում է հանրային արտադրության ան-
ընդհատ զարգացումը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը
գիտատեխնիկական արագ առաջադիմության հիման վրա, մարդուն զինում է
ամենակատարյալ և հզորագույն տեխնիկայով, հսկայական բարձրության է
հասցնում մարդկանց տիրապետությունը բնության նկատմամբ, հնարավո-
րություն է տալիս ավելի ու ավելի մեծ և լրիվ չափով կառավարել նրա տարե-
բային ուժերը»։ Եվ այդ ամենը, իհարկե, կոմունիստական հասարակության
անդամների աճող պահանջները առավելագույն չափով բավարարելու համար։
Իսկ այն հասարակությունում, որտեղ գործում է «ամեն ինչ շահույթի
համար» սկզբունքը, տեխնիկան իրոք կարող է դառնալ մարդկության մեծա-
գույն զոհեր պատճառող միջոց, եթե տիրող սոցիալական ուժերը դրանում են
տեսնեն նոր շահույթներ ստանալու հնարավորություն։ Ներկա պայմաններում
այդպիսին է կապիտալիստական հասարակությունը։ Մենք այժմ վկա ենք
տեխնիկայի հսկասական զարգացմանը առաջավոր կապիտալիստական եր-
կրներում։ Մի կողմից՝ հանուն շահույթի, մոնոպոլիաների կոնկուրենցիան
պահանջում է տեխնիկայի բուռն աճ։ Մյուս կողմից՝ արտադրության մեջ
նորագույն տեխնիկայի կիրառումը փողոց է նետում տասնյակ, հարյուր հա-
զարավոր բանվորների, բազմապատկելով գործազուրկների բանակը։ Պատա-
հական չէ, որ կապիտալի աշխարհում տեխնիկայի վրա բանվորը հաճախ
նայում է որպես իր ընտանիքից մի կտոր հաց խլող թշնամու վրա։ «Ի տար-
բերություն կապիտալիզմի,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— տնտեսության
պլանային սոցիալիստական սիստեմը տեխնիկական առաջադիմության արա-
գացումը զուգորդում է ամբողջ աշխատունակ բնակչության լրիվ զբաղվա-
ծության հետ։ Ավտոմատացումը և կոմպլեքսային մեքենայացումը սոցիալիս-
տական աշխատանքը աստիճանաբար կոմունիստական աշխատանքի վերա-
ճելու նյութական հիմքն են։ Տեխնիկական առաջադիմությունն զգալիորեն
կբարձրացնի արտադրության կուլտուրան, բոլոր աշխատավորների մասնա-
գիտական և հանրակրթական պատրաստությանը առաջադրվող պահանջները։
Նոր տեխնիկայի զարգացումը կօգտագործվի սովետական մարդու աշխատանքի
պայմանները արմատապես բարելավելու և հեշտացնելու, աշխատանքային
օրը կրճատելու և կենցաղը բարեկարգելու, ծանր ֆիզիկական աշխատանքը,
իսկ հետո էլ ամեն տեսակ ոչ որակյալ աշխատանքը վերացնելու համար»։
Եթե արդի դարաշրջանի գնահատման հարցում կոնկրետ մոտեցում ցու-
ցաբերվի, առանձնացվի այն գլխավորը, էականը, բնորոշը, որ հատուկ է մեր
դարաշրջանին, ապա հիմքեր չկան ամբողջությամբ վերցրած դարաշրջանը
դատափետելու։ Մենք բոլոր հիմքերն ունենք խոսելու մեր դարաշրջանի վեհու-
թյան մասին, դարաշրջան, որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից
սոցիալիզմին անցնելն է։ Մեր դարաշրջանումն է, որ մի շարք երկրներ՝ Սովե-



տական Միության գլխավորությամբ, բռնեցին նոր տիպի հասարակարգ՝ սո-
ցիալիստական, կոմունիստական հասարակարգ ստեղծելու ուղին, մեր դա-
րաշրջանում է, որ գաղութային ճնշման լծից ազատագրվեցին իմպերիալիզմի
կողմից ստրկացված բազմաթիվ երկրներ։

Մեր դարաշրջանի վեհությունն այն է, որ սովետական մարդկանց ներ-
կայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։

Խոսելով դարաշրջանի քննադատության մասին, մենք պետք է նկատի
ունենանք մեր ժամանակաշրջանի այն սոցիալական ուժերը, որոնք հակասում
են մարդկության զարգացմանը, հանդես են գալիս ազգային-ազատագրական
ռևոլյուցիաների, նոր, լուսավոր, կոմունիստական հասարակարգ կառուցող
մարդկանց հերոսական գործունեության դեմ։

Ամենևին էլ պատահական չէ, որ բուռն զարգացում ապրող հիրավի դի-
նամիկական մեր դարաշրջանում, Արևմուտքի որոշ փիլիսոփաներ և սոցիոլոգ-
ներ հանդես են գալիս առաջադիմության գաղափարի դեմ, հայտարարում են,
թե առաջադիմություն հասկացողությունը հնացել է, թե մեր օրերում չի կա-
րելի խոսել հասարակության առաջընթաց շարժման մասին։ Մահացող դասա-
կարգերի, սոցիալական խավերի գաղափարախոսներն առաջադիմության հա-
կացությունը ցանկանում են ննեգափոխել փոփոխման հասկացությամբ, հա-
մաձայնելով ցանկացած փոփոխման հետ, միայն թե այն չլինի հասարակու-
թյան զարգացում։ Այդ այն պարզ պատճառով, որ հասարակության սոցիա-
լական առաջադիմությունը, նրա առաջընթաց զարգացումը ցույց են տալիս,
որ ինչպես իր ժամանակին կապիտալիզմը օրինաչափորեն փոխարինել է ֆեո-
դալիզմին, այնպես էլ կապիտալիզմի փոխարեն ամենուր կգա նոր, բարձրա-
գույն հասարակությունը՝ առանց դասակարգերի, առանց մարդու կողմից
մարդու շահագործման հասարակությունը։

Մարդն իր դարաշրջանի հայելին է։ Անդասակարգ հասարակություն կա-
ռուցող մարդը արմատապես տարբերվում է այլ սոցիալական դարաշրջան-
ների մարդկանցից։ Տիեզերական տարածություններում հաղթարշավող առա-
ջին տիեզերագնացները սովետական մարդիկ էին։ Նրանց աննախընթաց նվա-
ճումները չեն գերազանցվել ոչ մի տեղ և ոչ մի այլ մարդու կողմից։ Բայց
հարց է առաջանում, կարո՞ղ էր արդյոք ցարական Ռուսաստանը նման հաջո-
ղությունների հասնել տիեզերքի նվաճման գործում։ Պատասխանը, անշուշտ,
բացասական կարող է լինել։ Միայն Սովետական Միությունում սոցիալիզմի
հաղթանակը ստեղծեց երկրի արտադրողական ուժերի, գիտության ու տեխնի-
կայի զարգացման այնպիսի մակարդակ, դաստիարակեց նոր հասարակու-
թյանն անսահմանորեն նվիրված այնպիսի մարդիկ, որ հնարավորություն
տվեց մարդկային լուսե երազը վերածելու հրաշագործ իրականության։

Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ մեր երկրում արմատապես փոխվել է
մարդու կերպարը։ Այժմ կոմունիզմ կառուցող մարդուն բնորոշում է նախ և
առաջ նվիրվածությունը այդ մեծ գործին, սերը սոցիալիստական հայրենիքի
և այն բոլոր երկրների նկատմամբ, որոնք կառուցում են սոցիալիզմ։

Նոր, բարձրագույն հասարակության այդ ակտիվ շինարարին հատուկ է
անհատական և հասարակական շահերի զուգորդումը, որը, մասնավորապես,
արտահայտվում է ողջ հասարակության շահերի համար բարեխիղճ աշխա-
տանքի մեջ, հասարակական բարիքների պահպանման և ընդարձակման կա-
յուն ձգտման մեջ։ Նրան հատուկ են բարձր հասարակական գիտակցությունը,

*կոլեկտիվիզմը և ընկերական փոխօգնությունը։ Բոլոր ժամանակաշրջանների*
*առաջավոր մարդկանց իդեալներն իրականացնող մարդը, անդասակարգ հա-*
*սարակություն կառուցող մարտիկը որպես սրբազան սկզբունք ղեկավարվում*
*է այն նշանաբանով, թե մարդը մարդուն բարեկամ է, ընկեր, եղբայր։ Պատա-*
*հական չէ, որ նրան խորթ է ամեն մի ազգային և ռասայական խտրականու-*
*թյուն, նա հանդես է գալիս հանուն բոլոր երկրների աշխատավորների եղբայ-*
*րական համագործակցության։ Բարոյական մաքրությունը, ազնվությունը,*
*ճշմարտացիությունը կյանքի բոլոր բնագավառներում, ընտանիքում, կենցա-*
*ղում և աշխատանքում՝ կոմունիզմ կառուցողի բնորոշ գծերն են։ Բարձր գնա-*
*հատելով իր ձեռք բերած նվաճումները, ղեկավարվելով ամենաառաջադեմ*
*գաղափարներով, կոմունիզմի շինարարը վճռական անհանդուրժողականու-*
*թյուն է ցուցաբերում կոմունիզմի, ժողովուրդների ազատության, խաղաղու-*
*թյան գործի թշնամիների նկատմամբ։*

*Այդ բարձր գաղափարներն ամենևին էլ ի ծնե չեն։ Եվ, ընդհանրապես, ոչ*
*մի գաղափար չի կարելի համարել մարդու բնածին հատկություն, ինչպես*
*պնդում են բուրժուական որոշ փիլիսոփաներ և սոցիոլոգներ։ Մեքսիկական*
*կոնգրեսում կարդացած իր զեկուցման մեջ հնդիկ փիլիսոփա Ռաջուն հայ-*
*տարարեց, թե մարդու էությունը կարելի է ճանաչել նրա կենսական գաղա-*
*փարների հիման վրա։ Այդպիսի կենսական գաղափարներ են հոգևոր, էթի-*
*կական և գեղագիտական գաղափարները։ Դրանք, հնդիկ փիլիսոփայի մեկնա-*
*բանման համաձայն, բխում են մարդու էությունից. բանականությունն է, որ*
*ստեղծում է կենսական գաղափարներ։*

*Այդպե՞ս է արդյոք։ Ամենևին ոչ։ Մարդկային հասարակության պատմու-*
*թյունը ցույց է տալիս, որ մարդկանց բոլոր հավերժական պահանջները, վեր-*
*ջին հաշվով, բխում են գոյություն ունեցող նյութական հարաբերություններից,*
*որ հասարակության հիմքը նյութական բարիքների արտադրությունն է։ Բոլոր*
*հոգեկան, էթիկա-բարոյական, գեղագիտական արժեքները, գաղափարները*
*բխում են մարդկանց կենսապայմաններից, բացատրվում են հասարակության*
*նյութական հիմքով։ Հասարակական կեցությունն է մարդկանց բոլոր գաղա-*
*փարների իրական աղբյուրը, մի ճշմարտություն, որը մարքսիստական փիլի-*
*սոփայությունը բացահայտել է որպես սոցիոլոգիական օրենք՝ հասարակական*
*կեցությունը որոշում է հասարակական գիտակցությունը։*

*Մարդը միշտ էլ պետք է պայքարի իր ժողովրդի և իր երջանկության հա-*
*մար։ Բոլոր ժողովուրդների մոտ էլ կարելի է հանդիպել այնպիսի ասացվածք-*
*ների, ինչպիսիք են՝ «Մեր երջանկությունը մեր ձեռքումն է», «Մարդն ինքն է*
*իր երջանկությունն ստեղծում» և այլն։ Ժողովրդական իմաստությունը այն*
*կարևոր միտքն է ընդգծում, թե մարդիկ երջանիկ կամ դժբախտ չեն ծնվում,*
*նրանք իրենք են կառուցում իրենց կյանքն ու երջանկությունը։ Եվ չի կարելի*
*համաձայնել այն «մարգարեների» հետ, որոնք հայտարարում են, թե իբր եր-*
*ջանկությունը «մարդկային ոգու» մեջ է արմատավորված, նրա արտահայտու-*
*թյունն է։ 13-րդ Միջազգային փիլիսոփայական կոնգրեսում՝ Մեխիկոյում*
*ամերիկյան փիլիսոփա Ջորջ Մուրն իր զեկուցման մեջ առաջադրեց հետևյալ*
*դրույթը. «Ուրախությունն ու երջանկությունը թե՛ Արևմուտքում և թե Արևել-*
*քում, հոգեվիճակ են»։ Եվ այնուհետև նա եզրակացրեց, որ ոչ թե արտաքին*
*պայմանների, այլ մարդու ոգու փոփոխումը «իր դրական կողմերն ունի եր-*
*ջանկության համար մղվող պայքարում»։ «Ուրախության կարելի է հասնել,—*



*հայտարարեց ամերիկյան փիլիսոփան,— փոփոխելով ոչ թե աշխարհը, այլ*
*մարդու վերաբերմունքը»* («Memorias del *XIII* Congreso Internacional de
Filosofia» vol. prémero. México, *1963, էջ 234)։ Կենսական հարցերում եր-*
*ջանկության համար պայքարելը, առօրյա ուրախություն փնտրելը, կյանքի*
*պայմանները փոփոխելով երջանկության հասնելը, Մուրի կարծիքով, չի*
*ապահովում «այն իսկական երջանկությունը, որ գիտեն կամ պետք է իմանան*
*արևմտյան մտածողները» (նույն տեղում)։ Պրոֆ. Մուրը իր համերաշխությու-*
*նը հայտնեց այն «սափական փիլիսոփաներին», որոնք սովորեցնում են, թե*
*«հաշտեցումը, բավարարվելը, հանգստությունը և անտարբերության ուրա-*
*խությունը իսկական երջանկություն են բերում»։*

*Նման գաղափարների պրոպագանդան օբյեկտիվորեն ուղղված է կապի-*
*տալիստական երկրների շահագործվող մասսաների, աշխատավորների շահերի*
*դեմ։ Այդ մի կոչ է համակերպվելու, հաշտվելու գոյություն ունեցող կարգերի*
*հետ, չպայքարելու իրենց կյանքի պայմանների բարելավման, իրենց իրա-*
*վունքի համար։ Այդ՝ շահագործողների դասակարգային շահերի բացահայտ*
*քարոզն է, քանի որ միայն նրանց է ձեռնտու հաշտեցնել ճնշվածներին գո-*
*յություն ունեցող կարգերի հետ, այդ համակերպվող անտարբերության մեջ*
*երջանկություն խոստանալ տառապյալներին։*

*Ռուսական ժողովրդական իմաստությունն ասում է. կրակն ուժեղ է, ջուրն*
*ուժեղ է կրակից, հողն ուժեղ է ջրից, մարդն ուժեղ է հողից։ Բայց մարդն*
*ուժեղ է հասարակության մեջ, մարդը գոյություն ունի հասարակությունում,*
*սոցիալական միջավայրում։ Անտագոնիստական դասակարգերի բաժանված*
*հասարակության մեջ նյութական բարիքներ ստեղծողը միայն աննշան չափով*
*է օգտվում իր իսկ կողմից ստեղծված բարիքներից։ Պայքարը հանուն շահույթի*
*ծնում է եսասիրություն, անհատի և կոլեկտիվի հակամարտություն և բուր-*
*ժուական աշխարհին բնորոշ շատ այլ բարքեր։ Միայն սոցիալիզմը, կոմու-*
*նիզմն է ստեղծում մարդու, անձնավորության բազմակողմանի զարգացման*
*բոլոր անհրաժեշտ նախադրյալները։*

*Սակայն այն հանգամանքը, որ մարդը սոցիալիզմի և կապիտալիզմի օրոք*
*բոլորովին տարբեր պայմաններում է ապրում, ղեկավարվում է տարբեր կեն-*
*սական գաղափարներով, ամենևին չի նշանակում, թե չեն կարող լինել բոլոր*
*բարի կամքի տեր մարդկանց համար, անկախ նրանց սոցիալական պատ-*
*կանելությունից և գաղափարական տարաձայնություններից, ընդհանուր նպա-*
*տակներ։ Մեր ժամանակաշրջանում, երբ գիտությունն ու տեխնիկան հասել են*
*այնպիսի կատարելության, որ մարդկանց ձեռքում է գտնվում ինչպես արտա-*
*դրողական ուժերի զարգացման ամենահզոր աղբյուրը, այնպես էլ նրանց*
*ինքնաոչնչացման միջոցը՝ ջերմամիջուկային էներգիան, բոլոր ազնիվ մարդ-*
*կանց, բարի կամքի տեր մարդկանց առջև ծառանում է շատ պատասխանատու*
*մի խնդիր՝ թույլ չտալ ջերմամիջուկային պատերազմ, պայքարել հանուն ատո-*
*մային և ջրածնային ռումբերի արգելման, համընդհանուր զինաթափման, հա-*
*նուն այն բանի, որ վերանա երեխաների և մայրերի վախը նոր պատերազմի*
*սարսափի նկատմամբ։*

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ


Պ. ՍԱՀԱԿՅԱՆ

Բանասիրական գիտությունների թեկնածու


> Պարտիան այսուհետև ևս անդիջում պայքար կմղի հանուն սովետական արվեստի՝ սոցիալիստական ռեալիզմի արվեստի, պարտիականության և ժողովրդայնության:
>
> ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումից

ԻՆՉՈ՞Ւ հատկապես վերջին տարիներում ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն ստեղծագործական ինտելիգենցիայի ուշադրությունը բևեռում է գրականության պարտիականության և ժողովրդայնության վրա, որն ընկեր Խրուշչովը համարում է «մեր արվեստի կարևորագույն սկզբունքը»: մերկացումից հետո մեր որոշ

Բանն այն է, որ անձի պաշտամունքի արվեստագետներ, գրողներ հեռացան այդ սկզբունքից և իրենց ստեղծագործություններում թույլ տվեցին գաղափարական լուրջ սխալներ ու սայթաքումներ: Նրանցից ոմանք նույնիսկ նամակ ուղարկեցին մեր պարտիայի Կենտրոնական կոմիտե, որով առաջարկում էին գաղափարական «խաղաղ գոյակցության» կուրս վերցնել մի ժամանակաշրջանում, երբ գաղափարական անհաշտ պայքար է ընթանում իմպերիալիզմի և սոցիալիզմի միջև: Ինչպես հունիսյան պլենումում նշեց ընկեր Իլյիչովը, վերջին շրջանում «բանն այնտեղ հասավ, որ որոշ կազմակերպություններում նույնիսկ ամաչում էին արտասանել «սոցիալիստական ռեալիզմ», «պարտիականություն», «ժողովրդայնություն», «գաղափարայնություն» բառերը:

Արվեստի պարտիականության և ժողովրդայնության սկզբունքից հեռանալը, գաղափարական կարգի սխալների հետ մեկտեղ, բերեց նաև առանձին երկերի գեղարվեստական մակարդակի անկում. խոտանը հրամցնում էին որպես արվեստի բարձր արտադրանք: Ընկեր Իլյիչովը վկայակոչեց «մարքսիստ ֆուտուրիստների» գեղարվեստական անճարակ խզբզանքները, որոնք հիշեցնում էին անբաններ ու թերուսների թռչնախոսությունը: Նրանք իրենց «Արվեստների դիակառքը» ձեռագիր թերթում հանդես էին գալիս ընդդեմ գրականության պարտիականության, հանուն պարտիայի գաղափարական ազդեցու-



թյունից արվեստն ազատելու. «Մենք քաղաքականություն չենք խաղում»,— հայտարարում էին նրանք: Իրականում նրանց գլխովին ներծծել էր քաղաքականությունը, բայց մի քաղաքականություն, որը խորթ է սոցիալիզմին, սովետական ժողովրդին»:

Անկումայնությունը հատկապես դրսևորվում էր այն երկերում, որոնք իրենց վրա կրում էին աբստրակցիոնիզմի, ֆորմալիզմի կնիքը: Օտարամուտ այս երևույթների մասին ընկեր Խրուշչովն ամենայն հստակությամբ ասում է. «Աբստրակցիոնիզմը, ֆորմալիզմը, որոնց գոյության իրավունքի համար սոցիալիստական արվեստի մեջ մարտնչում են նրա առանձին ջատագովները, բուրժուական գաղափարախոսության ձևերից մեկն են»: Եվ ապա՝ «...Ֆորմալիզմը և աբստրակցիոնիստական սեթևեթանքները խորթ են և անհասկանալի ժողովրդի համար»:

Գաղափարապես, գեղարվեստորեն արատավոր գործերը ժողովրդայնություն վայելել և պարտիայի հավանությանն արժանանալ չեն կարող, որովհետև երկի ժողովրդայնությունը նրա գաղափարայնությունից և գեղարվեստականությունից կտրված չէ, այլ դրանց բարձրագույն արտահայտությունն է:

Գրականության պարտիականության և ժողովրդայնության նկատմամբ վերջին շրջանի բուռն հետաքրքրության մյուս պատճառը այն լուրջ փոփոխություններն են, որ տեղի են ունեցել մեր երկրի, մեր ժողովրդի կյանքում ՍՄԿՊ XX—XXII համագումարներից հետո: Այդ մեծ փոփոխությունները, բնականաբար, պետք է ավելի սերտորեն կապեին արվեստի և գրականության գործիչներին ժողովրդի կյանքի և պարտիայի քաղաքականության հետ, ավելի ամուր միաձուլեին և հարազատ դարձնեին նրանց իրար:

Հետևողականորեն առաջ քաշելով և պաշտպանելով գրականության պարտիականության և ժողովրդայնության սկզբունքը, սովետական գրականագիտությունը ելնում է պատմական օրինաչափությունից, հասարակության պատմության մեջ, նյութական և հոգևոր արտադրության բնագավառում ժողովրդի որոշիչ, վճռող դերի մարքս-լենինյան ըմբռնումից: «Ժողովուրդը,— գրում է Գորկին,— ո՛չ միայն բոլոր նյութական արժեքներն ստեղծող ուժն է, նա հոգևոր արժանիքների միակ և անսպառ աղբյուրն է, ստեղծագործության ժամանակի, գեղեցկության և հանճարեղության տեսակետից առաջին փիլիսոփան և պոետը, որն ստեղծել է երկրի բոլոր մեծ պոեմները, բոլոր ողբերգությունները և նրանցից մեծագույնը՝ համաշխարհային կուլտուրայի պատմությունը»:

Գորկին գրողներին հիշեցնում է, որ հերոսների անհամեմատ խոր ու պայծառ, գեղարվեստորեն կատարյալ տիպերը ժողովուրդն է ստեղծել և խորհուրդ է տալիս սովորել ժողովրդից, վերցնել նրա հոգու անսպառ գանձարանից, անցկացնել սեփական ստեղծագործական քուրայով ու նորից վերադարձնել ժողովրդին: «Միլտոնն ու Դանթեն,— գրում է Գորկին,— Միցկևիչը, Գյոթեն և Շիլլերը ամենից ավելի վեր էին խոյանում այն ժամանակ, երբ նրանց թևավորում էր կոլեկտիվի ստեղծագործությունը, երբ նրանք իրենց ոգեշնչությունը վերցնում էին անչափ խոր, անհամար բազմաբղետ, ուժեղ և իմաստուն ժողովրդական պոեզիայի աղբյուրից»:

Գորկու ասույթներից հետևում է, որ ժողովրդայնություն ասելով առաջին հերթին հասկանում ենք ստեղծագործական կապ բանահյուսության հետ, ոչ թե ֆոլկլորի կողոպտման, այլ՝ նրա յուրացման և հարստացման իմաստով:

***

«Եթե կյանքի պատկերը ճիշտ է, ապա նաև ժողովրդային է»:

**Վ. Գ. Բելինսկի**

ՍԱԿԱՅՆ ինչպե՞ս է պատահել, որ հին ժամանակներում ամենալայն ժողովրդայնություն վայելող բանահյուսության առկայության պայմաններում ծնվել է արվեստի ու գրականության ժողովրդայնության պրոբլեմը:

Բանն այն է, որ ֆոլկլորի ժողովրդայնությունը հենվում էր ճանաչողության սահմանափակ հիմքի՝ մարդկության մանկության շրջանի դիցաբանական պրիմիտիվ հայացքների վրա, որոնք ընդգծում էին մարդու կախումը բնության ուժերից: Հենց որ մարդկությունը ճանաչողության այնպիսի մակարդակի հասավ, որ իրական իշխանություն ձեռք բերեց բնության ուժերի նկատմամբ, դիցաբանության վրա բարձրացած ֆոլկլորն սկսեց այլևս չբավարարել գեղարվեստական զարգացած պահանջմունքներին: Միանգամայն օրինաչափ այդ պրոցեսը Մարքսն առնչում է արտադրության բնագավառում կատարված մեծ գյուտերի և առաջընթացի հետ. «Եվ մի՞թե տպագրական մամուլի երևան գալու հետ միասին,— գրում է նա,— անխուսափելիորեն չեն անհետանում զրույցները, երգերը և մուսաները, իսկ դրա հետ միասին էպիկական բանաստեղծության անհրաժեշտ նախադրյալները» (Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին, հ. 1, Երևան, 1963 թ., էջ 162):

Քրիստոնեության բերած թարգմանչական և օրիգինալ երկերը թե՛ բովանդակությամբ և թե ստեղծագործման անհատական մեթոդներով խորթ էին ժողովրդին, և վերջինս այդ գրականության կողքին պահպանեց իր հեթանոսական հավատի մնացորդները (որոնց զգալի մասը քրիստոնեությունը չկարողացավ հաղթահարել, յուրացրեց և հարմարեցրեց իր ոգուն)՝ շարունակելով իր հույզերը, մտորումներն արտահայտել ֆոլկլորի մեջ և հոգևոր սնունդ ստանալ նրանից:

Այս պայմաններում, եկեղեցական գրականության ժողովրդայնության մասին խոսք կարող էր լինել այնքանով, որքանով որ նրա մեջ կրոնական քողի տակ արտացոլվում էին աշխարհիկ կյանքը և հետաքրքրությունները, որքանով՝ առանձին ցոլքերի ձևով նրանում պահպանվում էին բանահյուսական պատառիկները:

Վերածնության շրջանի գրականությունը և արվեստը, պատկերելով իրական կյանքը և կենդանի մարդկանց, իր աշխարհիկ թեմաներով և հումանիստական բովանդակությամբ խիստ հարված հասցրեց կրոնական ասկետիզմին, եկեղեցական միստիցիզմին և սխոլաստիկային՝ հավատի փոխարեն արվեստի հիմքում դնելով գիտությունը:

Դանթեն, Բոկաչչոն, Պետրարկան, Էրազմ Ռոտերդամցին, Ռաբլեն, Շեքսպիրը, Նարեկացին, նկարիչներ՝ Լեոնարդո դա Վինչին, Ռաֆայելը, Միքելանջելոն, Տիցիանը, Դյուրերը և շատ ուրիշներ իսկական հեղաշրջում կատարեցին՝ արվեստի և գրականության մեջ ներմուծելով իրական աշխարհի բազմերանգությունը, կենդանի մարդու երկրային հույզերը, հետաքրքրությունները:

Վերածննդի շրջանի արվեստն ու գրականությունը վերջնականորեն չկա-



րողացան և չէին կարող հաղթահարել եկեղեցու մռայլ գերիշխանությունը, շարունակեցին պահպանել կրոնական սյուժեների հետքերը, առանձին մոտիվներ. սակայն արմատական բեկումն, արդեն, կատարված էր, գրականությունն ու արվեստը վճռական քայլեր էին կատարել դեպի ժողովրդայնությունը:

Արդեն վերածնության շրջանի գործիչներին հատուկ էր հիացական վերաբերմունքը անտիկ գրողների և արվեստագետների ստեղծագործությունների նկատմամբ: Այս հետաքրքրությունը նորմատիվ էսթետիկայի և տեսական անառարկելի պահանջի է վերածվում XVII դարի ֆրանսիական կլասիցիզմի մեջ, որը խնդիր է դնում հետևել ոչ թե եկեղեցական գրքերին, այլ՝ անտիկ գրականության կլասիկ գործերին: Այստեղից էլ ստեղծագործական նոր մեթոդի կլասիցիզմ անունը:

Սակայն, ամբողջությամբ վերցրած, կլասիցիզմի ստեղծած գրական արժեքների ժողովրդայնությունը շատ թույլ էր արտահայտված: Իր գաղափարական էությամբ, էսթետիկական սկզբունքներով դա հիմնականում հակաժողովրդական մեթոդ էր: Կլասիցիզմը բոլոր միջոցներով արդարացնում էր դասային, սոցիալական անհավասարությունը, ժողովրդի անիրավազուրկ, արհամարհված, ստրկական վիճակը: Թերևս այդ հարցում ևս կլասիցիստներն ընդօրինակում էին անտիկ գրողներին, որոնց ստեղծագործության մեջ դրսևորվում էր իշխող դասակարգի արհամարհանքը ստրուկների նկատմամբ: Առավել ցայտուն այդ արտահայտվում է կլասիցիզմի ժանրերի ու ոճերի ուսմունքի մեջ, ըստ որի բարձր ժանրերի ու ոճերի (ողբերգություն, հերոսական պոեմ, հանդիսավոր ներբող և այլն) համար նյութ կարող է ծառայել միայն արքաների ու տիտղոսավոր ազնվականների կյանքը, քանի որ վսեմ զգացմունքներն ու առաքինությունները (ազնվություն, պատվասիրություն, հայրենասիրություն, հերոսություն և այլն) նրանց են հատուկ, իսկ ցածր ժանրերի (կոմեդիա, սատիրա և այլն) ճարակ պետք է դառնան հասարակ ժողովուրդը, շարքային մարդիկ, քաղքենիները, որովհետև նրանք զուրկ են առաքինություններից և ղեկավարվում են առօրյա հոգսերով, մանր կրքերով: Բարձր ժանրերը պետք է գրվեն բարձր ոճով, իսկ ցածր ժանրերը՝ առտնին ոճով. միախառնել այդ ժանրերը և ոճերը խիստ արգելվում էր:

Հայ գրականության մեջ ևս կլասիցիզմին հատուկ էր ժողովրդայնության բացակայությունը: Խաղալով ժողովրդի նվիրական զգացմունքների՝ հերոսության, ազգային ազատագրության, ինքնուրույնության և անկախության ձգտումների հետ, Ա. Բագրատունին իր «Հայկ դյուցազն» պոեմում, մխիթարյան միաբանության բանաստեղծներն ու դրամատուրգները, Գ. Պատկանյանը և ուրիշներ իրենց երկերում հայրենասիրությունը միաձուլում էին կրոնական հավատալիքների հետ, այդ ամենը մատուցում ժողովրդին անմատչելի գրաբար լեզվով և փաստորեն կասեցնում էին հայ գրականության զարգացումը ռեալիզմի և ժողովրդայնության ուղիով:

Կենսազուրկ բովանդակությունը, հերոսների և նրանց լեզվի արիստոկրատիզմը, ժողովրդական մասսաների և նրանց շահերի կատարյալ անտեսումը կլասիցիզմի վրա դրեցին դատապարտվածության կնիքը և դարձան նրա վաղաժամ մահվան պատճառը:

Ժողովրդայնության ուղղությամբ գեղարվեստական գրականության և արվեստի կատարած առաջընթաց քայլը առնչվում էր բուրժուազիայի վերելքի շրջանի հետ և դրսևորվում սենտիմենտալիզմի ստեղծագործական մեթոդում:

Կլասիցիզմի դեմ պայքարելիս ի թիվս զանազան պահանջների, սենտի-
մենտալիզմն առաջ էր քաշում նաև ժողովրդայնությունը: Կլասիցիստական
հերոսների՝ արքաների, տիտղոսավոր ազնվականների, զորավարների փոխա-
րեն գրականությունն սկսեց պատկերել շարքային մարդկանց, քաղքենիներին,
երրորդ դասի ներկայացուցիչներին, ծառաներին, գեղջկուհիներին, հովիվնե-
րին, պատմական անցքերի և արտառոց դիպվածների փոխարեն՝ մարդկանց
առօրյա կյանքը և մասնավոր կենցաղը: Կլասիցիստական երկերում պատկեր-
վող վերացական, բևեռացված կրքերի փոխարեն ուժեղանում է հետաքրքրու-
թյունը դեպի մարդու ներաշխարհը, հոգու տվայտանքներն ու ապրումները:
Ֆեոդալական հասարակարգի ամբողջ անմարդկային էությունը ցույց
տալու նպատակով, սենտիմենտալիստները սիրում էին պատկերել հասարակ
մարդու և արիստոկրատի սերը, որի երջանիկ լուծման ճանապարհին որպես
խոչընդոտներ կանգնում են դասային անհաղթահարելի պատնեշները: Սեն-
տիմենտալիզմի համարյա բոլոր սիրավեպերը կառուցվում են այդ տարածված
կոնֆլիկտի վրա, որը լուծվում է գրողների հայացքների դասակարգային բո-
վանդակությանը համապատասխան:

Օտար, ծանր լծի տակ գտնվող Հայաստանում, գրականության ուշացած
զարգացման պայմաններում սենտիմենտալիզմը հանդես չեկավ նախառո-
մանտիզմի (préromantisme) ձևով, այլ ռոմանտիզմի և ռեալիզմի հետ միա-
սին: Այն մասնակի ձևով դրսևորվեց Աբովյանի «Վերք Հայաստանի» անմահ
վեպում, որը գրական մեթոդների յուրօրինակ մի հանրագիտարան էր, իր սուր
ծայրով ուղղվեց օտար լծի և հայրենի ցեցերի դեմ. այն աչքի ընկավ հայրե-
նասիրական ու դեմոկրատական լայնահուն բովանդակությամբ: Ժողովրդայ-
նությունն այստեղ արտահայտվում էր և՛ դեմոկրատական խավերից հերոսա-
կան բնավորություն ընտրելու ձևով (Աղասի), և՛ ժողովրդի նիստուկացը, բար-
քերը ճշմարտացի ներկայացնելու պրակտիկայով (բարեկենդան), և՛ ժողո-
վրդին մատչելի լեզվով պատմելու ձգտումով (աշխարհաբար): Պատահական
չէ, որ հենց Աբովյանի վեպը, որպես ամենամեծ ժողովրդայնության այս
երկ, դարձավ հայ նոր գրականության հիմնաքարը: Ժողովրդայնության
բազմակողմանի արտահայտությունը նույնպես վկայում է, որ Աբովյանի վեպը
դուրս է գալիս սենտիմենտալիզմի նեղ շրջանակներից:
Հայտնի է, որ եվրոպական և ռուսական սենտիմենտալիզմի մի շարք
երկերի ժողովրդայնությունը պայմանական էր և հանդես էր գալիս չափավոր
պահանջների իրացման ձևով: Գրականությունը չպետք է պատկերեր ժողովր-
դական ներքնախավերի անզուսպ, անհրապույր աղքատությունը: Գյուղա-
ցուն գրական տաղավար մտցնելուց առաջ գրողը պետք է տաներ նրան վար-
սավիրի մոտ և սափրելուց, հարդարելուց, մաքրելուց և հաճելի տեսք տալուց
հետո միայն ներկայացներ ընթերցողին: Նույնը վերաբերում է նաև բնության
պատկերներին, որոնց պետք է դիպչեր մարդկային հմուտ ձեռքը: Եթե դրան
ավելացնենք դիդակտիցիզմի ուժեղ դոզան, քաղցր-մեղցր զգացմունքայնու-
թյունը, կերպարների գունազարդումը, հումանիզմի աղայական բնույթը, լեզվի
պայմանականությունը, ոճի մաներայնությունը, ապա պարզ կդառնա, թե
ինչու սենտիմենտալիզմը նույնպես երկարատև կյանք չունեցավ, իր տեղը
զիջեց ռոմանտիզմին, որը շատ տեսաբաններ, իրավամբ, համարում են ռեա-
լիզմին անցնելու ձև (խոսքը առաջադիմական ռոմանտիզմի մասին է):
Եթե սենտիմենտալիզմն արտահայտում է բուրժուազիայի վերելքի շրջա-



նին հատուկ վարդագույն տրամադրությունները, ապա ռոմանտիզմը դրսևորեց
խոր հիասթափություն անհատի իրավունքների նոր, անլուր բռնադատման վրա
հենված բուրժուական կարգերից, «քաղաքակիրթ» աշխարհի շահամոլական
բարքերից:
Ռոմանտիզմի քաղաքական հիմքը նախամարքսյան սոցիալիզմի այն բո-
վոր աղմկալի, խայտաբղետ, ճչան ձևերն էին, որոնք, ինչպես Լենինն է նշում,
մահացու հարված ստացան 1848 թվականի ֆրանսիական ռևոլյուցիայից,
բայց մեռան միայն 1848—1871 թթ. ժամանակաշրջանի վերջում (տե՛ս Վ. Ի.
Լենին, Երկեր, հ. 18, էջ 736—737):
Դժգոհությունը կյանքից և փախուստը իրականությունից ռոմանտիկների
մոտ միշտ զուգակցվում էր երազանքի շքեղ ու ծավալուն նկարագրի հետ:
«Ռոմանտիզմի «պլանները»,— գրում է Լենինը,— պատկերվում են իբրև շատ
հեշտ իրագործելի-ռեալ շահերի հենց այն անտեսման շնորհիվ, որը ռոման-
տիզմի էությունն է կազմում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 302): Փախչելով
անհրապույր իրականությունից, անհատը կամ դիմում էր դեպի ազատ բնու-
թյուն, քաղաքակրթությամբ չպղծված մարդիկ, կամ գերադասում մենությու-
նը, երբեմն մխիթարություն որոնելով կրոնի, անդրշիրիմյան կյանքի մեջ,
կորուսյալ դրախտը տեսնելով ֆեոդալական անցյալում: Երազանքի բովան-
դակությունն էլ որոշում է ռոմանտիզմի առաջադիմական կամ հետադիմա-
կան բնույթը:
Ռոմանտիզմի ստեղծագործական սկզբունքների շարքում առանձնահա-
տուկ տեղ էր գրավում նաև ժողովրդայնությունը: Այս հարցում ռոմանտիկ-
ներն ավելի հեռուն էին գնում իրենց նախորդներից: Ժողովրդական ներքնա-
խավերի ներկայացուցիչներին գրականության մեջ որպես դրական հերոսներ
պատկերելուց բացի նրանք դնում էին ժողովրդի սովորույթների, կենցաղի
նկարագրության, իսկ գլխավորը՝ ժողովրդական բանահյուսության լայն օգ-
տագործման հարցը: Կապը ֆոլկլորի հետ դարձավ ռոմանտիզմի ուժեղ կող-
մերից մեկը: Սակայն ժողովրդայնության պրոբլեմը առաջադիմական և հե-
տադիմական ռոմանտիկները լուծում էին տարբեր ձևով:
Եթե առաջադիմական ռոմանտիկները տեսնում էին ժողովրդի անազատ
վիճակը, նրա տառապանքը, ապագա, լավ կյանքի երազանքը, պայծառ լա-
վատեսությունը և հոգու անընկճելիությունը, ֆոլկլորում որոնում էին ժողո-
վրդական բնավորության լավագույն գծերի դրսևորում, ապա պահպանողա-
կան ռոմանտիկների աչքում ժողովրդայնությունը նույնանում էր կյանքի,
կենցաղի հետամնաց կողմերի հետ: Բանահյուսության մեջ նրանք որոնում
էին ժողովրդի խոնարհության, կրոնամիստիկ հավատալիքների, հետամնաց
ծեսերի և նահապետական սովորույթների արտահայտությունները: Ժողո-
վրդայնությունը նրանց մոտ կրում էր մեծ մասամբ ոճավորման և ազգագրու-
թյան, մակերեսային գունագեղության բնույթ:
Ռոմանտիկների մոտ ևս ժողովրդայնությունն ուներ իր սահմանափակու-
թյունները: Ուշադրությունը բևեռելով ուժեղ, միայնակ անհատների, ազատա-
տենչ հերոսների վրա, հակադրելով նրանց անտարբեր ամբոխին, ճղճիմ մի-
ջավայրին, հլու հնազանդ հասարակությանը, ռոմանտիկները կամա թե ակա-
մա թերագնահատում էին ժողովրդի դերը պատմության մեջ, դարձնում նրան
լոկ պասիվ ֆոն, որի վրա գործում էին մռայլ, ըմբոստ և խռովահույզ ան-
հատները:

Գրականության ժողովրդայնությունն առավել մեծ խորությամբ և հետևո-
ղականությամբ հանդես եկավ ռեալիստական արվեստում, որը և դարձավ
սոցիալիստական ռեալիզմի անմիջական նախորդը։
Որպես մեթոդ ուրվագծվելով դեռևս վերածնության շրջանում, ռեալիզմը
բարձր կատարելության և մեծ հաղթանակների հասավ միայն XIX դարում և,
Գորկու բնորոշմամբ, ձեռք բերեց քննադատական որակ։
Քննադատական ռեալիզմի սոցիալական հողը ժողովրդի դժգոհությունն
է իր ծանր վիճակից, նրա մղած ազատագրական պայքարը ֆեոդալական և
բուրժուական հասարակարգերի ազգային և դասակարգային կեղեքման դեմ։
Եթե արևմուտքում քննադատական ռեալիզմն արգասիք էր բուրժուական հա-
սարակարգում աշխատավորության կենսապայմանների խիստ վատացման,
ապա Ռուսաստանում՝ ժողովրդի պոտենցիալ մեծ հնարավորությունների և
իրական իրավազուրկ վիճակի հակասության, որն ակնհայտ դարձավ 1812
թվականի հայրենական պատերազմից հետո։
Հայ իրականության մեջ քննադատական ռեալիզմը ծնվեց Ցրիկի, Երզնկա-
ցու, Քուչակի, Սայաթ-Նովայի մոտ գերիշխող դարձած աշխարհիկ թեմատի-
կայից, երգիծական տենդենցներից և իր սուր ծայրով ուղղվեց ժողովրդի ու-
սերին ծանրացած օտար լծի, սոցիալ-դասակարգային ճնշման և շահագործ-
ման, կյանքի առաջընթացին խոչընդոտող նահապետական հետամնաց սովո-
րույթների դեմ։
Աբովյանի սինթետիկ ստեղծագործության մեջ հաղթանակ տանելով,
քննադատական ռեալիզմն իշխող մեթոդ է դառնում Պռոշյանի, Աղայանի,
Նալբանդյանի, Սունդուկյանի, Պարոնյանի, Զոհրապի, Շիրվանզադեի, Նար-
Դոսի, Հովհաննիսյանի, Թումանյանի, Իսահակյանի, Տերյանի ստեղծագոր-
ծություններում։ Նույնիսկ հայ ռոմանտիկները (Պատկանյան, Րաֆֆի) զերծ
չեն մնում նրա հզոր ազդեցությունից և մի շարք դեպքերում թեքվում են դեպի
ռեալիզմը։ Ազատագրման բուռն տենչը, հումանիզմի անմար փափագը, ակտիվ
հայրենասիրությունն ստիպում են այդ գրողներին գիտնականի զգաստ հա-
յացքով դիտել կյանքը, ճշմարտացի ներկայացնել կյանքի սոցիալական կոնտ-
րաստները և դասակարգային բևեռները, չվախենալ ամենադառը ճշմարտու-
թյուններից, այդ ամենը դիտել, գնահատել ժողովրդի շահերի տեսանկյունից։
Անցյալի մեծ ռեալիստները հասարակական կարգերը բացասում, մերժում
էին, խորապես հավատալով ժողովրդի ստեղծագործական ուժերին, նրա նվի-
րական իդեալների իրականացմանը։ Այս լավատեսական հավատը պայմանա-
վորված էր ժողովրդի հետ ունեցած կապով, պատմության մեջ նրա որոշիչ
դերի համեմատաբար ճշմարտացի և խոր ըմբռնմամբ։
Քննադատական ռեալիզմի մեծ ներկայացուցիչները գրականության ժո-
ղովրդայնության հարցում իրենց նախորդներից ավելի հեռուն էին գնում ո՛չ
միայն նրանով, որ ժողովրդին համարում էին պատմության շարժիչ ուժ, այլև
նրանով, որ աշխատավորներին էին համարում երկրի աղը, մարդկային բարձր
առաքինությունների, խոր արգասավոր մտքերի ու գեղեցիկ զգացմունքների
կրողը։ Այդպիսիք են՝ Տատյանան ու Շուշանիկը, Մատրյոնա Տիմոֆեևնան և
Անուշը, Ռախմետովը և Պեպոն։ Նույնպիսի ճշմարտացի լուծում են տալիս
նրանք նաև անհատի ու ժողովրդի փոխհարաբերությանը։ Անձնավորությունը
գրական գնահատականի է արժանանում այնքանով, որքանով իր գործունեու-
թյունը ծառայեցնում է ոչ թե էգոիստական նպատակների այլ՝ ժողովրդի կեն-



սական խնդիրներին։ Այս դեպքում ժողովրդի երջանկությունը դառնում է ան-
հատի երջանկության չափանիշն ու երաշխիքը։
Քննադատական ռեալիզմը ևս միատարր չէր։ Միանման չէին նաև նրանց
հայացքները ժողովրդայնության հարցում։ Քննադատական ռեալիզմի հաղ-
թանակի շրջանում ժողովրդայնության պահանջն այնքան լայն մասսայակա-
նություն էր ձեռք բերել, որ այն տարբեր չափերով ներկայացնում էին ռո-
մանտիկները և ռեալիստները, սլավոնաֆիլներն ու արևմտականները, ռևոլյու-
ցիոն-դեմոկրատներն ու պահպանողականները։
Շարունակելով ռեակցիոն ռոմանտիզմի գիծը՝ սլավոնաֆիլները, նրանց
հետ միասին նաև կղերականներն ու պահպանողականները, ժողովրդայնու-
թյունը հասկանում էին մակերեսայնորեն, գեղջկական հագուստների, խոսե-
լու ձևի ընդօրինակում, ավանդական ծեսերի, կենցաղավարության, տրադի-
ցիաների պահպանում և այլն։ Այդ հարցում հակառակ ծայրահեղության մեջ
էին ընկնում լիբերալ արևմտականները, որոնք ավանդականի, հնացածի հետ
մերժում էին նաև ժողովրդական կյանքի, կենցաղի լավագույն կողմերը և
առողջ տրադիցիաները, ամեն ինչ հանգեցնելով արևմուտքի բարքերի կույր
ընդօրինակմանը։
Անհամեմատ առաջադեմ և ճիշտ դիրք էին գրավել ռևոլյուցիոն դեմո-
կրատները, որոնք, շարունակելով Պուշկինի, դեկաբրիստների տեսակետները,
գտնում էին ժողովրդի կյանքի և ազգային բնավորության ճշմարտացի պատ-
կերման հարցը։ Բելինսկին սիրում էր վկայակոչել Գոգոլի խոսքերը, թե ժո-
ղովրդայնությունը «սարաֆանի» նկարագրության մեջ չէ, այլ ազգության բուն
ոգին ճշմարիտ արտահայտելու մեջ։
Բելինսկու դրույթները շարունակում են պաշտպանել և ստեղծագործորեն
զարգացնել Չերնիշևսկին և Դոբրոլյուբովը, Շչեդրինը և Նեկրասովը, հայ գրա-
կանության մեջ՝ Միքայել Նալբանդյանը, որոնք հանդես են գալիս որպես ներ-
քևից բարձրացող գյուղացիական ռևոլյուցիայի գաղափարախոսներ։ Նրանք
բացահայտում են իշխող ֆեոդալական, բուրժուական կարգերի հակաժողո-
վրդական բնույթը, ժողովրդի, հատկապես, գյուղացիության ուժին ապավի-
նած՝ բարձրացնում են ինչ անել հարցը։
Շարունակելով պայքարը «մաքուր արվեստի դեմ», որի քուրմերի համար
կարևոր և անկարևոր, ակտուալ և ոչ ակտուալ թեմաներ չկային, Չերնիշև-
սկին այն կարծիքն էր հայտնում, որ ժողովրդայնությունը, ամենից առաջ,
պետք է դրսևորվի ժողովրդի կյանքի հրատապ պրոբլեմները, կոնֆլիկտներն
ու թեմաները լուսաբանելու, նրա վշտի ու ցավերի ամոքման ուղիներ որոնե-
լու, ժողովրդին մատչելի գեղարվեստական ձևեր գտնելու մեջ։
Եթե մյուս ռեալիստների մոտ դրական հերոսը հոգեպես բավարարվում
էր ժողովրդի նկատմամբ լոկ հումանիստական վերաբերմունքով, երբեմն սահ-
մանափակվելով անձնական, քաղքենիական երջանկության շրջանակներով,
ապա ռևոլյուցիոն-դեմոկրատների մոտ դրական հերոսի հումանիզմը ենթա-
դրում է ակտիվ, ռևոլյուցիոն պայքար՝ ժողովրդի սոցիալական ազատագրու-
թյան, նրա սոցիալական երջանկության համար։ Գրականությունը տոգորվում
է սոցիալիստական իդեալներով և ռևոլյուցիոն հայրենասիրությամբ։
Սակայն քննադատական, այդ թվում նաև՝ ռևոլյուցիոն-դեմոկրատական
ռեալիզմը ևս ժողովրդայնության հարցում ուներ իր սահմանափակություն-
ները։ Նրանց պատկերած դրական հերոսը դեռևս պատմության դրական հերո-

սը չէր, որին վիճակված էր «աշխարհի վերափոխման» գործը, նրանց ցույց տված գյուղացիական ռևոլյուցիայի ճանապարհը այն ճիշտ ճանապարհը չէր, որը կարող էր հանգեցնել աշխատավորների սոցիալական ազատագրմանը:

Ռուսական ռևոլյուցիոն-դեմոկրատների ժողովրդայնության ուսմունքն, այնուամենայնիվ, ընդհուպ մոտեցնում է մեզ գրականության ժողովրդայնության մարքս-լենինյան ըմբռնմանը:

***

«Արվեստը պատկանում է ժողովրդին: Այն իր խոր արմատներով պետք է մխրճվի աշխատավորական լայն մասսաների բուն կանգվածների մեջ»:

**Վ. Ի. Լենին**

ԱՐԴ, որո՞նք են գրականության ժողովրդայնության չափանիշները: Մարքս-լենինյան գրականագիտությունը այդ չափանիշները որոնելիս ելնում է այն բանից, որ ժողովրդայնության գլխավոր պայմաններից մեկը պետք է լինի երկի ճշմարտացիությունը: Կյանքը գունազարդող կամ սևացնող ստեղծագործությունը ժողովրդային լինել, ժողովրդայնություն վայելել չի կարող: Միայն ճշմարիտ, հասարակական էական նշանակություն ունեցող արվեստն է ընդունվում ժողովրդի կողմից և բարձր գնահատականի արժանանում:

Բայց, քանի որ արվեստի ճշմարտացիությունը չի որոշվում նրանով, թե լուսանկարչական ի՞նչ ճշգրտությամբ կամ պատճենահանմամբ է արվեստագետն արտացոլում կյանքը, այլ՝ նրանով, թե հասարակական կյանքի ի՞նչ օրինաչափություններ, տիպական պրոցեսներ և բնավորություններ է հայտնագործում, ապա ժողովրդայնությունն ինքնին ենթադրում է ժողովրդի կյանքի էական կողմերի գեղարվեստական պատկերում, արդիականության կարևոր պրոբլեմների արտացոլում: Դրա համար գրականությունը պետք է սերտորեն կապվի ժողովրդի կյանքի հետ, մոտիկ կանգնած լինի նրան:

Գրական-պատմական թռուցիկ ակնարկն անգամ վկայում է, թե ինչպես առաջադեմ գրականությունն ընթացել է ժողովրդի կյանքին մոտենալու, թեմաների, հերոսների դեմոկրատացման ճանապարհով, իշխող դասակարգերի կյանքը պատկերելուց վճռական շրջադարձ կատարելով դեպի ժողովուրդը և հասարակ մարդիկ:

Սակայն գրականության պատմությունը ցույց է տալիս նաև, որ շատ հաճախ ժողովրդայնություն են վայելել ո՛չ միայն այն գործերը, որոնց մեջ պատկերվում է ժողովրդական ներքնախավերի, գյուղացիների կյանքը (Նեկրասովի «Ո՞վ է Ռուսիայում լավ ապրում», Թումանյանի «Անուշ» պոեմները), այլև՝ այն երկերը, որոնց մեջ արտացոլվում է իշխող դասակարգերի կյանքը (Պուշկինի «Եվգենի Օնեգին», Շիրվանզադեի «Քաոս» վեպերը): Վահան Տերյանի քնարերգությունը հայ գյուղացիության կյանքը չի արտացոլում. նրա հերոսը բարձր հոգեբանական զարգացման հասած ինտելիգենտն է: Սակայն Տերյանը մարդկային հուզաշխարհի այն կարևոր լարերն է հնչեցնում, որոնք ազնվացնում են ընթերցողի հոգին, բավարարում ժողովրդի էսթետիկական պահանջները, մշակում նրա մեջ զգացմունքի կուլտուրա և առաքինություններ: Այդ պատճառով Տերյանի քնարերգությունը լայն ժողովրդայնություն է վայելում:



Այս փաստերը հիմք են տալիս ասելու, որ թեմայի ժողովրդայնության տակ չպետք է հասկանալ լոկ դեմոկրատական խավերի նիստուկացի պատկերումը, այլ՝ այնպիսի կարևոր հարցադրումներ, որոնք ժողովրդի համար էական նշանակություն ունեն: Իսկ եթե հաշվի առնենք, որ նույն թեման դասակարգային տարբեր դիրքերի վրա կանգնած արվեստագետներ տարբեր ձևով են լուսաբանում, ապա պարզ կդառնա, որ ժողովրդայնությունը, թեմայի ճիշտ ընտրությունից բացի, պահանջում է նաև նրա ճիշտ լուծում: Ուստի, թեմայի լուծումը ևս պետք է ժողովրդային լինի, այսինքն՝ գրողը կյանքի փաստերին պետք է մոտենա ժողովրդի շահերի տեսանկյունից, երևույթները գնահատի նրա շահերից ելնելով: Ասել է թե, բարձր գաղափարայնությունը ժողովրդայնության կարևոր պայմաններից մեկն է:

Դա հնարավոր է միայն աշխատավոր և շահագործվող դասակարգերի, հատկապես՝ աշխարհը վերափոխելու ընդունակ պրոլետարիատի քաղաքական, բարոյական, էսթետիկական դիրքերին կանգնելու դեպքում: Արվեստը ապադասակարգային երևույթ չէ: «Գեղարվեստագետը,— ըստ Գորկու,— իր երկրի, իր դասակարգի զգայարանն է, նրա ականջը, աչքերը և սիրտը. նա իր դարի ձայնն է»: Ահա թե ինչու ռևոլյուցիոն դասակարգի տենչերն արտահայտելու դեպքում գրողը լայն ժողովրդայնություն է ձեռք բերում և նրա ձայնին ունկնդրում են միլիոնները:

Ժողովրդայնությունը պահանջում է նաև գեղարվեստական միջոցների կատարելություն, ձևի մատչելիություն և դեմոկրատիզմ՝ ազգային կենսունակ, առաջադեմ տարրերի պահպանման հողի վրա: Գեղարվեստի մեջ կյանքի արտացոլման ձևերն են՝ պատկերը և կերպարը, իսկ շինանյութն է լեզուն, պլաստիկ նյութը՝ հնչյունները, գույները և այլն: Ապազգային արվեստ և գրականություն գոյություն չունի, և իրավացի էր հայ մեծատաղանդ կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը, երբ իր հոբելյանը տոնող ժողովրդին ասաց, որ երաժշտության մեջ առաջին քայլերը կատարելու պահից սկսած՝ ինքը մտածել է, թե մեծ արվեստը միշտ ազգային է:

Ազգային ձևը ևս ունի իր բազմազան տարրերը: Կան տարրեր, որոնք մոտեցնում են ազգերին, ծայրահեղ դեպքում չեն հեռացնում նրանց իրարից, չեն հակադրում միմյանց, կան տարրեր էլ, որոնք, ընդհակառակը, մեկուսացնում, խորթացնում են նրանց:

Ժողովրդայնության մեջ բեկվող ինտերնացիոնալիզմը ոչ թե դեկլարացիա է, այլ ազգային, խորապես հարազատ երանգներով կերտված պատկերների ու կերպարների մեջ ամփոփված գաղափար, որը կարող է արտահայտվել թե՛ ազգային և թե միջազգային թեմաներում:

Դեռևս Գոգոլն է նկատել, որ ազգային ձևը կարող է դրսևորվել ուրիշ ժողովուրդների կյանքը պատկերելիս անգամ: Այս դեպքում, երևույթները գրողը ներկայացնում է այնպես, որ նրա հայացքն այդ երևույթների նկատմամբ հայրենակիցներին հարազատ է երևում: Նրանց թվում է, թե իրենք էլ այդ երևույթները կդիտեին և կգնահատեին նույն կերպ:

Այսպիսով, ժողովրդայնությունը գեղարվեստականության բարձրագույն վկայությունն է, որն արտահայտվում է գրական ստեղծագործության մի շարք առանձնահատկությունների մեջ՝ ճշմարտացիություն, համաժողովրդական կա-

ռեվոլյության ունեցող ճարցադրումներ, դրանց լուծում ժողովրդի շահերի
տեսանկյունից և ազգային լեզվով այնպիսի պատկերների ու կերպարների
կերտում, որոնք նպաստում են ժողովրդի հոգեգիտակցական աճին ու առաջ-
ընթացին։
Սոցիալիստական ռեալիզմի արվեստի և գրականության մեջ ժողովրդայ-
նության ամենաբարձր ու կատարյալ արտահայտությունը կոմունիստական
պարտիականությունն է։
Դեռևս Լենինից առաջ Մարքսն ու Էնգելսը, արվեստն ու գրականությունը
համարելով հասարակական գիտակցության և գաղափարախոսության ձևեր,
մատնացույց արին, որ դրանք դասակարգային երևույթներ են։
Ցույց տալով, որ դասակարգային գոտեմարտերի և պարտիաների պայ-
քարի պայմաններում անպարտիական գրականություն առհասարակ լինել չի
կարող, Լենինը հանգամանորեն պարզաբանում է և պաշտպանում գրականու-
թյան բացահայտ պարտիականության սկզբունքը։ Լենինը նշում է, որ գրակա-
նության պարտիականությունը երկկողմանի ակտ է՝ գրողներն ու արվեստա-
գետները կամավոր, ազատ կերպով ղեկավարվում են պարտիայի քաղաքա-
կանությամբ, իսկ պարտիան էլ, իր հերթին, ղեկավարում է գրականությանը։
Այս սկզբունքը լիովին ապահովում է գրողի ստեղծագործական ազատությու-
նը, արվեստի և գրականության ժողովրդայնության ծաղկումը։
Ելնելով այն իրողությունից, որ ստեղծագործության բացարձակ ազատու-
թյան պահանջը ֆիկցիա է, դատարկաբանություն, անարխիստական ֆրազ,
Լենինը հարցը դնում է իրական հողի վրա՝ ո՞ր պարտիական գրականությունն
է ապահովում գրողի ստեղծագործական առավելագույն ազատությունը։ Պա-
տասխանը մեկն է՝ այն պարտիական գրականությունը, որը ծառայում է ոչ
թե մի բուռ պորտաբույծներին, այլ ժողովրդի մեծամասնությանը, միլիոնա-
վոր և միլիոնավոր աշխատավորներին։
Հետևաբար, ամեն մի պարտիական գրականություն դեռևս ժողովրդային
չէ։ Ժողովրդի կենսական շահերը հետևողականորեն արտահայտող մի պար-
տիա գոյություն ունի միայն՝ կոմունիստական պարտիան և, բնական է, որ
այդ պարտիայի քաղաքականությամբ ղեկավարվող՝ սոցիալիստական ռեալիզ-
մի գրականությունը միջազգային ճանաչում է ձեռք բերել և լայն ժողովրդայ-
նություն է վայելում։
Արվեստն ու գրականությունը լայն ժողովրդայնություն են ձեռք բերում
և միլիոնների սեփականությունն են դառնում միայն այն բանից հետո, երբ
աշխատավորները թոթափում են իրենց ուսերից շահագործման լուծը և դառ-
նում իրենց կյանքի տերը։ Այդ ժամանակ, ահա, ժողովուրդն սկսում է ակտիվ
մասնակցել գրական-գեղարվեստական արժեքների ստեղծմանը։ Արվեստն ու
գրականությունն արտահայտում և միաձուլում են ժողովրդական զանգված-
ների նվիրական զգացմունքները— միտքն ու կամքը։ Գրականությունն ու ար-
վեստը հասկանալի և հարազատ են դառնում ժողովրդին և նրան մղում նոր
սխրանքների հանուն կոմունիստական գալիքի։
Ահա թե ինչու ընկեր Խրուշչովն ասում է. «Ով ուզում է ժողովրդի հետ
լինել, նա միշտ պարտիայի հետ կլինի։ Ով ամուր կանգնած է պարտիայի
դիրքերում, նա միշտ ժողովրդի հետ կլինի»։ Եվ ապա՝ «Արվեստի մեջ պար-
տիականությունը և ժողովրդայնությունը չեն հակասում միմյանց, նրանք կազ-
մում են միասնական ամբողջություն»։



Ուրեմն կոմունիստական պարտիականությունը ոչ թե պարտադրվում է գրողին, այլ բխում է ճշմարտությանը, պարտիային, ժողովրդին ծառայել ցանկացող արվեստագետի համոզմունքներից, ներքին էությունից, աշխարհըմբռնումից։ Գրողների համամիութենական երկրորդ համագումարում Միխայիլ Շոլոխովը շատ դիպուկ ասաց, որ սովետական գրողներին արտասահմանից կշտամբում են, թե իբր նրանք ազատ չեն, գրում են պարտիայի ցուցումով։ Դա ճիշտ չէ. «Մեզնից յուրաքանչյուրը գրում է իր սրտի թելադրանքով, իսկ մեր սրտերը պատկանում են պարտիային և հարազատ ժողովրդին, որոնց մենք ծառայում ենք մեր արվեստով»։

Հենց իր՝ Շոլոխովի խորապես պարտիական և լայն ժողովրդայնություն վայելող արվեստը դրա վառ ապացույցն է. «Միխայիլ Ալեքսանդրովիչ Շոլոխովի ստեղծագործության օրինակով,— գրում է ընկեր Խրուշչովը,— բոլորը տեսնում են, որ գրողի կոմունիստական պարտիականությունը ո՛չ միայն չի կաշկանդում նրա գեղարվեստական անհատականության դրսևորումները, այլև, ընդհակառակն, ակտիվորեն նպաստում է տաղանդի ծաղկմանը և նրա ստեղծագործությունները հասցնում է ամենաբարձր հասարակական նշանակալիության մակարդակի»։

Պարտիականության սկզբունքի մյուս կողմը պարտիայի ղեկավար դերի ճիշտ ըմբռնումն է գրականության և արվեստի զարգացման գործում։ Դեռևս 1905 թվականի ռևոլյուցիայի շրջանում, առաջ քաշելով գրականության բացահայտ պարտիականության պահանջը, ըստ որի գրական գործը պետք է դառնա ընդհանուր պրոլետարական գործի, միացյալ սոցիալ-դեմոկրատական պարտիական աշխատանքի մի մասը, այսինքն՝ պետք է ղեկավարվի պարտիայի կողմից, շարժման մեջ դրվի բանվոր դասակարգի գիտակից ավանգարդի կողմից, վերածվի պլանաչափ կազմակերպված գործի, Լենինը միաժամանակ գրում էր. «Անվիճելի է, որ գրական գործը ամենից քիչ է ենթարկվում մեքենայական հավասարեցման, համահարթման, մեծամասնության գերիշխանությանը փոքրամասնության վերաբերմամբ։ Անվիճելի է, որ այս գործում անպայման անհրաժեշտ է ապահովել անձնական նախաձեռնության, անհատական հակումների առավել ազատությունը, մտքի ու երևակայության, ձևի ու բովանդակության ազատությունը։ Այս բոլորն անվիճելի է, բայց այս բոլորը միայն այն է ապացուցում, որ պրոլետարիատի պարտիական գործի գրական մասը չի կարող շաբլոն կերպով նույնացվել պրոլետարիատի պարտիական գործի մյուս մասերի հետ» (Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, Երևան, 1958, էջ 45)։

Գրականության վերաբերյալ Լենինի հանճարեղ ասույթները, նրա սկզբունքային և հոգատար վերաբերմունքը Մաքսիմ Գորկու, Դեմյան Բեդնու, Վլադիմիր Մայակովսկու և մյուս գրողների նկատմամբ գրականության պարտիական ղեկավարման անգերազանց օրինակ են։

Ուղեցույց ունենալով Լենինի օրինակը, կոմունիստական պարտիան իր հերոսական պատմության ընթացքում ամենօրյա ղեկավարություն է ցույց տալիս սովետական գրականությանը, որի ցայտուն վկայություններն են պարտիական այն փաստաթղթերը, որոնք ուղենիշների դեր են կատարել սովետական գրականության զարգացման ճանապարհին, սկսած Լենինի կողմից 1920 թվականին գրված «Պրոլետարական կուլտուրայի մասին» բանաձևի նախագծից մինչև արվեստի ու գրականության հարցերի շուրջը Ն. Ս. Խրուշչովի

փայլուն ելույթները և 1963 թվականի հունիսյան պլենումում արտասանած ճառը։

Գրականության պարտիականությունն այն օբյեկտիվ չափանիշն է, որը հնարավորություն է տալիս ճիշտ լուծելու նաև գրականության ճշմարտացիության, ժողովրդայնության և մյուս հարցերը։ Իսկապես, ժողովրդային և ճըշմարտացի են այն գրականությունն ու արվեստը, որոնք ամենաառաջավոր դասակարգի՝ պրոլետարիատի գործի անբաժան մասն են կազմում և տոգորված են միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորների շահերն արտահայտող կոմունիստական պարտիայի քաղաքականությամբ։

Գրականության պարտիականության մարքսիստական-լենինյան սկզբունքն իր սուր ծայրով ուղղվում է ժողովրդի կյանքից, ճշմարտությունից հեռանալու բոլոր և ամեն տեսակ փորձերի դեմ, այսինքն՝ ստեղծագործական այն պրակտիկայի դեմ, որով զբաղվում են ֆորմալիզմը և աբստրակցիոնիզմը։

Իսկ դեպի ո՞ւր են տանում այդ փորձերը։

Դեռևս խավարամոլ ու մարդատյաց Նիցշեն գրում էր, որ կան գրքեր, որոնք և՛ հոգու, և՛ առողջության վրա միանգամայն հակառակ ներգործություն են ունենում, նայած դրանցից օգտվում են ցածր հոգիները և թույլ կենսական ուժերը, թե՞ բարձրագույնները և ավելի ուժեղները։ Առաջին դեպքում դրանք վտանգավոր, քայքայիչ գրքեր են, երկրորդում՝ մունետիկի բարձր կոչ, որը կանչում է քաջերին արիության։ Համընդհանուր գործածության գրքերը միշտ աչքի են ընկնում գեշ հոտով, նրանց կպչում է մանր մարդկանց հոտը։

Հասարակ մարդկանց, ժողովրդական մասսաների և նրանց արվեստի նկատմամբ այս նիցշեական քամահրանքը ժամանակակից անկումային արվեստի կույր հետևորդներին հանգեցնում է այն հետևության թե իբր միայն ընտրյալները կարող են հասկանալ իրենց, իսկ ժողովուրդը դեռ չի հասել այդ մակարդակին։ «Ցավն այն է,— գրում է Ն. Ս. Խրուշչովը,— որ առանձին նկարիչներ դատում են մոտավորապես այսպես՝ ով չի հասկանում մեր գործերը, նա, նշանակում է, չի հասել արվեստի այս տեսակը հասկանալու աստիճանին։ Դուրս է գալիս, որ նա խելացի է, իսկ ով չի հասկանում նրա խզբզանքը, չի հասել նրա «բարձր մակարդակին»»։

Գրականության ամբողջ առաջընթացը տարել և տանում է դեպի ավելի ու ավելի մեծ ժողովրդայնություն, մինչդեռ անկումային արվեստագետներն իրենց «երկերով» շարժվում են հակառակ ուղղությամբ՝ ժողովրդից հեռանալու, նրան խորթանալու ուղղությամբ։ Ահա թե ինչու ֆորմալիզմը, աբստրակցիոնիզմը ռեակցիոն երևույթներ են արվեստի մեջ, և նրանց դեմ պայքարը համաժողովրդական նշանակություն ունի։

Տակավին XIX դարում Նեկրասովը երազում էր այն ժամանակների մասին, երբ ժողովուրդը շուկայից տուն կտանի Բելինսկու և Գոգոլի երկերը։ «Դարձյալ մի արշավանք դեմոկրատիայի վրա» հոդվածում Լենինը, մեջբերելով Նեկրասովի այդ տողերը, հիացմունքով նշում է, որ 1905 թվականի ռևոլյուցիան մոտեցրեց այդ ժամանակը, դեմոկրատական գրքույկը դարձավ առուծախի առարկա։ Նեկրասովի երազած լայն ժողովրդայնությունը, սակայն, եկավ միայն Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայից հետո, երբ ամբողջ ժողովուրդը գրագետ դարձավ։

Մինչև Հոկտեմբերը գրականության և ժողովրդի փոխհարաբերությունը միակողմանի էր։ Եթե մինչ այդ գրականությունը ժողովրդից վերցնում էր,



բայց նրա վերադարձրածը ժողովուրդը հնարավորություն չուներ յուրացնելու, ապա սոցիալիստական ռևոլյուցիայից հետո եկավ արվեստի և գրականության իսկական ժողովրդայնության ժամանակաշրջանը. գրագետ ժողովուրդն սկսեց լիաբուռ օգտվել արվեստի և գրականության գանձարանից, իր անկաշառ կարծիքներով մասնակցել արվեստի երկերի գնահատմանն ու արժեքավորմանը։ Ահա ժողովրդի այդ կարծիքից վախենալով միայն կարելի է բացատրել արվեստի կեղծ քուրմերի փորձերը՝ իրենց երկերի գաղափարական ու գեղարվեստական սնանկությունը սքողելու իրենց «բարձր մակարդակի» մասին ամպագոռգոռ, սնապարծ հայտարարություններով։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումը, անշեղորեն շարունակելով և զարգացնելով արվեստի ու գրականության պարտիականության լենինյան սկզբունքները, արվեստի ու գրականության աշխատողներից պահանջեց ավելի ամրապնդել կապերը ժողովրդի հետ, ունկնդրել նրա ձայնին, մասնակցել մարդկային հոգեբանության վերափոխման պատմական մեծ պրոցեսին, գործել հօգուտ ժողովրդի և կոմունիստական գալիքի։ Ժողովուրդը գրողներից և արվեստագետներից սպասում է այնպիսի ստեղծագործություններ, որոնք պատկերեն կյանքի ամբողջ բազմազանությունը, հասարակական ու բարոյական տարբեր մակարդակի վրա գտնվող մարդկանց, բայց պատկերեն ճշմարտացիորեն, ընդգծելով մեր իրականության մեջ այն, ինչ հիմնական է, առաջատար։

Պարտիայի ու ժողովրդի այս սպասելիքների հաջող իրականացումն է միայն ապահովում գրականության ու արվեստի լայն մասսայականությունն ու ժողովրդայնությունը։



# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՓՈՐՁԻՑ

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ աշխատանքը կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատներից մեկն է։ Սովետական բազմազգ երկրի աշխատավորների դաստիարակումը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության ոգով՝ պարտիայի գաղափարական աշխատանքի անկապտելի մասն է։

Արդի պայմաններում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության աճող նշանակությունը պայմանավորված է հետևյալ գործոններով. առաջին, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում տեղի է ունենում ազգերի համակողմանի զարգացման և էլ ավելի մերձեցման օբյեկտիվ պրոցես. երկրորդ, սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ և սոցիալիստական երկրների փոխադարձ կապերն ավելի են ընդլայնվում ու խորանում, ամրապնդվում են սովետական ժողովրդի կապերը աշխարհի բոլոր ժողովուրդների հետ. երրորդ, խնդիր է դրվում ամեն կերպ ուժեղացնել պայքարը մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ, որոնցից առավել կենսունակներից են նացիոնալիզմի դրսևորումները։

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան (1963 թ.) պլենումը քննարկելով պարտիայի գաղափարական գործունեության հերթական խնդիրները, պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց «ուժեղացնել աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու աշխատանքները, ամրապնդել Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը՝ սոցիալիզմի մեծագույն նվաճումը, ակտիվորեն նպաստել ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրաների փոխադարձ հարստացմանը, անհաշտ պայքար մղել նացիոնալիզմի բոլոր տեսակի դրսևորումների... դեմ»։

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հիմքը արտադրության սոցիալիստական եղանակն է, սովետական հասարակական-պետական կարգը, մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունը։ Սակայն այս օբյեկտիվ գործոնները, որոնք պայմանավորում են ինտերնացիոնալ դաստիարակության էությունն ու խնդիրները, ոչ միայն չեն բացառում, այլ ընդգծում են սուբյեկտիվ գործոնի, այսինքն՝ հասարակական, ամենից առաջ, պարտիական կազմակերպությունների ակտիվ ու ներգործուն դերը։



Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը նշեց, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել աշխատավորներին ժողովուրդների բարեկամության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներով դաստիարակելու ուղղությամբ։ Անհամեմատ ընդարձակվել են այդ աշխատանքի շրջանակները, հարստացել է նրա բովանդակությունը։

Ի՞նչ նոր ձևեր ու մեթոդներ են կիրառվել ռեսպուբլիկայում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում։ Ամենից առաջ լուրջ քայլեր են արված կյանքից, կոմունիստական շինարարության գործնական խնդիրներից ինտերնացիոնալ դաստիարակության կտրվածությունը հաղթահարելու ուղղությամբ։ Այն դարձել է ներգործուն, նպատակասլաց, ակտիվ, իր հիմքում ունենալով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը և կոմունիստական հարաբերությունների ձևավորմանը նպաստելու գլխավոր խնդիրը։ Այստեղ վիթխարի բարերար ազդեցություն ունեցավ անհատի պաշտամունքի վճռական դատապարտումը, նրա վնասակար հետևանքների հաղթահարումը։ Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում գերակշռում էին պասսիվ, հայեցողական ձևերը, որոնք հաճախ հանգեցվում էին ցիտատներով ողողված, կյանքից կտրված դասախոսությունների կազմակերպմանը։

Ինտերնացիոնալիզմը վերացական հասկացություն չէ։ Այն ծնվել է կապիտալիզմի դեմ մղվող պայքարում, թրծվել սոցիալիզմի կառուցման բովում, հաղթանակով դուրս եկել Հայրենական մեծ պատերազմի դաժան փորձությունից և այսօր էլ նոր, կոմունիստական կյանքի կառուցման առհավատչյան է։ Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը կոմունիստական իդեալների իրականացման համար մղվող պայքարի յուրաքանչյուր էտապում ունի իր կոնկրետ բովանդակությունն ու խնդիրները։ Այսօր, երբ սովետական ժողովուրդը գործնականորեն ձեռնամուխ է եղել կոմունիստական հասարակարգի կառուցմանը, ինտերնացիոնալ դաստիարակությունն ստանում է նոր որակ ու նոր թափ։ Նրա ուղղությունը և նպատակները սերտորեն կապված են մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և նոր մարդու ձևավորման հետ։



ԿՈՄՈՒՆԻԶՄԻ նյութատեխնիկական բազայի ստեղծումը, նշված է ՍՄԿՊ ծրագրում, տանում է դեպի սովետական ժողովուրդների ավելի սերտ միավորում, փոխադարձ կապի ու փոխադարձ օգնության հետագա ուժեղացում։ Ներռեսպուբլիկական, ներազգային կապերին զուգընթաց համակողմանի զարգանում են միջռեսպուբլիկական, այսինքն՝ ինտերնացիոնալ տնտեսական և կուլտուրական կապերը։ Հայ ժողովուրդն այսօր իրավամբ հպարտանում է նյութական ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած իր աննախընթաց վիթխարի նվաճումներով։ Դրանք ոչ միայն նրա աշխատասիրության, տաղանդի, ստեղծագործական ոգու արգասիքն են, այլև կոմունիստների մեծագործ պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման, սովետական բոլոր ժողովուրդների և, ամենից առաջ՝ ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնության

արդյունքը։ Վերցնենք ռեսպուբլիկայի ջերմաէներգետիկայի առաջնեկի՝ Երևա-
նի ջերմաէլեկտրակայանի կառուցումը։ Դա ՍՍՌՄ ժողովուրդների ինտերնա-
ցիոնալ աշխատանքային համագործակցության ակնառու օրինակ է։ Այդ ջեր-
մաէլեկտրակայանի կառուցմանը մասնակցել են Ռուսաստանի ֆեդերացիայի,
Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լատվիայի, Ադրբեջանի, Վրաստանի, Էստոնիայի
բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ ու մոնտաժային կազմա-
կերպություններ, բանվորներ ու մասնագետներ։ Մեծ քիմիայի հսկաներից
մեկի՝ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանի կառուցմանը
մասնակցել են միութենական բոլոր ռեսպուբլիկաների 248 ձեռնարկություն-
ներ և զանազան կազմակերպություններ։

Ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ ռեսպուբլիկայի պար-
տիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կող-
մից կատարվող աշխատանքներում ավելի ու ավելի մեծ տեղ է գրավում եղ-
բայրական ռեսպուբլիկաների աշխատավորների հետ սոցիալիստական մրցու-
թյան ծավալումը, որը ժողովուրդների լենինյան բարեկամության կոնկրետ և
վառ արտահայտություններից է։ Սոցիալիստական մրցությունը նոր կյանքի
կառուցման կոմունիստական մեթոդն է, որը հիմնված է աշխատավոր լայն
զանգվածների նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության լայն
ծավալման վրա։ Այն սովետական հասարակարգի զարգացման օբյեկտիվ օրի-
նաչափությունն է։

Դեռևս սովետական իշխանության առաջին ամիսներին գրած «Ինչպես
կազմակերպել մրցությունը» նշանավոր հոդվածում Վ. Ի. Լենինը ձևակերպեց
սոցիալիստական մրցության գլխավոր սկզբունքները։ Դրանք են՝ փոխադարձ
ընկերական օգնությունը, առաջավոր փորձի ընդօրինակումը և մրցության ար-
դյունքների հրապարակային համեմատությունն ու քննարկումը։ Սովետական
ռեսպուբլիկաների աշխատավորների սոցիալիստական մրցությունը լենինյան
այս սկզբունքների կենդանի մարմնացումն է։

Ինչո՞վ է բնորոշ Սովետական Հայաստանի և մյուս եղբայրական ռես-
պուբլիկաների աշխատավորների միջև ծավալվող սոցիալիստական մրցու-
թյունը։ Նախ՝ այն օրեցօր ստանում է մասսայական բնույթ, տարածվում լայ-
նությամբ, ընդգրկում նոր քաղաքներ ու շրջաններ, արդյունաբերական ձեռ-
նարկություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ։ Փոխվել է այդ մրցու-
թյան աշխարհագրությունը. տարածությունն այլևս նշանակություն չունի դրա
ծավալման համար։ Երևանի աշխատավորները մրցում են Կիևի, Բաքվի և
Թբիլիսիի աշխատավորների հետ, Լենինականը՝ Քութայիսիի և Կիրովաբադի,
Կիրովականի աշխատավորները՝ Սումգաիթի, Քութայիսիի և Սուխումիի աշխա-
տավորների հետ, մրցում են Երևանի և Մոսկվայի ժողտնտխորհի (մարզային)
Կուսկովո քաղաքի «Պոլիվինիլացետատ», Երևանի և Յարոսլավլի ավտոդողերի,
Երևանի և Ռիգայի էլեկտրական ճշգրիտ չափիչ գործիքների գործարանների
կոլեկտիվները, Հայկական ՍՍՌ Անիի և Կրասնոդարի մարզի Ուստ-Լաբինսկի,
Հայկական ՍՍՌ Արտաշատի և Ուկրաինական ՍՍՌ Բոլշե-Ալեքսանդրովսկի
վարչությունների կոլտնտեսություններն ու սովխոզները և այլն։ Բայց միայն
լայնությամբ չէ, որ ծավալվում է եղբայրական ռեսպուբլիկաների աշխատա-
վորների սոցիալիստական մրցությունը։ Այն ծավալվում է և խորությամբ.
հաղթահարելով ձևականությունը, ավելորդ աղմկարարությունն ու պարադայ-
նությունը, ստանում գործնական ու գործարար բնույթ, դառնում առաջավոր



փորձի ընդօրինակման ու արմատավորման հրապարակային տրիբունա, բա-
րոյական հզոր խթան՝ կոմունիզմի համար մղվող պայքարում։

Այդ մրցության բարձրագույն չափանիշը դարձել է այն, թե նա որքանով
է նպաստում կոմունիստական շինարարության գործնական խնդիրների լուծ-
մանը, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմանը, նոր
մարդու ձևավորմանը։

Ուսանելի է Բաքու, Թբիլիսի և Երևան քաղաքների սոցիալիստական մըր-
ցության պատմությունը։

1961 թվականի փետրվարի 7-ին, հանդես գալով Անդրկովկասի գյուղա-
տնտեսության առաջավորների խորհրդակցությունում, Ն. Ս. Խրուշչովն
ասաց. «Դուք հարևաններ եք և, անշուշտ, լավ գիտեք, թե ինչպես են ընթա-
նում ձեր ռեսպուբլիկաներից յուրաքանչյուրի գործերը և ինչպիսի հաջողու-
թյուններ է ձեռք բերում նրանցից յուրաքանչյուրը։ Բայց թույլ տվեք անկեղ-
ծորեն ասել, որ դուք փորձի փոխանակման և ընդհանուր խնդիրների համա-
տեղ քննարկման համար այնքան էլ հաճախ չեք հանդիպում, թեև այդպիսի
հանդիպումներն օգտակար են թե՛ տնտեսական և թե՛ քաղաքական տեսա-
կետից»։

Ոգեշնչված Ն. Ս. Խրուշչովի բարի խորհրդով, Բաքու, Թբիլիսի և Երևան
քաղաքների ներկայացուցիչները փետրվարի 28-ին կնքում են սոցիալիստա-
կան մրցության պայմանագիր։ Մրցակիցները պարբերաբար հանդիպում են,
ամփոփում սոցիալիստական մրցության արդյունքները, կատարում փորձի
փոխանակում, համատեղ քննարկում տնտեսական ու կուլտուրական շինարա-
րության հրատապ խնդիրները։ Սոցիալիստական մրցության շնորհիվ վերջին
տարիներին բարելավվել են մրցող քաղաքների արդյունաբերական ձեռնար-
կությունների, շինարարական ու տրանսպորտային կազմակերպությունների
տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, բարձրացել է բնակչության կուլտուր-
կենցաղային սպասարկման մակարդակը։ Յոթնամյակի 5-րդ տարին՝ 1963
թվականը, երեք քաղաքների աշխատավորները փակեցին արտադրական մեծ
նվաճումներով։

Երկար ժամանակ չէ, ինչ Անիի արտադրական վարչության կոլտնտեսա-
կաններն ու սովխոզների բանվորները մրցության մեջ են Կրասնոդարի երկրա-
մասի Ուստ-Լաբինսկի վարչության աշխատավորների հետ։ Բայց որքա՜ն
շատ բան են սովորել Շիրակի հողագործներն իրենց մրցակիցներից, մասնա-
վորապես ինտենսիվ գյուղատնտեսություն վարելու գործում։ Եվ, եթե Անիի
վարչության տնտեսությունները 1963 թվականին պետությանը վաճառեցին
612 հազար փութ հացահատիկ՝ նախատեսվածից 84 հազար փթով ավելի, գե-
րակատարեցին անասնապահական մթերքների արտադրության և վաճառքի
պլանները, ապա այդ հաջողությունների ձեռքբերման մեջ կարևոր դեր խաղաց
նրանց սոցիալիստական մրցությունը կրասնոդարցիների հետ։ Այս տարի Անիի
արտադրական վարչության կոլտնտեսությունները, սովխոզների բանվորներն
ու գյուղատնտեսության մասնագետները ռեսպուբլիկայում առաջինը արձա-
գանքեցին Կրասնոդարի երկրամասի գյուղի աշխատավորների հայրենասի-
րական նախաձեռնությանը՝ շեշտակիորեն ավելացնել գյուղատնտեսական
մթերքների արտադրությունը և ստանձնեցին սոցիալիստական նոր պարտա-
վորություններ։

Անխախտ բարեկամության և եղբայրական օգնության մասին է խոսում և հետևյալ փաստը: Ադրբեջանական մի շարք շրջաններում՝ Ղազախ, Թաուզ և այլն, հացահատիկային կուլտուրաների բերքահավաքն սկսվում է ավելի վաղ, քան նրանց սահմանակից հայկական Իջևան, Շամշադին և այլ շրջաններում: Եվ, ահա, երկու եղբայրական ռեսպուբլիկաների սահմանակից շրջանների գյուղատնտեսական տեխնիկան օգտագործվում է սկզբում Ադրբեջանի, ապա՝ հայկական շրջանների բերքահավաքը սեղմ ժամկետում և անկորուստ անցկացնելու համար: Այս նոր երևույթ է ժողովուրդների տնտեսական համագործակցության ասպարեզում: Գյուղատնտեսական տեխնիկան ինչ-որ չափով դադարում է միայն տվյալ ռեսպուբլիկայի, տվյալ կոլտնտեսության սեփականությունը լինելուց: Այդ արդեն կոմունիզմ կառուցող մարդկանց հասարակական հարաբերություններ են:

Մրցում են ոչ միայն քաղաքները, շրջաններն ու արտադրական վարչությունները, նրանց ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները, այլև արտադրության նորարարներն ու առաջավորները: Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի և եղբայրական բարեկամության գաղափարներով տոգորված մրցության օրինակ են տալիս Հայքիմարդշինի № 1 տրեստի կոմպլեքսային բրիգադայի բրիգադավար Լևոն Մելքոնյանը և Սումգաիթի № 19 շինվարչության բրիգադավար Բաղիշ Շաբանովը: Բարեկամական մրցության մեջ են գտնվում Լենինականի, Կիրովաբադի և Քութայիսի տեքստիլագործներ Կ. Սարգսյանը, Ա. Պետրոսյանը, Ս. Գրիգորյանը, Զ. Խալիլովան, Գ. Ալիևը, Գ. Հուսեյնովը, Օ. Մամեդովը, Պ. Կուչավան, Շ. Կուտիվաձեն և ուրիշներ, Ադրբեջանական ՍՍՌ-ի Կասըմ Իսմայիլովի արտադրական վարչության՝ ապրիլի 28-ի անվան ոչխարաբուծական սովխոզի ավագ հովիվ, սոցիալիստական աշխատանքի հերոս Յունուս Հաջիևը և Հայկական ՍՍՌ Գորիսի վարչության Քարաշեն գյուղի անվանի հովիվ Մուշեղ Մարտիրոսյանը, Նախիջևանի ԱՍՍՌ Նորաշենի արտադրական վարչության անվանի բամբակագործուհի Բահար Թալիբովան և Հայկական ՍՍՌ Էջմիածնի վարչության առաջավոր բամբակագործուհի Արծվիկ Հարությունյանը և շատ ուրիշներ: Արտադրության առաջամարտիկների կենդանի մրցությունը հարազատացնում է տարբեր ազգությունների մարդկանց, նպաստում նրանց հոգեկան ինտերնացիոնալ կերտվածքի ձևավորմանը, հնարավորություն տալիս ընկերական անշահախնդիր փոխօգնության և փորձի փոխանակման հիման վրա արմատավորել աշխատանքի առաջավոր ձևեր ու մեթոդներ:

Եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորների միջև ծավալվող սոցիալիստական մրցությունը ոչ միայն կարևոր գործոն է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար մղվող պայքարում, այլև մեծ դեր է խաղում սովետական բազմազգ ժողովուրդների մերձեցման, նրանց անխորտակելի բարեկամության էլ ավելի ամրապնդման, աշխատավորների կոմունիստական, ինտերնացիոնալ դաստիարակության գործում: Կարևոր չէ, թե այդ մրցության մեջ ով կհաղթի: Գլխավորն այն է, որ նա ծառայում է մի նպատակի՝ կոմունիզմի կառուցման մեծ գործին: Այդ մրցության մեջ բոլոր դեպքերում հաղթողը ժողովուրդների լենինյան բարեկամությունն է:



* * *

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ինտերնացիոնալ դաստիարակության զինանոցում կարևոր միջոցներ են սոցիալիստական կուլտուրան, նրա բազմազան ձևերը: Պրակտիկայում լայնորեն տարածվել են կուլտուրաների փոխադարձ հարստացմանն ու մերձեցմանը նպաստող այնպիսի միջոցառումներ, ինչպես՝ եղբայրական ռեսպուբլիկաների կուլտուրաների տասնօրյակների, շաբաթների և օրերի, կինոֆեստիվալների, բարեկամության համերգների ու ներկայացումների, գրքի պրոպագանդման կազմակերպումը, թատերական ու համերգային կոլեկտիվների փոխանակումը և այլն: Ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում հիանալի իրադարձություն էին հայկական գրականության ու արվեստի տասնօրյակը Ուզբեկական ՍՍՌ-ում և ուզբեկական գրականության ու արվեստի տասնօրյակը Հայաստանում, Ռուսաստանի ֆեդերացիայի, Ուկրաինայի, Վրաստանի, Ադրբեջանի, Լիտվայի կերպարվեստի վարպետների ցուցահանդեսների կազմակերպումը, Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի օպերային թատրոնների գաստրոլները և այլն:

Մեր երկրի բոլոր ժողովուրդները, Սովետական Հայաստանի աշխատավորների հետ միասին, որպես կուլտուրայի մեծ տոն նշեցին Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600-ամյակը և Սայաթ-Նովայի՝ 250-ամյակը: Միաժամանակ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները սիրով նշեցին եղբայրական ժողովուրդների կուլտուրայի մեծ գործիչներ Պուշկինի, Բրյուսովի, Լեսի Ուկրաինկայի, Ստանիսլավսկու, Վաժա Փշավելայի, Ախունդովի, Սաբիրի հոբելյանական տարելիցները: Վերջերս մեծ հանդիսավորությամբ նշվեց ուկրաինական գրականության ռահվիրա Տ. Գ. Շևչենկոյի ծննդյան 150-ամյակը և ռուսական տպագրության 400-ամյակը: Հայերեն լեզվով հրատարակվել են «Սովետական ռուս պոեզիայի անթոլոգիան», «Վրացական գրականության անթոլոգիան», ինչպես նաև սովետական բազմազգ գրականության շատ ներկայացուցիչների ստեղծագործությունները: Հատկանշական է, որ փոխադարձ կուլտուրական միջոցառումներ են կազմակերպվում ոչ միայն միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում կամ խոշոր քաղաքներում, այլ նաև գյուղական շրջաններում: Շամշադինի շրջանում անց են կացվել վրացական և ադրբեջանական սովետական գրականության ու արվեստի շաբաթներ, որոնց մասնակցել են այդ ռեսպուբլիկաների կուլտուրայի գործիչները՝ ակադեմիկոս Կ. Գամսախուրդիայի և ժողովրդական գրող Մ. Իբրահիմովի գլխավորությամբ:

Շատ բան է արված գիտնականների ստեղծագործական կապերի ընդլայնման ու ամրապնդման ուղղությամբ: Ռեսպուբլիկայի գիտնականները եղբայրական մյուս ռեսպուբլիկաների գիտնականների հետ սերտ համագործակցած մշակում են տեսական և ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող պրոբլեմներ, մասնավորապես աստրոֆիզիկայի, միջուկային և կարծր մարմինների ֆիզիկայի, օգտակար հանածոների կոմպլեքսային օգտագործման, ագրոքիմիայի և այլ բնագավառներում: Անդրկովկասի գիտնականները համատեղ մշակել են Վրացական, Ադրբեջանական և Հայկական ՍՍՌ-ների էներգասիստեմների միավորման գիտական հիմունքները: ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում բարձր գնահատականի արժանացավ ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Գ. Ս. Դավթյանի գլխավորած ագրոքիմիայի լաբորատորիայի կոլեկտիվի աշխատանքը հիդրոպոնիկ եղանակով

բանջարեղենի և վիտամինային կերերի աճեցման ուղղությամբ։ Ներկայումս այդ
եղանակն ուսումնասիրելու համար Հայաստան են գալիս բազմաթիվ ռեսպուբ-
լիկաների գիտական հիմնարկների ներկայացուցիչներ, գյուղատնտեսության
աշխատողներ։ Հայ ագրոքիմիկներն օգնում են նրանց՝ արմատավորելու բան-
ջարեղենի և վիտամինային կերերի աճեցման հիդրոպոնիկ առաջավոր մեթոդը։

Համատեղ բեղմնավոր աշխատանք է կատարվում և հասարակական գի-
տությունների բնագավառում։ ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենի-
նիզմի ինստիտուտի վրացական, ադրբեջանական և հայկական ֆիլիալների
կոլեկտիվ ջանքերով լույս է տեսել «Վ. Ի. Լենինը Անդրկովկասի մասին» ժո-
ղովածուն։ Այժմ նրանք միացյալ ուժերով պատրաստում են «Անդրկովկասի
կոմունիստական կազմակերպությունների պատմության ուրվագծեր»-ը երկհա-
տոր աշխատությունը։ Լայն պրակտիկա է դարձել գիտական միացյալ սեսիա-
ների, կոնֆերանսների և խորհրդակցությունների հրավիրումը՝ կարևոր գի-
տական պրոբլեմները համատեղ քննարկելու համար։

1964 թվականի մարտին Երևանում տեղի ունեցավ անդրկովկասյան գի-
տական սեսիա՝ նվիրված հողային և ագրոքիմիական խոշոր մասշտաբի քար-
տեզներ կազմելու ուղղությամբ կատարվող աշխատանքներին, հողի էռոզիայի
դեմ մղվող պայքարի և հողի ռացիոնալ օգտագործման հարցերին։ Սեսիան
լուրջ նշանակություն կունենա գյուղատնտեսության ինտենսիֆիկացման հա-
մար։ Գիտական ու քաղաքական-դաստիարակչական մեծ նշանակություն ու-
նեցավ 1963 թվականի նոյեմբերին Երևանում գումարված անդրկովկասյան
ռեսպուբլիկաների գիտությունների ակադեմիաների պատմության ինստիտուտ-
ների և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ֆի-
լիալների համատեղ գիտական սեսիան՝ նվիրված ժողովուրդների լենինյան
բարեկամությանը։

Միացյալ գիտական սեսիաների ու կոնֆերանսների հրավիրումը, տեսա-
կան ու պրակտիկ նշանակություն ունեցող գիտական խոշոր պրոբլեմների
համատեղ մշակումը ոչ միայն նպաստում են գիտության առաջընթացին,
այլ նաև կարևոր դեր են խաղում աշխատավորներին և, ամենից առաջ, ինտե-
լիգենցիային ժողովուրդների բարեկամության և սոցիալիստական ինտերնա-
ցիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում։ Սովետական ժողովուրդների գի-
տական ու կուլտուրական կապերի ամրապնդման նպատակով միջոցառումներ
կազմակերպվում էին և առաջ։ Բայց դրանք լինում էին դեպքից դեպք, այս
կամ այն տարելիցի առթիվ և մեծ մասամբ կրում էին ցուցադրական բնույթ։ Այժմ
ընդլայնվել են այդ կապերը, դրանք դարձել են բազմազան ու մշտական։ Եղ-
բայրական ռեսպուբլիկաների ներկայացուցիչների գիտական-կուլտուրական
հանդիպումներն ու կապերը, որպես կանոն, տեղի են ունենում գործնական,
ստեղծագործական մթնոլորտում և մեծապես նպաստում սոցիալիստական ազ-
գերի կուլտուրաների փոխադարձ հարստացմանն ու մերձեցմանը։

❀❀❀

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ բարեկամության գաղափարների պրոպագանդ-
ման և ինտերնացիոնալ դաստիարակության զինանոցում կարևոր
տեղ են գրավում մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, քա-
ղաքական-մասսայական աշխատանքը։ Վերջին ժամանակաշրջա-



նում գովելի տրադիցիա է դարձել միութենական ռեսպուբլիկաների թերթերի
միացյալ համարների լույսընծայումը, էջերի փոխանակումը, ՍՍՌՄ եղբայրա-
կան ժողովուրդներին նվիրված ռադիո և հեռուստատեսային հաղորդումների
կազմակերպումը և այլն։ «Սովետական Հայաստան» թերթը հատուկ համար-
ներ է նվիրել Ուկրաինական, Ղազախական և մյուս եղբայրական ռեսպուբլի-
կաներին։ «Կոմունիստ», «Բակինսկի ռաբոչի» և «Զարյա վոստոկա» թերթերը
լույս են ընծայել ժողովուրդների բարեկամությանը նվիրված միացյալ հա-
մար և այլն։ Հարստացել են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարա-
կության ուղղությամբ կատարվող քաղաքական-գաղափարական աշխատանքի
ձևերն ու մեթոդները։ Լավ նախաձեռնություն են հանդես բերել Իջևանի ար-
տադրական վարչության պարտիական կոմիտեն և «Գիտելիք» ընկերության
բաժանմունքը՝ կազմակերպելով ժողովուրդների բարեկամության համալսա-
րան։ Այստեղ յուրաքանչյուր պարապմունք նվիրվում է միութենական մեկ
ռեսպուբլիկայի։ Պարապմունքներին մասնակցում, զեկուցում և ելույթ են
ունենում տվյալ ռեսպուբլիկայի աշխատավորության ներկայացուցիչներ։
Պարապմունքներին ուղեկցվում են ժողովրդական տնտեսության ու կուլտու-
րայի բնագավառներում եղբայրական ժողովուրդների ձեռք բերած նվաճում-
ների վերաբերյալ զեկուցումները, ցուցահանդեսները, կինոֆեստիվալները,
գրքի պրոպագանդման շաբաթների կազմակերպմամբ։

Համալսարանի պարապմունքներից մեկը, օրինակ, նվիրված էր Ուկրաինա-
կան ՍՍՌ-ին։ Նախքան պարապմունքն անցկացնելը, վարչության կոլտնտեսու-
թյուններում, սովխոզներում, հիմնարկ-ձեռնարկություններում, դպրոցներում
կարդացվեցին դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ Սովետական
Ուկրաինայի, ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարեկամության, պար-
տիայի լենինյան ազգային քաղաքականության, հայ և ուկրաինական ժողո-
վուրդների բարեկամության մասին և այլն։ Շրջանային կուլտուրայի տանը
բացվեց Ուկրաինական ՍՍՌ-ին նվիրված ցուցահանդես։ Կազմակերպվեց
ուկրաինական ֆիլմերի կինոֆեստիվալ, ուկրաինական գրքի պրոպագանդման
շաբաթ։ Գեղարվեստական ինքնագործունեության խմբակները հանդես եկան
ուկրաինական կոմպոզիտորների և դրամատուրգների ստեղծագործությունների
կատարմամբ։ Պարապմունքին մասնակցելու համար ժամանեց Սովետական
Ուկրաինայի աշխատավորների ներկայացուցիչների պատվիրակությունը, որի
կազմում էին բանասիրական գիտությունների դոկտոր Ս. Ա. Կրժիժանովսկին,
արվեստագիտության թեկնածու Լ. Ի. Պոպովան, տնտեսական գիտությունների
թեկնածու Բ. Ն. Կոլոդնին, կինոդրամատուրգ Պ. Վ. Վոլոբույը։ Նրանք ունկըն-
դիրներին պատմեցին ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Ուկ-
րաինական ՍՍՌ-ի ձեռք բերած տնտեսական ու կուլտուրական նվաճումների
մասին։

Համալսարանի պարապմունքները չեն սահմանափակվում միայն տեղում
կազմակերպվող միջոցառումներով։ Ռեկտորատն ունկնդիրների համար կազ-
մակերպել է էքսկուրսիաներ դեպի Թբիլիսի, Բաքու, Սումգաիթ, որտեղ նրանք
այցելել են արդյունաբերական ձեռնարկությունները, կուլտուրայի օջախներն
ու տեսարժան վայրերը, հանդիպումներ ունեցել եղբայրական ռեսպուբլիկա-
ների աշխատավորության հետ։

Ուշադրության արժանի է ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության կոնկրետ
հարցերին նվիրված թեմատիկ կոնֆերանսների կազմակերպումը։ Շամշադի-

նի վարչության պարտիական կոմիտեն Ադրբեջանական ՍՍՌ Ղազախի և Վրացական ՍՍՌ Գուրջանիի վարչությունների պարտիական կոմիտեների հետ համատեղ կազմակերպել է կոնֆերանս՝ «Աշխատանքում ամրապնդվող բարեկամությունը» թեմայով։

Եղեգնաձորի վարչության պարտիական կոմիտեին ասրնթեր գործում է ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությանը նվիրված լեկտորիում։ Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում նոր և ուշադրության արժանի երևույթ է դասախոսների փոխադարձ հրավիրումը միութենական ռեսպուբլիկաների կողմից։ ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը զեկուցումներով հանդես է եկել Սովետական Վրաստանի աշխատավորության առաջ։ Ադրբեջանական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Փ. Ազիզբեկովան «Մեր բարեկամությունը անխախտ է» թեմայով դասախոսություններ է կարդացել Երևանում, Լենինականում և Ազիզբեկովում։ Դիլիջան քաղաքի աշխատավորության առաջ դասախոսություններով հանդես են եկել Վրացական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի գիտական աշխատողները։ Հատկանշական և խրախուսելի է այն, որ դասախոսություններ ու զեկուցումներ կարդալու համար հրավիրվում են ոչ միայն պատմաբաններ, գրականագետներ, կուլտուրայի գործիչներ, այլև արտադրության առաջավորներ։ Կիևի «Կրասնի էքսկավատորշչիկ» գործարանի խառատ, Ուկրաինական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ, Կիևի ժողտնտխորհի արտադրության նորարարների խորհրդի նախագահ Վ. Կ. Սեմինսկին 1963 թվականի հոկտեմբերին «Խառատային հաստոցների բարձրարտադրողական հարմարանքները» թեմայով զեկուցումներ կարդաց Երևանի դազգահաշինական, հիդրոպոմպերի, կոմպրեսորների, ֆրեզերային հաստոցների և այլ գործարաններում։ Նրա զեկուցումներն ուղեկցվում էին անմիջականորեն դազգահների վրա առաջավոր փորձի ցուցադրմամբ։

Անդրկովկասի պարտիական կազմակերպությունների կյանքում կարևոր իրադարձություն է ՍՄԿՊ Կենտկոմի Անդրկովկասյան բյուրոյի ստեղծումը, որը կոչված է կոորդինացնելու Անդրկովկասի պարտիական, սովետական ու տնտեսական օրգանների գործունեությունը կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում, համախմբել ու միաձուլել նրանց ջանքերը, ապահովել ստեղծված տնտեսական ու կուլտուրական կապերի զարգացումը, էլ ավելի բարելավել աշխատավորների դաստիարակությունը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ոգով։ Կարճ ժամանակամիջոցում ՍՄԿՊ Կենտկոմի Անդրկովկասյան բյուրոն արդեն մի շարք արժեքավոր միջոցառումներ է իրականացրել այդ ուղղությամբ։

Ներկա պայմաններում կարևորը ոչ թե ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության սոսկ պրոպագանդումն է, այլ այնպիսի միջոցառումների կազմակերպումը, որոնք գործնականում նպաստեն դրա խորացմանն ու ամրապնդմանը։ Ինչ խոսք, որ մեր երկրում վերացված է նացիոնալիստական գաղափարախոսության սոցիալական հիմքը։ Սակայն այդ գաղափարախոսության մնացուկները դեռևս կենսունակ են և իրենց զգալ են տալիս տեղայնության, իրենց դարն ապրած ազգային բարքերի ու սովորությունների դրսևորումների մեջ, որոնց դեմ անհրաժեշտ է անհաշտ պայքար մղել։

Մեր կարծիքով լավ կլինի պարտիական կոմիտեներին ասրնթեր հասարակական հիմունքներով ստեղծել ինտերնացիոնալ դաստիարակության հանձնաժողովներ, որոնք ընդհանրացնեին ու տարածեին այդ աշխատանքի առավել ներգործուն ձևերն ու մեթոդները, կոորդինացնեին և ուղղություն տային ժողովուրդների բարեկամության ամրապնդման ուղղությամբ տարբեր կազմակերպությունների աշխատանքներին։

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը գաղափարական աշխատանքի կարևոր բնագավառն է և այն միշտ պետք է գտնվի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Մեր իրականությունը, կյանքը, ամեն օր ծնում են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը նպաստող նոր երևույթներ։ Գլխավորն այն է, որ պարտիական և հասարակական կազմակերպությունները հմտորեն օգտագործեն դրանք։

## ՈՒՇԱԳՐԱՎ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

### ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՎ ԳՅՈՒՂԱԿԱՆ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԹԻՎԸ

(Տարեսկզբին, գնահատումը՝ հազ. մարդ)

| Ռեսպուբլիկաներ | Բնակչությունը | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | ընդհանուրը | | քաղաքային | | գյուղական | |
| | 1950 | 1964 | 1950 | 1964 | 1950 | 1964 |
| ՌՍՖՍՌ | 101438 | 124777 | 13749 | 71974 | 57689 | 52803 |
| Ուկրաինական ՍՍՌ | 36588 | 44636 | 12777 | 22495 | 23811 | 22141 |
| Բելոռուսական ՍՍՌ | 7709 | 8454 | 1619 | 3145 | 6098 | 5309 |
| Ուզբեկական ՍՍՌ | 6264 | 9714 | 1934 | 3476 | 4330 | 6238 |
| Ղազախական ՍՍՌ | 6522 | 11568 | 2463 | 5333 | 4059 | 6235 |
| Վրացական ՍՍՌ | 3494 | 4410 | 1241 | 2013 | 2253 | 2397 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 2859 | 4381 | 1252 | 2186 | 1607 | 2195 |
| Լիտվական ՍՍՌ | 2573 | 2895 | 729 | 1245 | 1844 | 1650 |
| Մոլդավական ՍՍՌ | 2290 | 3245 | 388 | 819 | 1902 | 2426 |
| Լատվիական ՍՍՌ | 1944 | 2210 | 881 | 1337 | 1063 | 873 |
| Կիրգիզական ՍՍՌ | 1716 | 2488 | 475 | 935 | 1241 | 1553 |
| Տաջիկական ՍՍՌ | 1509 | 2341 | 391 | 817 | 1118 | 1524 |
| Հայկական ՍՍՌ | 1347 | 2072 | 566 | 1121 | 781 | 951 |
| Թուրքմենական ՍՍՌ | 1197 | 1803 | 433 | 875 | 764 | 928 |
| Էստոնական ՍՍՌ | 1097 | 1259 | 516 | 770 | 581 | 489 |
| Ընդամենը՝ ՍՍՌՄ | 178547 | 226253 | 69414 | 118541 | 109133 | 107712 |

«Вестник статистики» № 4, 1964.

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ

Բ. ՍԱՐԿԻՍՈՎ

Գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պետական կոմիտեի նախագահ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ պարտիան և սովետական պետությունը, լուծելով տնտեսական շինարարության արմատական պրոբլեմները, ավելի ու ավելի մեծ ուշադրություն են նվիրում գիտության ու տեխնիկայի հետագա բուռն ծաղկմանը։ Պարտիայի XXII համագումարի որոշումներում ու պարտիայի նոր ծրագրում, համագումարից հետո տեղի ունեցած Կենտկոմի պլենումների որոշումներում կարևոր տեղ է գրավում հայրենական գիտության զարգացումն ուժեղացնելու խնդիրը, որը մեծ դեր է խաղալու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

Սովետական գիտության և, հատկապես, նրա գլխավոր ուղղությունների հաջող զարգացումն անմիջականորեն կապված է նրա ճիշտ կազմակերպման ու բանական պլանավորման հետ։

Սովետական հասարակության մեջ գիտությունն ավելի ու ավելի է դառնում անմիջական արտադրողական ուժ։ Ահա թե ինչու գիտության ու տեխնիկայի զարգացման պլանավորումը դարձել է ժողովրդական տնտեսության պլանավորման անկապտելի և բաղկացուցիչ մասը, սովետական պետության տնտեսական-կազմակերպական կարևորագույն ֆունկցիան։ Այդ պլանավորումը պետք է ապահովի գիտության և արտադրության, տեսության ու պրակտիկայի զարգացման միասնական պրոցեսի ստեղծումը։ Սոցիալիստական էկոնոմիկայի պլանային ղեկավարումը օրգանապես կապվում է գիտահետազոտական աշխատանքների պլանային ղեկավարման հետ, արտադրության մեջ նոր տեխնիկան արմատավորելու հետ։

Գիտական հետազոտությունների պլանավորման մեջ ուղենիշ պետք է ծառայի առաջնության կոնցեպցիան, այսինքն՝ առաջնային զարգացումը գիտության այն հեռանկարային ուղղությունների, որոնք ապահովում են արտադրության պրոգրեսիվ ճյուղերի արագ աճը, ստեղծում նյութական արտադրության օպտիմալ ստրուկտուրա, հնարավորություն են տալիս որակական արմատական վերակառուցումներ կատարելու արտադրության առաջատար ոլորտներում և լուծելու ժողովրդական տնտեսության շահութաբերության



բարձրացնելու պրոբլեմը, դրանով իսկ նյութական նախադրյալներ ստեղծելու ժողովրդի կենսամակարդակի առավել բարձրացման համար։

Գիտահետազոտական աշխատանքների պլանավորման իրագործումը շատ դժվարին ու բարդ խնդիր է։ Բարդությունը պայմանավորված է, մի կողմից՝ գիտական պլանավորման առանձնահատկությամբ, իսկ մյուս կողմից՝ գիտության ու տեխնիկայի զարգացումը ղեկավարելու գործում երկար տարիների ընթացքում առաջացած սկզբունքային թերություններով։

Հայտնի է, որ մինչև վերջերս մենք չունեինք պետական պլանային հիմունքներով գիտական հետազոտությունները ղեկավարելու պրակտիկա։ Գիտության և տեխնիկայի բազմաթիվ ու բարդ հարցեր քննվում ու լուծվում էին իրարից անջատ, տարբեր գերատեսչություններում։ Չկար երկրի, միութենական ռեսպուբլիկաների տնտեսական զարգացման ընդհանուր կենսական պրոբլեմների հետ կապակցված գիտության ու տեխնիկայի կենտրոնացված ղեկավարություն և ամբողջական պլանավորում։ Դրա հետևանքով գիտահետազոտական աշխատանքների կազմակերպման գործում ծնունդ էին առնում ոչ ճիշտ տենդենցներ, «յուրօրինակ» տրադիցիաներ ու սովորույթներ, մի շարք դեպքերում բացակայում էր վերահսկողությունը։ Այդ ամենը թանկ էր նստում պետությանը, հակադրվում էր գիտության ու տեխնիկայի զարգացման շահերին։

Երկրի տնտեսական զարգացումն առաջ քաշեց գիտության ու տեխնիկայի պետական ղեկավարության ներդաշնակ սիստեմ ստեղծելու հարցը։ Պարտիան ու կառավարությունը այդ խնդիրը դրին ՍՍՌՄ գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման նորաստեղծ պետական կոմիտեի և միութենական ռեսպուբլիկաների կոորդինացման պետական կոմիտեների վրա։

Այժմ, ՍՍՌՄ գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեում և միութենական ռեսպուբլիկաների կոորդինացման կոմիտեներում կենտրոնացված են գիտության ու տեխնիկայի կոորդինացման բոլոր հիմնական ասպեկտները— կարևորագույն գիտահետազոտական աշխատանքների և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման, ֆինանսավորման և նյութատեխնիկական ապահովման, գիտության բնագավառում կապիտալ ներդրումների, գիտական հաստատությունների ցանցի ընդլայնման, գիտական կադրերի պատրաստման և օգտագործման ընդհանուր պլանավորումը։ Այդ որոշակի հստակություն մտցրեց գիտական հետազոտությունների կազմակերպման գործում, երևան եկան պետական պլանավորման հիմունքներով ամբողջ երկրի և յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայի մասշտաբով գիտության ու տեխնիկայի պլանավորման պրոբլեմները նոր ձևով լուծելու ուրվագծերը։

ՍՍՌՄ և միութենական ռեսպուբլիկաների ժողովրդատնտեսական պլաններում գիտության ու տեխնիկայի գծով հանդես եկան նոր բաժիններ։ Պետական օրգանները հնարավորություն ստացան ամբողջական պատկերացում ունենալու գիտության ու տեխնիկայի զարգացման վիճակի մասին, ուշադրությունը կենտրոնացնելու գիտական հետազոտությունների և գիտատեխնիկական պրոգրեսի հիմնական ու վճռական ուղղությունների վրա և այդ գործի նկատմամբ սահմանելու պետական ընդհանուր վերահսկողություն։

Գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեների օգտակարությունն անվիճելի է։ Գիտական հետազոտությունների

պլանավորումն այժմ այնպիսի հունի մեջ է դրված, որը թույլ է տալիս վերացնելու մի շարք խոշոր թերություններ: Բայց անվիճելի է և այն, որ գիտության ու տեխնիկայի զարգացման պլանները մշակելու և կազմելու սկզբունքներն ու մեթոդները կարիք ունեն հետագա կատարելագործման: Տրված են առայժմ հիմնական ուրվագծերը, բարձրացված է հիմքը, կատարված է գլխավոր աշխատանքը, հարկավոր է այն ավելի լավ մշակել, հղկել հիմնավորապես, հաշվի առնելով գիտության պլանավորման յուրահատկությունը:

Գիտության ներկա պլանավորման հիմնական թերություններից մեկը, մեր կարծիքով, այն է, որ որոշ չափով, մեխանիկորեն գիտության բնագավառ են փոխադրվել արդյունաբերության պլանավորման սկզբունքներն ու մեթոդիկան, որտեղ քանակական գործոնը կարևոր դեր է խաղում: Դժբախտաբար քանակական գործոնին գրեթե նույնպիսի նշանակություն է նվիրվում նաև գիտության պլանավորման և հաշվետվության գործում, որտեղ այն չպետք է վճռականը լինի: Այժմ գիտական հաստատությունների գործունեությունը հիմնականում գնահատվում է՝ «այսքան պլանավորված է, այսքան կատարված է» սկզբունքով: Իսկ թե դրանք որքա՞ն են արտացոլում երկրի զարգացման համար տեսական և գիտատեխնիկական խոշոր նշանակություն ունեցող պրոբլեմները, այս հարցի պատասխանը կորչում է պլանավորման թեմաների վիթխարի քանակի մեջ:

Հայկական ՍՍՌ-ում 1958 թվականից մինչև 1963 թվականը պլանով մշակվել է մոտ 7000 թեմա, այդ թվում ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիայի գծով՝ 2300 թեմա: Դրանց մոտավորապես 40—50 տոկոսը մտցվում է գիտության ու տեխնիկայի պետական պլանների մեջ: Պարզ է, որ թեմաների այսպիսի վիթխարի քանակի դեպքում, երբ դրանցից շատերը մանր են, շատ դժվար է հետևել գիտական հետազոտությունների գլխավոր ու վճռական

# Աճում ու ամրապնդվում են ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՇԱՐՔԵՐԸ

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

● Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և նրանից անմիջապես հետո աշխարհում գործում էին համեմատաբար աննշան թվով մարքս-լենինյան պարտիաներ: Կոմինտերնի առաջին կոնգրեսում, որը կայացավ 1919 թվականին, ներկայացված էին 30 երկրների կոմունիստական պարտիաներ և ձախ սոցիալիստական կազմակերպություններ: Սոցիալիստական համագործակցության ներկայիս երկրների կոմպարտիաներից բացի, այն ժամանակ ամբողջ Եվրոպայում գործում էին ընդամենը վեց մարքս-լենինյան ջոկատներ (Ավստրիայում, Գերմանիայում, Հունաստանում, Նիդեռլանդներում, Ֆինլանդիայում և Շվեդիայում), իսկ ամերիկյան մայրցամաքում՝ միայն Արգենտինայի կոմպարտիան: Ասիայում, Աֆրիկայում և Օվկիանիայում չկային կոմունիստական պարտիաներ: Իսկ այժմ մարքս-լենինյան պարտիաներ կան երկրագնդի բոլոր մայրցամաքներում և նրանց ընդհանուր թիվը մոտ 90 է:

● Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեին կապիտալիստական աշխարհում գործում էին 55 կոմունիստական ու բանվորական պարտիաներ: Ներկայումս այնտեղ կան 74 մարքս-լենինյան ջոկատներ, որոնցից 21-ը Եվրոպայում, 24-ը՝ ամերիկյան մայրցամաքում, 19-ը՝ Ասիայի երկրներում, 8-ը՝ Աֆրիկայում և 2-ը՝ Օվկիանիայում:

● Մեծ հոկտեմբերի հաղթանակից հետո սկսվեց կոմունիստական և բանվորական պարտիաների թվական կազմի մեծ աճ: Եթե 1917 թվականին նրանք իրենց շարքերում համախմբում էին 400 հազար մարդ, ապա 1939 թվա-



տեղծումներին, նրանց կատարման որակին: Այստեղից էլ սկզբնավորվում են գիտության բնագավառում պլանավորման և հաշվետվության քանակական չափանիշները: Ըստ որում, պետք է նշել, որ տարեկան պլանների կազմումը և վերջնական ձևավորումը, որպես կանոն, երկար ամիսներ է տևում, որը կլանում է պետական կոմիտեի, գիտական հաստատությունների ժամանակի զգալի մասը:

Դրա հիմնական պատճառն այն է, որ գիտական հաստատությունների գործունեությունը մինչև այժմ խիստ դանդաղ է վերակառուցվում գիտության և ժողովրդական տնտեսության համար կենսական նշանակություն ունեցող գիտության ու տեխնիկայի առավել հեռանկարային ճյուղերը արագ զարգացնելու, տեսական, կոմպլեքսային և միջճյուղային գիտատեխնիկական մեծ պրոբլեմներ լուծելու ուղղությամբ:

Գաղտնիք չէ, որ շատ ինստիտուտներ այսօր էլ, ինչպես շատ տարիներ առաջ, ունեն խայտաբղետ թեմատիկա: Հաճախ մի գիտական հաստատության ամեն մի սեկտոր կամ բաժին մյուսներից անջատ, զբաղված է որոշ ինքնուրույն պրոբլեմի կամ մի քանի թեմայի մշակմամբ: Այլ կերպ ասած, յուրաքանչյուր ինստիտուտում ստիհանաբար գոյացել են մի քանի միկրոինստիտուտներ: Քանի որ մի շարք գիտական հաստատություններ չունեն ընդհանուր պրոբլեմային ուղղություն, ի վիճակի չեն պետական պլանի մեջ մտցնելու համար ներկայացնել կոմպլեքսային և միջճյուղային գիտատեխնիկական պրոբլեմներ: Բերենք մի քանի տվյալներ:

1958 թվականին ռեսպուբլիկայում կային 2253 գիտական աշխատողներ, որոնք մշակում էին 788 թեմա: Ամեն մի թեմայի մշակմամբ զբաղված էին միջին հաշվով երեք գիտական աշխատող: Գիտական ուժերի և միջոցների խիստ ցրման այս պայմաններում խոսք չէր կարող լինել պրոբլեմատիկ հե-

կանին արդեն համախմբում էին 4 միլիոն 200 հազար, 1945 թվականին՝ 20 միլիոն, 1957 թվականին՝ 33 միլիոն, 1960 թվականին՝ 36 միլիոն, 1961 թվականին՝ 40 միլիոն, 1962 թվականին՝ 42 միլիոն 600 հազար, իսկ այժմ՝ ավելի քան 43 միլիոն անդամ և թեկնածու:

● Համաշխարհային կոմունիստական շարժման ավանգարդում միշտ ընթացել և այժմ էլ ընթանում են Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների մարքս-լենինյան պարտիաները: Նրանք համախմբում են ավելի քան 37 միլիոն մարդ: Եվրոպայի սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաներում ընդգրկված են 18 միլիոն մարդ, այդ թվում 10 միլիոնը՝ ՍՄԿՊ-ում:

● Վերջին քառորդ դարում ոչ սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների քանակական կազմը հետևյալ պատկերն ունի: 1928 թվականին նրանց շարքերում կային միայն 450 հազար անդամ: 1939 թվականին այդ պարտիաների թվական կազմը հասավ 1 միլիոն 200 հազարի, 1957 թվականին՝ 4 միլիոն 600 հազարի, իսկ այժմ նրանք համախմբում են ավելի քան 5 միլիոն պարտանդամ:

● Կոմունիստական շարժման ընդլայնման բնորոշ ցուցանիշը կոմունիստների բաշխումն է ըստ կապիտալիստական աշխարհի շրջանների և գոտիների: Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը կապիտալիստական երկրների մարքս-լենինյան պարտիաների կոմունիստների հիմնական մասը գտնվում էր գլխավորապես Եվրոպայի զարգացած շրջաններում: Եթե 1939 թվականին Եվրոպայում (չհաշված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պետությունները) կային 500 հազար, իսկ Ասիայում՝ միայն 20 հազար կոմունիստներ, ապա այժմ Եվրոպայում և Ասիայում գործում են իրենց թվով գրեթե հավասար կոմունիստական ավանգարդներ, որոնք համապատասխանորեն համախմբում են 2 մի-

պլանը, վերջին հաշվով, կազմվում է միութենական և ռեսպուբլիկական նշա-
նակություն ունեցող թեմաներից, իսկ մնացած սակավարժեք, մեծ հեռանկար
չունեցող թեմաները գիտահետազոտական հաստատությունների ղեկավարները
մտցնում են հաստատության ներքին պլանի մեջ։ Սակայն այդ բոլոր թեմա-
ների ճակատագիրը միանման է։ Գիտահետազոտական աշխատանքների կոոր-
դինացման Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պետական կոմիտեն, հա-
մաձայն գոյություն ունեցող կարգի, ֆինանսավորումը որոշում է ըստ մինիս-
տրությունների, գերատեսչությունների և գիտությունների ակադեմիայի, որոնք
ֆինանսական միջոցները պետք է բաշխեն ըստ գիտահետազոտական հաստա-
տությունների։ Բայց այդ բաշխումը հաճախ կատարվում է մեխանիկորեն,
ըստ աշխատողների թվի և աճման տոկոսի։ Ստանալով պետական պլանով
հատկացված նյութական և դրամական միջոցների իրենց բաժինը, շատ ղե-
կավարներ բաշխումը նույնպես կատարում են թվաբանական եղանակով,
ըստ աշխատողների թվի, առանց հաշվի առնելու գիտական աշխատանքի կա-
րևորությունը։
Նման պրակտիկայի բացասական ազդեցությունն ակներև է։
Ամենից առաջ, ինստիտուտների գործունեության վերակառուցումն ըն-
թանում է խիստ դանդաղ, այսպես կոչված՝ էվոլյուցիոն ճանապարհով և, երկ-
րորդ, շարունակվում է պետական միջոցների և գիտական աշխատողների ջան-
քերի փոշիացումը։ Բավական է նշել, որ վերջին վեց տարիներին մեր ռես-
պուբլիկայի գիտության զարգացման համար հատկացված 120 միլիոն ռուբլու
մոտավորապես կեսը ծախսվել է այնպիսի թեմաների վրա, որոնք պետական
պլանի մեջ չեն մտել։ Եվ այդ այն ժամանակ, երբ ժողովրդատնտեսական և
գիտական մեծ նշանակություն ունեցող հետազոտությունների համար պակա-
սում են որակյալ կադրեր, գիտական լաբորատորիաներից շատերը հագեցած
չեն ժամանակակից սարքավորումներով։
Գիտության պլանավորման վրա դրական ազդեցություն կարող է ունենալ
գիտական հաստատությունների սերտ կապը արդյունաբերության և ժողովր-
դական տնտեսության մյուս ճյուղերի հետ։ Գիտական թեմատիկայի ընտրու-
թյունը պետք է ընթանա երկու՝ փոխադարձաբար միմյանց լրացնող, հանդի-
պակաց ուղղություններով— բուն գիտական հաստատությունների ներսում
և արտադրական ձեռնարկությունների պատվերով։ Սակայն հետազոտական
աշխատանքների պլանավորման այդպիսի պրակտիկան դեռևս իր պատշաճ
տեղը չի գրավել, որի հետևանքով էլ մի շարք դեպքերում գիտական աշխա-
տանքն ապարդյուն է դառնում։ Այսպես, օրինակ, ժողովրդական տնտեսու-
թյան ճյուղերի հետ կապի բացակայությունը երբեմն հանգեցնում է նրան, որ
մի քանի տարի շարունակ, ծախսելով ֆինանսական և նյութատեխնիկական ոչ
քիչ միջոցներ, գիտահետազոտական հաստատությունները գիտական հետազո-
տության արդյունքները կիրառելու համար փնտրում են արտադրական օբյեկտ-
ներ, որը կապված է մեծ դժվարությունների ու ժամանակի վատնման հետ։
Երբեմն գիտական արդյունքների արտադրական փորձարկումներն այնքան են
ձգձգվում, որ կորցնում են իրենց այժմեականությունը։



***

ԳԻՏՈՒԹՅԱՆ պլանավորման սիստեմում անհրաժեշտ է կարգավորել
նաև գիտական հետազոտությունները արտադրության մեջ արմա-
տավորելու հարցերը։ Բանն այն է, որ տարեկան պլաններում
նախատեսվում են մի ամբողջ շարք գիտահետազոտական աշխա-
տանքների ավարտման ժամկետները, մինչդեռ պլանի կատարման արդյունք-
ների վերաբերյալ հաշվետվություններում բացակայում են դրանց ներդրման
վերաբերյալ անհրաժեշտ տվյալները։ Հետևաբար, ստացվում է այնպես, որ
ինստիտուտների շրջանակներում կատարված աշխատանքները հանվում են
պլաններից, դարսվում ինստիտուտների դարակներում, իսկ դրանց վրա
ծախսված պետական միջոցները մնում են անվերադարձ։
Մի քանի խոսք գիտահետազոտական հաստատությունների ֆինանսավոր-
ման մասին։ Ֆինանսավորումը պետք է օգտագործվի, մի կողմից՝ որպես գի-
տության զարգացմանն ուղղություն տալու, մյուս կողմից՝ գիտական հաստա-
տությունները կադրերով և նյութական բազայով ապահովելու միջոց։ Առայժմ
գերակշռում է երկրորդը։ Գիտական հաստատությունների ֆինանսավորման
հիմքում դրվում է ոչ թե թեմաների նախահաշվային արժեքը, այլ աշխատող-
ների թվի և նախորդ տարվա համեմատությամբ աշխատավարձի ֆոնդի աճ-
ման տխրահռչակ տոկոսները, անկախ այն բանից, թե ընթացիկ տարում ինս-
տիտուտը կարևոր աշխատանքներ կկատարի՞, թե ոչ։ Համախառն ֆինանսա-
վորման այսպիսի կարգը հանգեցնում է նրան, որ կարևոր հետազոտություն-
ներով զբաղվող ինստիտուտները տուժում են։ Անհրաժեշտ է վերացնել ֆինան-
սական հավասարեցումը։ Գիտական հաստատությունների ֆինանսավորումն
առավելագույն չափով պետք է նպաստի գիտության հեռանկարային ճյուղերի
և ուղղությունների զարգացմանը։
Վերևում ասածով, իհարկե, չեն սպառվում գիտության պլանավորման
հետ կապված պրոբլեմները։ Բայց պարզ է, որ պետության շահերը, հետևա-
բար նաև գիտության ու տեխնիկայի զարգացման շահերը, պահանջում են է՛լ
ավելի բարելավել գիտության պլանավորումը, առավելագույն չափով իրա-
գործել խոշոր պրոբլեմային պլանավորում՝ ռացիոնալ հարաբերակցություն
սահմանել տեսական, կոմպլեքսային և միջճյուղային գիտատեխնիկական
պրոբլեմների հետազոտական աշխատանքների միջև։ Գիտության ու տեխնի-
կայի զարգացման կենտրոնացված ղեկավարությունը զուգորդել գիտական
հաստատությունների, գիտնականների և մասնագետների ստեղծագործական
նախաձեռնության հետ։
Գիտության ճիշտ պլանավորումն ու ֆինանսավորումը լայն հնարավորու-
թյուններ կստեղծի այն գիտական հաստատությունների, գիտնականների և
գիտական աշխատողների համար, որոնք զբաղվում են տեսական և գիտա-
տեխնիկական կարևոր պրոբլեմներով և, միաժամանակ, կփակի սակավ ակ-
տուալ, մանր թեմաների ճանապարհը։
Ռեսպուբլիկայի մինիստրությունների ու գերատեսչությունների, գիտու-
թյունների ակադեմիայի խնդիրն է՝ ելնելով գիտության ու տեխնիկայի առա-
վել հեռանկարային ճյուղերի զարգացման մասին պարտիայի ու կառավա-
րության ցուցումներից, որոշել և ճշգրտել յուրաքանչյուր գիտական հաստա-

տության պրոֆիլը և նրանց ղեկավարների ուշադրությունը սևեռել պրոբլեմա-
տիկ թեմաների վրա։

Այնպես պետք է կազմակերպվի գիտության պլանավորումը, որ ամեն մի
գիտահետազոտական հաստատություն ունենա ճշգրտված թեմատիկ պլան, հե-
տևյալ բաժիններով՝ տեսական, կոմպլեքսային, միջճյուղային և ճյուղային,
գիտատեխնիկական խոշոր պրոբլեմների բաժին, որոնց վրա պետք է աշխատի
ինստիտուտի ամբողջ կոլեկտիվը՝ ըստ ինստիտուտի ճշգրտված պրոֆիլի, ա-
վարտված հետազոտությունների բաժին, որոնք պետք է ներդրվեն ժողովըր-
դական տնտեսության մեջ, և հետախուզական աշխատանքների բաժին։

Գիտական հետազոտությունների պլանավորման լիակատար անընդհատու-
թյունն ապահովելու նպատակով գիտահետազոտական աշխատանքների կոոր-
դինացման Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պետական կոմիտեն միջո-
ցառումներ է մշակում ինստիտուտներում, լաբորատորիաներում ավարտված
գիտահետազոտական աշխատանքները ժողովրդական տնտեսության մեջ ներ-
դնելու տարեկան պլաններ կազմելու ուղղությամբ։ Ընդ որում այդ պլանը
պետք է նախատեսի գիտահետազոտական աշխատանքների բոլոր փուլերը՝
սկսած ինստիտուտի լաբորատոր հետազոտություններից և արդյունաբերական
պրոցեսների գիտական հիմունքների ստեղծումից, մինչև կիսաարդյունաբե-
րական փորձարկումները և ելակետային տեխնիկա-տնտեսական բոլոր տվյալ-
ների ու հիմնավորումների մշակումը, նշելով ժամկետները, ինչպես նաև օբ-
յեկտը, որտեղ կիրառվելու է ավարտված աշխատանքը, այդ գործի համար
պատասխանատու են գիտական հաստատությունը և գերատեսչությունը։

Քանի որ բոլոր պրոբլեմային մշակումները (իսկ դրանց քանակը մի քա-
նի անգամ կկրճատվի) կմտցվեն պետական պլանի մեջ, ուստի, գոյություն
չեն ունենա ներինստիտուտային թեմաներ, հնարավորություն կստեղծվի գի-
տական հաստատությունների ֆինանսավորումը որոշելու պետական պլանի
մեջ մտցված գիտական պրոբլեմների և խոշոր մշակումների նախահաշվային
արժեքին համապատասխան։

Անհրաժեշտ է լավ կշռադատել և ռացիոնալ ձևով լուծել հետախուզական
աշխատանքների՝ ինստիտուտի գործունեության այդ կարևոր տեղամասի,
ֆինանսավորման հարցը։ Թվում է, լավ կլինի հետախուզական աշխատանք-
ների ֆինանսավորման ծավալը որոշել պետական պլանի մեջ մտցված գիտա-
կան հետազոտությունների նախահաշվային արժեքի ընդհանուր գումարի քիչ թե
շատ զգալի տոկոսի չափով։ Գործնականորեն այդ բանը կարող է իրագործվել
հետևյալ ձևով։ Կոորդինացման պետական կոմիտեն, ելնելով պլանային
թեմաների ֆինանսավորման ծավալից, կորոշի նաև հետախուզական աշխա-
տանքների ֆինանսավորման ծավալն ամբողջությամբ վերցրած, ըստ մի-
նիստրությունների, գերատեսչությունների և գիտությունների ակադեմիայի,
իսկ նրանք ինստիտուտներին կհատկացնեն այդ բանի համար անհրաժեշտ մի-
ջոցներ։

Այստեղ շատ կարևոր է ֆինանսական կարգապահության հարցը։ Յուրա-
քանչյուր հետազոտության ֆինանսավորումն ու հաշվետվությունը պետք է
իրագործվեն նախահաշվային արժեքին խիստ համապատասխան, իսկ հետա-
խուզական աշխատանքների ֆինանսավորումը պետք է կատարվի ինստիտու-
տի դիրեկցիայի հայեցողությամբ։ Հավանական է, որ այստեղ կատարվեն
լրացուցիչ ծախսեր, բայց դրանք անհամեմատ ավելի քիչ կլինեն այն հսկա-



յական միջոցներից, որոնք այժմ աննպատակ հատկացվում են անարժեք աշ-
խատանքներին։

Անհրաժեշտ է ընդգծել նաև պլանային կարգապահության հարցը։ Գաղտ-
նիք չէ, որ գիտական կազմակերպությունների ու հաստատությունների որոշ
ղեկավարներ ու գիտնականներ, գտնվելով գիտական հետազոտությունների
կազմակերպման բազմամյա տրադիցիայի ազդեցության տակ, երբ չկար պե-
տական անհրաժեշտ վերահսկողություն, ներկայումս գիտության պետական
պլանավորման գործին նայում են մատների արանքով, իսկ երբեմն էլ հանդես
են բերում գիտության պլանավորումը բացարձակապես ժխտելու տրամադրու-
թյուններ։ Հարկ չկա ասելու, որ նման տրամադրությունները չեն կարող օգնել
գիտության պլանավորման, գիտական հաստատությունների գործունեության
բարելավմանը։

Գիտության ու տեխնիկայի պլանավորման բազմաթիվ հարցեր զգալի չա-
փով պարզված են. պրակտիկան մեզ անհրաժեշտ նյութեր է տալիս պլանա-
վորումն ավելի կատարելագործելու։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պետական կոմիտեի առաջ խնդիր
է դրված՝ առաջիկա տարիների և ավելի երկար ժամանակամիջոցի համար
որոշել գիտական կարևորագույն հետազոտությունների հիմնական ուղղու-
թյունները, նպատակ ունենալով ապահովել գիտության ու տեխնիկայի առավել
հեռանկարային ճյուղերի առաջընթաց զարգացումը ռեսպուբլիկայում, զար-
գացնել նոր հայտնագործությունների և գյուտերի հետ կապված գիտական
հետազոտությունները։ Այդ նպատակով պետական կոմիտեին առընթեր
ստեղծվում են միջգերատեսչական գիտական խորհուրդներ՝ խոշոր գիտնա-
կանների, Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության առաջատար մասնա-
գետների որակյալ կազմով։

Այդ գիտական խորհուրդների գլխավոր խնդիրներից է՝ քննարկել և պե-
տական կոմիտեի կոլեգիայի հաստատմանը ներկայացնել գիտական մշակում-
ների և հետախուզական աշխատանքների հիմնական ուղղությունների, ինչպես
նաև ավարտված գիտական հետազոտություններն արտադրության մեջ կիրա-
ռելու վերաբերյալ մինիստրությունների, գերատեսչությունների և գիտություն-
ների ակադեմիայի առաջարկությունները։

Ժողովրդատնտեսական և տեսական մեծ նշանակություն ունեցող գիտա-
կան նորանոր ուղղություններ որոնելու գործում մինիստրությունների, գերա-
տեսչությունների, գիտությունների ակադեմիայի, գիտական հաստատություն-
ների նախաձեռնությանն ընթացք տալու, տարվա մեջ հետազոտական նոր
աշխատանքներ կազմակերպելու, դրանց արդյունքներն արտադրության մեջ
ժամանակին ներդնելու համար նպատակահարմար կլիներ Կոորդինացիայի
պետական կոմիտեի տրամադրության տակ ունենալ հատկացումների անհրա-
ժեշտ ռեզերվ, որը հնարավորություն կտար գիտության ու տեխնիկայի
կենտրոնացված ղեկավարությունը զուգորդել գիտական աշխատողների, մաս-
նավորապես առաջատար թեորետիկների ու պրակտիկների ստեղծագործական
նախաձեռնության հետ։

Այստեղ անհրաժեշտ է նշել, որ նոր տեխնիկայի կիրառման պլանները
մեծ են ու ծանրաշարժ և ամենևին էլ ոչ նպատակասլաց։ Տվյալ ոլորտում
էլ երևան են գալիս պլանավորման մի քանի թերություններ։

Ինչպես հայտնի է, նոր տեխնիկայի կիրառման պետական պլանը կոչ-

վում է կարևորագույն միջոցառումների պլան: Բայց «կարևորագույն» հասկացողությունը կոնկրետացված չէ, որի հետևանքով էլ պետական պլանի մեջ մտցվում են բազմաթիվ միջոցառումներ, որոնք, իհարկե, հարկավոր են, բայց չեն համապատասխանում այդ նշանակմանը. որպես օրինակ կարելի է բերել այնպիսի միջոցառումներ, ինչպես՝ կենտրոնացված փոխադրումների կիրառումը, կոնտեյներներով փոխադրումների արմատավորումը, անտառահատման գործում սայլը տրակտորով փոխարինելը և այլն: Այսպես կարելի է ուզած չափով մեծացնել պլանները:

Անհրաժեշտ է մշակել տնտեսական արդյունավետության և աշխատանքի պլանների բարելավման, արտադրանքի որակի բարձրացման որոշակի համակարգ, որը թույլ տար պետական պլանի մեջ մտցնել գիտատեխնիկական պրոգրեսն արտացոլող միջոցառումներ: Այդ դեպքում պլանի ծավալը զգալիորեն կփոքրանա, սակայն որակը կբարելավվի:

Նոր տեխնիկայի կիրառումը պլանավորելու պրակտիկան թերի է նաև այն առումով, որ նրանում չի արտացոլված կապը՝ արդյունաբերական արտադրանքի թողարկման և արտադրության մյուս ցուցանիշների (աշխատանքի արտադրողականության բարձրացում, արտադրանքի ինքնարժեքի իջեցում և այլն) պլանավորման հետ: Այդ տեղի է ունենում այն պատճառով, որ երկու պլաններն էլ տարվա համար կազմվում են զուգահեռաբար: Պլանային օրգանները հաջորդ տարվա պլանները կազմում են, առանց հաշվի առնելու նոր տեխնիկան կիրառելու պլանի կատարումը, որը հաշվետվությունից հետո նետվում է արխիվ: Այսպիսով, նոր տեխնիկայի պլանի պետական բնույթը որոշ չափով կորչում է: Տարեկան պլան կազմելիս պետպլանը պետք է հաշվի առնի նախորդ տարում նոր տեխնիկայի կիրառման պլանի կատարման ցուցանիշները: Այլ առավելությունների հետ միասին, դա կբարձրացնի արտադրության մեջ նոր տեխնիկան կիրառելու պլանը կազմողների պատասխանատվությունը:

Գիտական հետազոտական աշխատանքների կոորդինացման Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պետական կոմիտեի խնդիրն է՝ գիտությունների ակադեմիայի, մինիստրությունների, գերատեսչությունների, գիտական կազմակերպությունների և ձեռնարկությունների հետ համատեղ մշակել և իրագործել գիտության ու տեխնիկայի պլանավորումն առավել բարելավելու և կատարելագործելու, գիտության նվաճումները ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու միջոցառումներ, դրանով իսկ նպաստելու Սովետական Միության կոմունիստական պարտիայի տնտեսական ծրագրի հաջող իրականացմանը:



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐԻՑ ՄԵԿԸ

— Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների մեքենայական պարկի աճը:

— Մեքենատրակտորային պարկի կարողության օգտագործումը:

— Վերանորոգման գործի կազմակերպումը:

—Մեխանիզատորական կադրերի պատրաստումը:

Մեր պարտիան կուրս է վերցրել ինտենսիվորեն վարելու գյուղատնտեսությունը, որը նրա վերելքի հիմնական ուղղությունն է և արտադրողական ուժերի զարգացման գլխավոր ճանապարհը: Այն հնարավորություն կտա առաջիկա տարիներին զգալիորեն ավելացնելու բուսաբուծական և անասնաբուծական մթերքների արտադրությունը և լիովին ապահովելու սննդի ու թեթև արդյունաբերության և բնակչության պահանջմունքները:

Գյուղատնտեսության ինտենսիվացման համար քիմիացման և ոռոգվող ցանքատարածությունների ընդարձակման հետ անհրաժեշտ է ապահովել նաև գյուղատնտեսական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը: Այդ երեք միջոցառումների իրականացումն է միայն հնարավորություն տալիս բարձրացնելու հանրային դաշտերի բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը, իջեցնելու գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքը:

Վերջին ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայում զգալի գործ է կատարված գյուղատնտեսությունը տեխնիկապես վերազինելու, կոլտնտեսություններն ու սովխոզները ժամանակակից առաջնակարգ մեքենաներով ու նորագույն գործիքներով ապահովելու ուղղությամբ:

Ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կարևորագույն մեքենաների պարկի հզորության աճը 1954—1963 տարում:

| Տարեթվեր | Մեքենաների անվանումը | | | | |
|---|---|---|---|---|---|
| | տրակտորներ (ֆիզիկական միավոր) | հացահատիկային կոմբայններ | բեռնատար ավտոմեքենաներ | կուլտիվատորներ | շարքացաններ |
| 1954 թ. | 2744 | 711 | 2114 | 1649 | 1776 |
| 1963 թ. | 5654 | 1384 | 5701 | 2164 | 2436 |

Ընդհանուր առմամբ վերջին տասը տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենատրակտորային պարկի կարողությունը կրկնապատկվել է։ Այժմ գյուղատնտեսությունը արդյունաբերությունից ստանում է այնպիսի մեքենաներ, որոնք հնարավորություն են տալիս կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու եգիպտացորենի, տեխնիկական կուլտուրաների՝ բամբակենու, շաքարի ճակնդեղի և այլ կուլտուրաների մշակությունը, որը չափազանց ծանր է ու աշխատատար։

Գյուղատնտեսության տեխնիկապես հագեցումը հնարավորություն տվեց զգալիորեն բարձրացնելու գյուղատնտեսական արտադրության մեքենայացման աստիճանը։ Վերջին տասը տարիների ընթացքում վարի մեքենայացման աստիճանը բարձրացել է 18, հացահատիկի ցանքինը՝ 37, հացահատիկի բերքահավաքինը՝ 25 տոկոսով, որի շնորհիվ իջել է արտադրվող գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։

Վերջին յոթ տարվա ընթացքում արտադրության վրա մարդկային աշխատանքի ծախսումները ռեսպուբլիկայի մասշտաբով իջել են շաքարի ճակնդեղի և հացահատիկի գծով՝ 40, եգիպտացորենի հատիկինը՝ 27, կարտոֆիլինը՝ 25 տոկոսով։ Աշխատանքի ծախսումները զգալիորեն պակասել են նաև անասնապահական մթերքների արտադրության բնագավառում՝ կաթի գծով 14, մսի գծով՝ 11 տոկոսով։

Գյուղատնտեսական տեխնիկայում կատարվել են որակական փոփոխություններ, որոնք հնարավորություն են տալիս առանձին կուլտուրաների (եգիպտացորենի, բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և այլն) մշակման մասնակի մեքենայացումից անցնելու կոմպլեքսային մեքենայացման։

Ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսությունների և սովխոզների առանձին առաջավոր մեխանիզատորներ, ճիշտ օգտագործելով մեքենաների կոմպլեքսը, հասել են զգալի արդյունքների։ Այսպես, օրինակ՝ Անիի արտադրական վարչության Մայիսյան գյուղի կոլտնտեսության մեխանիզատոր Հմայակ Մովսիսյանի բրիգադան 1963 թվականին ստանձնեց 40 հեկտար եգիպտացորենի կոմպլեքսային մշակությունը։ Բայց, չնայած անբարենպաստ պայմաններին և կարկտահարությանը, յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 265 ցենտներ կանաչ մասսա, ցենտների վրա ծախսելով 2 ժամ 40 րոպե։

Արտաշատի արտադրական վարչության Քաղցրաշենի կոլտնտեսությունում կազմակերպված եգիպտացորենի մշակման կոմպլեքսային մեքենայացված օղակը՝ տրակտորիստներ Սահակ Սահակյանի և Գեղամ Գյուլամիրյանի մասնակցությամբ մշակեցին 14 հեկտար եգիպտացորեն և յուրաքանչյուր հեկտարից ստացան 430 ցենտներ կանաչ զանգված, 1962 թվականի 280 ցենտների դիմաց (երբ մշակումը կատարվում էր ոչ կոմպլեքսային ձևով)։ Այստեղ մեկ ցենտներ կանաչ մասսայի ինքնարժեքը կազմել է 1 ռուբլի 31 կոպեկ՝ 1962 թվականի 2 ռուբլի 72 կոպեկի փոխարեն, մեկ ցենտներ կանաչ մասսայի վրա ծախսվել է 0,19 մարդ-օր՝ 1962 թվականի 0,3 մարդ-օրվա փոխարեն։

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կազմակերպվել են 64 կոմպլեքսային օղակներ, որոնց ամրացված են անհրաժեշտ գյուղատնտեսական մեքենաներ և հողային տարածություններ։ Բամբակի և եգիպտացորենի մշակման ու բերքահավաքի կոմպլեքս աշխատանքները կատարելու համար Արտաշատի միավորումում ստեղծվել է 9 կոմպլեքսային օղակ, Վե-



դիում 6, էջմիածնում՝ 8, Ստեփանավանում՝ 9, Կալինինոյում՝ 6 և այլն։

Ստեփանավանի արտադրական վարչության՝ պարտիայի XXII համագումարի անվան կոլտնտեսությունում ստեղծված կոմպլեքսային օղակին ամրացված է 15 հեկտար հողատարածություն։ Նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ այդ տարածության վրա առաջին և երկրորդ կուլտիվացիայի աշխատանքները ձեռքով կատարելու համար պահանջվում է մոտ 525 մարդ-օր, իսկ կոմպլեքսային մեքենայացման դեպքում՝ 16 մարդ-օր։

Դժբախտաբար առաջավոր փորձի օրինակները, որոնք բացահայտում են անսահմանափակ ռեզերվներ, դեռևս չեն դարձել ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների սեփականությունը, մինչդեռ գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում մեծ նշանակություն ունի կոմպլեքսային մեքենայացված դաշտավարական օղակների կազմակերպումը։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում եղած տեխնիկան լրիվ կարողությամբ և արդյունավետ օգտագործելու համար կարևոր նշանակություն ունի նրա որակյալ նորոգումը։ Այն տնտեսություններում, որոնք մեքենաների բոլոր նորոգումները կատարում են իրենց չկահավորված արհեստանոցներում, թույլ են տալիս պահեստամասերի գերածախս, որը կազմում է նորոգման արժեքի մոտ 65—70 տոկոսը՝ 40—45 տոկոսի փոխարեն։ Այդ արհեստանոցներում մեքենաները ոչ թե նորոգվում, այլ մասերն են փոխվում, չի կատարվում մաշված, բայց դեռ աշխատունակ մասերի վերականգնում։ Այդ ամենի հետևանքով խիստ ընկնում է նորոգման որակը, բարձրանում նրա արժեքը և դա այն դեպքում, երբ «Հայգյուղտնտտեխնիկա» ռեսպուբլիկական միավորման արհեստանոցներում մեքենաների հիմնական նորոգման արժեքը սահմանված լիմիտային գներից էլ պակաս է գանձվում։

Պետք է նկատի ունենալ, որ ներկայիս տեխնիկայի նորոգման համար պահանջվում են բազմապիսի հատուկ մեքենաներ ու սարքավորումներ, ինչպես նաև որակյալ մասնագետներ։ Վատ սարքավորված ու մասնագետ կադրերով չապահովված արհեստանոցներում հնարավոր չէ նորոգումները կատարել բարձր որակով։ Դրա համար պետք է մասնագիտացնել նորոգման արհեստանոցները։

Իրագործելով ՍՄԿՊ Կենտկոմի անցյալ տարվա դեկտեմբերյան և այս տարվա փետրվարյան պլենումների որոշումները, Հայգյուղտնտտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորումը հիմնականում իր վրա է վերցրել գյուղատնտեսական տեխնիկայի վերանորոգման գործը և այդ նպատակով գործում են վերանորոգման 33 արհեստանոց։

Արդեն մասնագիտացվում են «Հայգյուղտնտտեխնիկայի», Արտաշատի, Կիրովականի, Հրազդանի և Երևանի արհեստանոցները։ Արտաշատի միավորումում հիմնականում պետք է նորոգվեն ավտոշարժիչները, Կիրովականում՝ բեռնատար ավտոմեքենաները, Հրազդանում՝ էլեկտրասարքավորումները և ավտոմեքենաները, իսկ Երևանի նորոգման արհեստանոցը պետք է վերականգնի մաշված մասերը, ակումուլյատորները և տրակտորների շարժիչներ. արտադրի ոչ ստանդարտ սարքավորումներ։

Նշված մասնագիտացված նորոգման արհեստանոցներում այժմ ստացվել և տեղակայվում են նոր տիպի հանգույցների և մասերի լվացման մեքենաներ, շարժիչների փորձարկման ստենդներ, շարժիչների քանդման և հավաքման սարքավորումներ և այլ տեսակի նոր հարմարանքներ, որոնք հնարավո-

*րությունը կտան վերակառուցելու նորոգման տեխնոլոգիան և անցնելու հոսքային նորոգման, որը կարագացնի գործը։*

*Ամենագլխավորն այն է, որ նույն արհեստանոցներով և նույն ուժերով մենք կկարողանանք տալ մոտ երկու անգամ ավելի շատ և բարձրորակ արտադրանք, ցածր ինքնարժեքով։ Այս բոլորը կնպաստի այն բանին, որ կոլտնտեսություններն ու սովխոզները նորոգման հետ կապված բոլոր հարցերը կլուծեն միայն «Հայգյուղտնտտեխնիկայի» շրջանային միավորումների միջոցով։*

*Գյուղատնտեսական տեխնիկան բարձր արտադրողականությամբ օգտագործելու և պահեստամասերի ծախսը կրճատելու նպատակով «Հայգյուղտնտտեխնիկա» շրջանային միավորումներն ու բաժանմունքներն ընթացիկ տարվանից անցել են մեքենաների երաշխիքային նորոգումների։ Դա նշանակում է, որ նորոգված մեքենան երաշխիքային ժամկետից շուտ շարքից դուրս գալու դեպքում, միավորումը նրա վերականգնումը կատարում է իր միջոցներով և իր հաշվին։ Այսպես, օրինակ՝ ԴՏ—54, ԴՏ—75 տրակտորները վերանորոգելուց հետո պետք է աշխատեն 600—700 ժամ, դրանից շուտ շարքից դուրս գալու դեպքում նորոգման ծախսերը կատարում է միավորումը։ Բացի դրանից, միավորումների ու բաժանմունքների նորոգման արհեստանոցներում կազմակերպվել են մեքենաների հանգույցների ու պահեստամասերի թերությունները հայտաբերելու տեղամասեր, որտեղ յուրաքանչյուր մեքենայի հանգույցներն ու պահեստներն ստուգվում են ու որոշվում է նրանց հետագա պիտանիությունը։ Այդ տեղամասերի աշխատանքի շնորհիվ կրճատվում է մեքենայի վրա ծախսվող նոր պահեստամասերի քանակը, որը հնարավորություն է տալիս իջեցնելու նորոգման ինքնարժեքը։*

*Անցյալում առանձին մաշված մասերը՝ ծնկաձև լիսեռները, մխոցները, գլանները չէին վերականգնում, այլ հանձնում էին որպես լոմ։ Այժմ մի շարք արհեստանոցներում ծնկաձև լիսեռների հղկման հաստոցներ տեղակայելուց հետո փչացած ծնկաձև լիսեռները վերականգնում են և նորից օգտագործում։ Այդ ձևով յուրաքանչյուր ԴՏ—54 տրակտոր վերանորոգելիս տնտեսվում է 42 ռուբլի։ Յուրաքանչյուր տարի միայն ԴՏ—54 տրակտորների նորոգման համար ծախսվում են մոտ 600—700 ծնկաձև լիսեռներ. եթե փոխվող լիսեռների միայն 40—50 տոկոսը ենթարկվի հղկման և տեղադրվի մեքենայի վրա, կստացվի մոտ 15 հազար ռուբլու խնայողություն։*

*Դետալների խոտանման, մաշված մասերի վերանորոգման և նոր մասերի պատրաստման աշխատանքները լավ հիմքերի վրա են դրված Արտաշատի, էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Կիրովականի և մի շարք այլ միավորումներում։ Բայց նույնը չենք կարող ասել Շամշադինի, Թալինի և Սիսիանի վերանորոգման արհեստանոցների մասին։ Շամշադինի միավորումում նորոգված Թռուղի կոլտնտեսության ԴՏ—54 մարկայի տրակտորը, Թալինի բաժանմունքում նորոգված Մաստարայի սովխոզի ԿԴՊ—35 և Սիսիանի միավորումում նորոգված Աղիտի կոլտնտեսության ԴՏ—54 տրակտորները լուրջ թերություններ ունեին, որի համար ենթարկվել են կրկնակի նորոգման։*

*Շամշադինի, Թալինի, Սիսիանի միավորումները ոչ միայն հնացած մեթոդներով են նորոգում մեքենաները, այլև չեն օգտագործում եղած սարքավորումները, որի հետևանքով որակը ցածր է, ինքնարժեքը բարձր։ Այդ արհեստանոցներում չեն ստեղծված մասերի թերությունները հայտաբերելու և կոմպլեկտավորման բանվորական տեղեր, դետալների խոտանումը որոշվում է*



*աչքի չափով, չկան անհրաժեշտ չափող-ստուգող գործիքներ, չի կատարվում քանդված մասերի լվացում։*

*Լուրջ թերություններ կան նաև մեքենաների նորոգման պլանավորման գործում. առանձին տնտեսություններ և միավորումներ դրանք կազմում են ձևականորեն, չունեն ողջ տարվա գրաֆիկը, հաշվի չեն առնվում նորոգման արհեստանոցի բեռնվածությունը, սարքավորումների արտադրողականությունը, պահեստամասերի ներմուծման հնարավորությունները։ Աշխատանքի այսպիսի «կազմակերպումը» հնարավորություն չի տալիս բարձրացնելու բանվորների որակավորումը, որոնց համար ստեղծվում են աշխատանքի դժվարին և լարված պայմաններ, իսկ մեքենաները թերի են նորոգվում։*

*Գյուղատնտեսական արտադրության զարգացման ներկա մակարդակը, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների, սովխոզների մեծ հագեցվածությունը տեխնիկայով պահանջում է մեքենատրակտորային պարկի շահագործման բարձր կուլտուրա և տեխնիկական սպասարկման մասնագիտացում։ Տեխնիկայի ճիշտ օգտագործումը հնարավորություն կտա մեծ չափով մեքենայացնելու գյուղատնտեսական աշխատատար պրոցեսները և բարձրացնելու արտադրողականությունը։*

*Այժմ կոլտնտեսություններում և սովխոզներում հողագործության արտադրական պրոցեսների մոտ 80 և անասնապահական աշխատանքների մոտ 70 տոկոսը կարելի է մեքենայացնել։ Ռացիոնալ օգտագործելով մեր ունեցած տեխնիկան, կարելի է զգալի չափով ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։*

*Արտաշատի արտադրական վարչության Ն. Դվինի կոլտնտեսության տրակտորիստ Օրդոյան Սոսիկը ԴՏ—54 տրակտորով 1963 թվականին կատարել է 1250 հեկտար պայմանական վար։ 32 հեկտար տարածությունից միջին հաշվով հեկտարից նա ստացել է 500 ցենտներ սիլոսի մասսա։ Ցանքը կատարել է 4 բանվորական օրում, իսկ բերքահավաքը՝ 6 օրում։ Նա տվել է 100 ռուբլու արժողությամբ պահեստամասերի խնայողություն և 600 կգ. նավթամթերքի տնտեսում։*

*Բասարգեչարի արտադրական վարչության Ջախրլու գյուղի կոլտնտեսության կոմբայնավար Մուրադյան Լևոնը 1963 թվականին ՍԿ—4 կոմբայնով հնձել է 300-ից ավելի հեկտար և յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22 ցենտներ հացահատիկ։*

*Առաջավորների հաջողությունների հիմքը տեխնիկայի ժամանակին, որակով նախապատրաստումը և նրա արտադրողաբար օգտագործումն է, բոլոր աշխատանքների ժամանակին ու որակով կատարումը։ Սակայն ներկայումս տրակտորների, կոմբայնների և մյուս գյուղատնտեսական մեքենաների օրվա արտադրողականությունը շատ տնտեսություններում զգալիորեն ցածր է տեխնիկական նորմաներով նախատեսվածից։ Բազմաթիվ կոլտնտեսություններում և սովխոզներում վերջին 2—3 տարում 15 ձիաուժանոց տրակտորի օրվա արտադրանքը կազմում է 2,5 հեկտար, մինչդեռ առաջավոր տնտեսություններում այն կազմում է 4—5 և ավելի հեկտար։ Մինչև իսկ վարի աշխատանքներում մաքուր բանվորական աշխատանքի ժամանակը կազմում է ընդհանուր հերթափոխային ժամանակի 65 տոկոսը։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ օրվա ընթացքում պարապուրդները մեկ ժամով պակասեցնելը հավասարազոր է տրակտորային պարկը 750 պայմանական տրակտորով ավելացնելուն, իսկ*

եթե ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների տրակտորային պարկը երկու հերթափոխով աշխատի, ապա այդ հավասարազոր կլինի տրակտորային պարկը ևս 30—35 տոկոսով ավելացնելուն։

Արտադրողականության բարձրացման համար կարևոր ռեզերվ է նաև տրակտորների ու մյուս մեքենաների ագրեգատավորումը, նրանց հզորության լրիվ օգտագործումը։ Տնտեսություններում երբեմն հզոր տրակտորներն աշխատում են կցված մեկ շարքացանով՝ 2—3-ի փոխարեն։ Այդ նշանակում է, ցանքի ժամանակ 3-ի փոխարեն աշխատեցնել 1 տրակտոր և ձգձգել ցանքը։

Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը բարելավելու անհրաժեշտությունը կյանքի կոչեց «Հայգյուղտնտտեխնիկայի» և կոլտնտեսությունների ու սովխոզների միջև արտադրական կապերի այնպիսի պրոգրեսիվ ձև, ինչպիսին է տրակտորների, կոմբայնների, անասնապահական ֆերմաներում տեղակայված մեքենաների ու սարքավորումների կոմպլեքսային տեխնիկական սպասարկումը։

Այդ կայանների աշխատանքը ցույց է տվել, որ կոմպլեքսային տեխնիկական սպասարկումը տեխնիկան բարձր արտադրողականությամբ օգտագործելու ամենաարդյունավետ միջոցն է։ Օրինակ, Ախուրյանի շրջանային միավորումը 1963 թվականին կոմպլեքսային տեխնիկական սպասարկման էր վերցրել ութ կոլտնտեսություններ, որի շնորհիվ տեխնիկայի պահպանման ծախսերը, 1962 թվականի համեմատությամբ, կրճատվեցին մոտ տասը հազար ռուբլով։

Ավելի մեծ արդյունքի հասավ այդ շրջանի Մայիսյան գյուղի կոլտնտեսությունը։ Եթե 1962 թվականին այնտեղ կատարվել է 2503 հեկտար տրակտորային աշխատանք, ապա 1963 թվականին՝ 2800 հեկտար։ Մեկ 15 ուժանոց տրակտորի արտադրողականությունը կազմել է 366 հեկտար՝ 1962 թվականի 346 հեկտարի դիմաց։ Մեկ հեկտար պայմանական վարի դիմաց նշանակալի չափով կրճատվել է պահեստամասերի ծախսումը։ 1962 թվականին ծախսվել են 2436 ռուբլու պահեստային մասեր, իսկ 1963 թ.՝ 1590 ռուբլու։

Լավ արդյունքի է հասել Հոկտեմբերյանի շրջանային միավորումը, որը ստանձնել է ութ կոլտնտեսությունների տեխսպասարկումը։ Եթե այդ ութ կոլտնտեսությունները 1962 թվականին մեքենաների նորոգման համար ծախսել են 28592 ռուբլու պահեստային մասեր և կատարել 38622 հեկտար պայմանական վար, 1963 թվականին համապատասխանորեն՝ 24757 ռուբլի և 40 000 հեկտար։ Գարնանային աշխատանքներն ավարտվեցին 4—5 օր շուտ, 15 ուժանոց տրակտորի արտադրողականությունը բարձրացավ մինչև 20 հեկտարով։

Ընթացիկ տարում «Հայգյուղտնտտեխնիկայի» շրջանային միավորումները և բաժանմունքները կոմպլեքսային տեխնիկական սպասարկման են վերցրել մոտ 300 տնտեսություններ կամ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների 40 տոկոսը, 1963 թվականի 16 տոկոսի փոխարեն։

Եթե «Հայգյուղտնտտեխնիկայի» շրջանային միավորումները կենտրոնացված սպասարկեն տնտեսություններին, անհրաժեշտ չի լինի անմիջապես կոլտնտեսություններին ու սովխոզներին պահեստային մասերը վաճառել։ Տեխնիկական սպասարկման կայաններն իրենք պատասխանատու կլինեն և տնտեսությունները կապահովեն պահանջվող մասերով։ Ըստ որում, տեխնիկական



կայանների աշխատողները, ինչպես նաև կոլտնտեսությունները շահագրգռված են ավելի քիչ պահեստամասեր ծախսելու։

«Հայգյուղտնտտեխնիկայի» ինժեներատեխնիկական աշխատողներն անմիջապես աշխատելով տնտեսություններում, ավելի կոնկրետ օգնություն ցույց կտան կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ նոր տեխնիկայի ներդրման, մեքենաների պահպանման ու ռացիոնալ օգտագործման և այլ միջոցառումների կիրառման գործում։

Վերջին ժամանակներս «Հայգյուղտնտտեխնիկայի» միավորումների (բաժանմունքների) կոլտնտեսություններն ու սովխոզները ձեռք են առել մի շարք միջոցներ՝ բարելավելու գյուղատնտեսական տեխնիկայի պահպանությունը։ Կառուցվել են ծածկեր, մեքենաները կանգնեցնելու համար հրապարակներ, հարթակներ, բակեր և այլ հարմարանքներ։

Սակայն ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում առանձին տնտեսություններ գյուղատնտեսական աշխատանքներն ավարտելիս և մեքենաները դաշտից բերելուց հետո, դրանք չեն մաքրում կեղտից և ծղոտի մնացորդներից։ Ավելին, նրանք մեքենաների մեծ մասը թողնում են ձյան ու անձրևի տակ։ Մեքենաների հանդեպ ցուցաբերվող նման վերաբերմունքը, նրանց փչացումը և ապակոմպլեկտավորումը մեծ վնաս են հասցնում տնտեսությանը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումը առանձնակի ուշադրություն հատկացրեց գյուղատնտեսական արտադրության մեջ նոր տեխնիկայի, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ներդրմանը։

«Հայգյուղտնտտեխնիկայի ռեսպուբլիկական միավորումը այդ ուղղությամբ որոշ աշխատանք է կատարել։ 1963 թվականի ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության մեջ ներդրվել են նոր տիպի Տ—74 և Տ—75 տրակտորներ, կարտոֆիլ տնկող և կարտոֆիլ քանդող մեքենաներ, ճակնդեղաբարձիչներ, սիլոսի և գոմաղբի տեղափոխման փոխադրիչներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին ու սովխոզներին դաշտավարության և անասնապահության աշխատանքների կոմպլեքս մեքենայացման գործում որոշ օգնություն է ցույց տալիս գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման Արտաշատի գիտահետազոտական ինստիտուտը։

1963 թվականին տեղի ունեցավ ՌՆ—40 մարկայի փխրեցուցիչ մեքենայի (քարքարոտ հողերի մշակման համար) պետական փորձարկումը. այն արժանացավ բարձր գնահատականի և 1964 թվականից կազմակերպվեց այդ մեքենայի արտադրությունը Օդեսայում։ Բարձր գնահատականի են արժանացել նաև ինստիտուտի կողմից մշակված մեջքի փոշոտիչը (թմբային այգիների համար), կուլտիվատորների ունիվերսալ թաթիկները, ՎՌԻՏ—2,5 ունիվերսալ մեքենան՝ խաղողի այգիների միջշարային մշակման համար։

Ինստիտուտի կողմից զգալի աշխատանք է կատարված քարքարոտ հողերի մշակման համար կոմպլեքս մեքենաներ ստեղծելու ուղղությամբ։ Ինստիտուտի քարհավաքի մեքենայացված բրիգադայի միջոցով 1963 թվականին Աշտարակի արտադրական վարչության սովխոզները քարերից մաքրել են 117 հեկտար տարածություն, որի վրա տնկվելու են այգիներ։

Սակայն արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրումը դեռևս անբավարար է։ Հաճախ առանձին նոր մեքենաներ արտադրության մեջ չեն օգտագործվում՝ նրանց աշխատանքին ծանոթ չլինելու պատճառով և, պատահական

չէ, որ կոլտնտեսությունների ու սովխոզների կողմից ներկայացվող հայտերում շատ քիչ է նոր, առաջավոր տեխնիկայի պահանջը։ Անբավարար են օգտագործվում կախովի գործիքները, այգիների մշակումը մեքենայացնելու համար ստացված նոր տեխնիկան և այլն։ Այսպես՝ մինչև 1962 թվականը շատ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ ու մասնագետներ, ծանոթ չլինելով խոտ հավաքող ու մամլող մեքենայի աշխատանքին, հրաժարվում էին դրանից և դրանց փոխարեն օգտագործում ցածր արտադրողականություն ունեցող խոտի ստացիոնար մամլիչները։ Բայց երբ նրանք մոտիկից ծանոթացան նոր մեքենայի արդյունավետությանը, հրաժարվեցին հին տեխնիկայից և ներկայացրին հավաքող և մամլող մեքենայի պահանջ։

Գյուղատնտեսության ինտենսիվացման խնդրում վճռական դեր ունեն մեխանիզատորական կադրերը։ Տեխնիկայից լիակատար արդյունք կստացվի այն դեպքում, երբ այն գտնվի որակյալ և վստահելի մեխանիզատորների ձեռքում։ Այժմ բավական չէ, որ մեխանիզատորն իմանա մեքենաների կառուցվածքը և դրանց օգտագործման ձևը։ Առաջին հերթին նա պետք է կարողանա աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումներով աճեցնել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք։

«Հայգյուղտնտտեխնիկա» ռեսպուբլիկական միավորումը և նրա շրջանային միավորումներն ու բաժանմունքները որոշակի աշխատանք են կատարել կադրերի վերապատրաստման ուղղությամբ։ Հանքային պարարտանյութերի և նոր տեխնիկայի ճիշտ օգտագործումն ապահովելու նպատակով Եղվարդի մեքենա-փորձարկման կայանին կից կազմակերպվեց «Հայգյուղտնտտեխնիկայի» և արտադրական վարչությունների գլխավոր ինժեներների հնգօրյա սեմինար պարապմունք, իսկ «Հայգյուղտնտտեխնիկայի» միավորումներում և բաժանմունքներում կազմակերպված դասընթացներում ընդգրկվեցին մոտ հազար մարդ (տրակտորային բրիգադավարներ և անմիջապես այդ ոլորտում աշխատող մեխանիզատորներ)։

Մեքենայական կթի հրահանգիչներ պատրաստելու նպատակով կազմակերպված սեմինար-պարապմունքներում կատարելագործվել են զգալի թվով ինժեներներ ու գլխավոր ինժեներներ, իսկ անցյալ տարի պատրաստվել և վերապատրաստվել են կոլտնտեսությունների ու սովխոզների 650 կթվորուհիներ ու մեխանիկներ։

Մեխանիզատորական կադրեր պատրաստելու ուղղությամբ մեծ գործ է կատարվելու այս տարի։ Վերապատրաստվելու են 1750 տրակտորիստ-մեքենավարներ, ինչպես նաև այլ մասնագետներ։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները պայքարի են ելել կենսագործելու ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը։ Այդ գործում վճռական է տեխնիկայի դերը։ Ամբողջ կարողությամբ և արդյունավետ օգտագործելով տեխնիկան՝ կկարողանանք ստանալ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ։

Լ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

«Հայգյուղտնտտեխնիկա» ռեսպուբլիկական միավորման նախագահ

# ՄԱՐԴԻԿ ԵՎ ԱՎՏՈՄԱՏՆԵՐԸ

ՎԱՂՈՒՑ էր, արդյոք, որ մեզնից ոմանք, խոսելով ապագայի մասին, այն պատկերում էին որպես բարիքների մի ինչ-որ «անծայրածիր ծով», որից օգտվելու համար նույնիսկ ֆիզիկական ուժ ծախսելու հարկ չի լինի։ Բավական է սեղմել «հրաշագործ» կոճակը և, ինչպես հեքիաթում, քո առաջ կփռվեն ուզածդ բարիքները։ Որքա՜ն միամիտ էին նման դատողություններն ու պատկերացումները։ Այստեղ ամեն ինչ գալիս էր անպարփակ երևակայությունից։ Սակայն, այդուհանդերձ, չի կարելի ուշադրություն չդարձնել մի հանգամանքի վրա. մարդը չի պատկերացնում ապագան առանց մեքենաների և ավտոմատների։

Մեքենաներն ու ավտոմատներն այժմ արդեն ավելի ու ավելի մեծ տեղ են գրավում մեր առօրյա կյանքում։ Այդ պրոցեսը, պետք է ասել, հարաճուն ընթացք է ստացել և զարգանում է երկրաչափական պրոգրեսիայով։ Եվ կարևորն այն է, որ ավտոմատների այդքան սրընթաց թափանցումը կյանք, չի սահմանափակվում արտադրության կամ գիտության մեկ բնագավառով։

Ավտոմատիկան և էլեկտրոնիկան իրենց հաստատուն տեղն են գրավել մարդկային գործունեության այնպիսի բնագավառներում անգամ, որոնք, կարող էր թվալ, չափազանց հեռու են դրանցից։ Օրինակ, բանասիրությունը, բժշկությունը, հնէաբանությունը, երաժշտությունը, տնտեսագիտությունը։ Ավտոմատ հարմարանքները կարող են անհասանելի արագությամբ կատարել զանազան տիպի հաշվումներ, արբանյակ-տիեզերանավեր վարել աստղային հեռաստաններում, հսկել արտադրանքի թողարկմանը և ամբողջ ագրեգատների աշխատանքին, որոնել շինարարության նոր տարբերակներ, հուշել ցանկացած բարդության անհրաժեշտ ինֆորմացիա, մի լեզվից մյուսը թարգմանել ցանկացած տեքստը, վերծանել հնագույն, վաղուց ի վեր մահացած ժողովուրդների անհասկանալի գրերը։ Իսկ արդյունաբերության մեջ այդ խելացի մեքենաներն ու սարքերը վարում են ամբողջական արտադրական գծեր, հանգույցներ, արտադրամասեր և, նույնիսկ, ձեռնարկություններ։ Ավտոմատների մեջ ասես առարկայացել են մարդկության հազարամյա գիտելիքներն ու փորձը, որը հսկայական բարձրության է հասցնում մարդու իշխանությունը բնության վրա։ Ավտոմատիկան այն ճերմակ նժույգն է, որին սանձած՝ մարդը մուտք կգործի ապագայի սքանչելի աշխարհը։

Մեր պարտիան խնդիր է դնում մասսայական մասշտաբով իրագործել արտադրության կոմպլեքսային ավտոմատացումը, արմատավորել ավտոմատ կառավարման բարձր կատարյալ սիստեմներ, լայնորեն կիրառել կիբեռնետիկան, էլեկտրոնային հաշվող-լուծող ու կառավարող սարքերը՝ արդյունաբե-

ության արտադրական պրոցեսներում, շինարարական ինդուստրիայի ու տրանսպորտի մեջ, գիտական հետազոտություններում, պլանային ու նախագծային-կոնստրուկտորական հաշվարկումներում, հաշվառման ու կառավարման ոլորտում։ Ուստի, արգելակել ավտոմատացման գործը, խոչընդոտել նրա աճը՝ նշանակում է արգելակել նորի, առաջավորի ընթացքը, մնալ պահպանողական դիրքերում, ծիծաղելի դրության մեջ ընկնել։

Ահա այս լույսի տակ ուզում ենք շոշափել առևտրի ավտոմատացման պրոբլեմի հետ կապված որոշ հարցեր։ Մենք կխոսենք միայն այս թեմայի ասպեկտներից մեկի՝ առ ու վաճառքի ավտոմատացման մասին։ Ինչպես հայտնի է, առևտրի պրոցեսը, ըստ էության մնում է այնպիսին, ինչպես հեռավոր միջնադարում էր՝ վաճառող-կշեռք-գնորդ, որը հակասության մեջ է մտել անընդհատ զարգացող կյանքի պահանջների հետ։ Թե որքան կարևոր է այս հակասության լուծումը, կարելի է դատել հետևյալ տվյալներով։ Մեր երկրի մանրածախ առևտրի ցանցն ընդգրկում է ավելի քան 440 հազար առևտրական ձեռնարկություն, որտեղ աշխատում են 5 միլիոնից ավելի մարդ։ Վիճակագիրների հաշվումներով, 1980 թվականին այդ թիվը կկրկնապատկվի։ Մինչդեռ առևտրական ձեռնարկություններում ֆիզիկական աշխատանքի, այդ թվում և առ ու վաճառքի ավտոմատացումն ու մեքենայացումը աններելիորեն դանդաղ են ընթանում։ Բավական է նշել, որ առևտրի ցանցում ավտոմատացված է աշխատանքի ընդամենը 0,3 տոկոսը։ Այս պահպանողական բնագավառին նորի շունչը դիպավ ընդամենը յոթ-ութ տարի առաջ։

Մի քանի տարի առաջ ավտոմատները ներխուժեցին նաև Երևանի, Լենինականի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների խանութները, սրճարանները, իրենց հաստատուն տեղը գրավեցին վաճառասեղանների մոտ, գեղեցիկ շարք կազմեցին փողոցներում, հրապարակներում և հասարակական այլ վայրերում։ Եվ, եթե հիշելու լինենք զինվորական տերմինոլոգիան, ապա կարելի է ասել՝ գրոհը ծավալվեց ամբողջ ճակատով։ Լցնող, կշռող, փաթեթող, չափավորող սարքերն ու մեքենաները օգնության հասան գնորդին և վաճառողին. գնորդին՝ որպեսզի բարձրացնեն սպասարկման կուլտուրան, վաճառողին՝ որպեսզի հեշտացնեն նրա աշխատանքը։

Խելացի մեքենաները, տեղ հասնելուն պես, սկսեցին աշխատել, ինչպես ասում են, «քրտինքը ճակատին», առանց ուժ ու ջանք խնայելու։ Նրանք բարեխղճորեն չափում էին կաթն ու գարեջուրը, բաժակների մեջ լցնում գազով ջուրը, վաճառում թերթեր, ծխախոտ ու մատիտներ, հաց և սառը խորտիկներ բաց թողնում. նրանք կարող էին նաև օծանելիքով թարմացնել ցանկացողին (ճիշտ է, պարֆյումերային այդ արտադրանքով ազատորեն կարելի էր խեղդամահ անել ճանճերին, փայտոջիլներին ու այլ միջատների, բայց դա միանգամայն այլ թեմա է և այսօր դրան չենք անդրադառնա)։ Խիստ հրապուրիչ տեսք ունեին այդ ավտոմատները, գեղեցիկ էին, նիկելապատ, մաքուր, պարզապես աչք էին շոյում։

Սակայն, հարց է ծագում, խոսելով այդ նորամուծությունների մասին, ինչո՞ւ ենք անցյալ ժամանակն օգտագործում։ Հենց բանն էլ այն է, որ գրոհն արագորեն կասեցվեց և ետ շպրտվեց։ Ավտոմատներից շատերը, եթե ոչ բոլորը, շատ կարճ ժամանակից հետո դադարեցին գործել, իսկ մի քանիսն էլ բոլորովին չաշխատեցին... տեղադրման առաջին իսկ օրվանից։

Կիրովի անվան գործարանի բանվորական ավանի բնակիչները հիշում են,



թե ինչպես երեք տարի առաջ № 35 պարենային խանութում մի խումբ բանվորներ, գազով ջրի մատուցման հինգ ավտոմատներ էին տեղադրում։ Սկզբում մարդիկ հետաքրքրությամբ դիտում էին մեքենա-վաճառողներին։ Սպասեցին, թե նրանք երբ կսկսեն գործել։ Սակայն երկար սպասեցին... և ապարդյուն։ Տեղադրված օրվանից մինչև այժմ նրանք այդպես էլ անգործության են մատնված։ Ավտոմատները դարձել են երեխաների ուշադրության առարկան։ Երբեմն կարելի է տեսնել, թե ինչպես հինգ-վեց տարեկան մի երեխա, հաճախ նույնիսկ ավելի մեծը, մոր հետ խանութ գալով, պտտվում է թանկարժեք սարքի շուրջը, ապա փորփրում, սեղմում զանազան կոճակներ ու բռնակներ։ Մի խոսքով, զվարճանում այնքան ժամանակ, մինչև որ մայրն ավարտում է իր գործերը խանութում։ Մի երեխային փոխարինում է մյուսը։ Իրենց ոչ հատուկ այդ դերը ավտոմատները կատարում են մինչև օրս։

Կիրովի փողոց։ Բժշկական ինստիտուտի դիմացի խորտկարան։ Այն իր ժամանակին վերածվեց ավտոմատ-խորտկարանի։ Գնվեցին և տեղադրվեցին ավտոմատ սարքավորումներ։ Ծախսվեցին տասնյակ հազարավոր ռուբլիներ։ Սակայն ավտոմատ-խորտկարանը իր դերը կատարեց չափազանց կարճ։ Շուտով այն վերածվեց հասարակ խորտկարանի։ Ճիշտ է, սարքավորումները մինչև այժմ էլ այնտեղ են, բայց արդեն ոչ ոքի պետք չեն։

Երկար կյանք չունեցան նաև ավտոմատ-խորտկարանները Շահումյանի և Կարմիր բանակի փողոցների անկյունում, № 95 հացի ավտոմատ վաճառքի խանութը՝ Նալբանդյան փողոցում։ Նույն բախտին են արժանացել մյուս բոլոր ավտոմատ սրճարաններն ու խորտկարանները։

Երբեմն մթերային կամ կաթի խանութներում կարելի է տեսնել վաճառասեղաններին կպած ինչ-որ նիկելապատ «կոճղեր», այն ամենը, ինչ մնացել է կաթ վաճառող ավտոմատից։ Խեղճը մի առ ժամանակ աշխատեց, ով գիտե, գուցե բոլորովին էլ չաշխատեց և կանգ առավ։ Որոշ ժամանակ անց այն տեղահան արվեց ու նետվեց նկուղի անկյուններից մեկը, իսկ հիմքը մնաց։ Նման օրինակները շատ են։ Ինչպես տեսնում ենք, դեռ բարիքները չվայելած, ավտոմատներից երես թեքեցին, անգթորեն հանձնեցին բախտի քմահաճույքին։ Ավտոմատներից շատերը դեռ այսօր էլ կանգնած են բաց երկնքի տակ, փչանում են անձրևի ու քամու հոսանքներից, ձյունով են ծածկվում, արևահարվում։ Ավտոմատներն այդ վիճակում մնում են ամիսներ, տարիներ, մինչև որ վերջնականապես շարքից դուրս են գալիս։ Այդ ժամանակ արդեն դեն են նետվում որպես ջարդոն։

Իսկ այժմ տեսնենք, թե ինչից են երես թեքել մարդիկ։ Պարզվում է, որ ամենահասարակ ավտոմատը կարող է փոխարինել երկու մարդու։ Սակայն արժանիքները դրանով չեն սպառվում։ Նրանք խնայում են գնորդի ժամանակը, սպասարկում ցանկացած ժամին։ Պրակտիկան ցույց է տվել, որ մեխանիկական օգնականներն անկասկած շահավետ են։

Սակայն, որքան էլ տարօրինակ է, առևտրական կազմակերպությունները այնքան էլ սիրով չեն ընդունում այդ ակնհայտ շահույթը։ Այժմ ռեսպուբլիկայում կարելի է հաշվել անգործության մատնված հարյուրավոր ավտոմատներ։ Ցավոք սրտի, ճշգրիտ թվեր բերել հնարավոր չէ, քանի որ այդ թվերը չգիտեն նույնիսկ նրանք, ովքեր պարտավոր են գիտենալ։

Մեր զրույցի թեման վերաբերում է հարցի ո՛չ միայն նյութական, այլև բարոյական կողմին։ Այստեղ արդեն վնասի չափերը հնարավոր չէ հաշվել։

Չէ՞ որ ավտոմատ սարքերից ու ապարատներից յուրաքանչյուրի ստեղծման վրա իրենց միտքն ու եռանդն են դրել հազարավոր մարդիկ, ամբողջ կոլեկտիվներ։ Դրանց պատրաստման համար նախագծվել ու կառուցվել են հատուկ ձեռնարկություններ։ Հարյուրավոր գիտնականներ ու կոնստրուկտորներ անքուն գիշերներ են անցկացրել, որպեսզի հնարավորին չափ հեշտացնեն մարդկանց աշխատանքը։ Եվ ահա այժմ պարզվում է, որ այդ ամենն ապարդյուն է անցել։ Մի՞թե պարզ չէ, որ նման անհոգի վերաբերմունքը միանգամայն անհամատեղելի է մեր հասարակության կոմունիստական իդեալների հետ։ Դա մարդկանց մեջ դաստիարակում է աղայական, անհարգալից վերաբերմունք աշխատանքի և նրա պտուղների նկատմամբ։

Փորձենք պարզել, թե բանն ինչումն է։

Մարդիկ, որոնց հետ ես առիթ եմ ունեցել զրուցելու այդ թեմայով (գլխավորապես առևտրի աշխատողներ), բավականին թյուր կարծիք են հայտնում ավտոմատների մասին, վկայակոչելով մեխանիզմների անհուսալիությունը, հոգնեցուցիչ խնամքը։ Մեր զրուցակիցների ասածներում պատճառաբանված կողմեր կան. այո՛, ավտոմատները թերություններ ունեն (այդ մասին դեռ կխոսենք), սակայն թերահավատ վերաբերմունքը ստիպում է զգուշանալ, ստեղծվում է այն տպավորությունը՝ թե մարդիկ նպատակադրվել են անպատճառ վարկաբեկել իրենց բարեկամ ավտոմատներին։ Զգացվում էր, որ նրանք ճշմարիտ, թե ոչ ճշմարիտ փաստարկներով ցանկանում են ազատվել դրանցից։

Այդ միտքը հաստատեց ռեսպուբլիկայի առևտրի մինիստրության արտադրական-տեխնիկական բաժնի վարիչ Վ. Ա. Զարիֆյանը։ Անկեղծ էր մեր զրույցը։

— Ավտոմատների անհաջողությունն առևտրական ցանցում,— ասաց նա,— մի շարք պատճառներ ունի, որոնցից գլխավորը նրանց ազնվությունն է (նա ճիշտ այդպես էլ ասաց)։ Ազնվությունն էլ կործանում է նրանց։

Անկեղծորեն ասած, ես սկզբում չհասկացա, թե ինչ ազնվության մասին է խոսքը.

— Շատ հասարակ։ Ավտոմատների ճշգրիտ ու բարեխիղճ աշխատանքը դուր չի գալիս շատ վաճառողների։

— Հասկանալի է։ Տհաճ է նրա հարևանությունը։

— Ճիշտ այդպես։ Վերցնենք թեկուզ գազով ջուր վաճառող ավտոմատը։ Այն ճիշտ և արագ չափում է հյութը, լցնում ջուրը։ Իսկ նրա կողքին աշխատում է մանրավաճառը, որը թերաչափում է, դանդաղ է սպասարկում։ Հասկանալի է, որ ամռանը, երբ տանջում է ծարավը, մարդն ավելի շուտ ավտոմատից կօգտվի, քան կդիմի վաճառողին։ Ինչպես տեսնում եք, մրցակցությունը հօգուտ վաճառողի չէ։

Նույնը կարելի է ասել կաթի և, մանավանդ, գարեջրի ավտոմատների մասին։ Ուստի առևտրի նման աշխատողները ջանում են որքան հնարավոր է շուտ ազատվել այդպիսի տհաճ հարևաններից։

— Բայց այդպիսիներին պետք է պատասխանատվության ենթարկել։

— Իհարկե, պետք է, բայց ինչպե՞ս։ Հանցանքի վայրում բռնել չենք կարող, իսկ ավտոմատների աշխատանքի ու սարքինության համար, որքան էլ տարօրինակ է, մինչև վերջերս ոչ ոք պատասխանատու չէր։ Անհավատալի է, բայց փաստ է։ Ըստ կանոնադրության, ոչ խանութի վարիչը և ոչ էլ գործա-



կատարները, նյութական պատասխանատվություն չեն կրում ավտոմատների սարքինության համար։

— Ստացվում է, որ ավտոմատները պարզապես անտերության են մատնվել։

— Համարյա թե։ Սարքավորումների նկատմամբ ո՛չ միայն խնամք, այլ նույնիսկ հսկողություն, տնտեսավարի հետևող աչք չի եղել։ Միայն այժմ փորձում ենք որևէ բան անել այդ ուղղությամբ, սակայն մեր ջանքերը չափազանց երկչոտ են և նպատակին չեն հասնում, շոշափելի արդյունք չեն տալիս։

Չի կարելի չնշել նաև հարցի մյուս կողմը։ Թերևս խանութի որևէ աշխատող ցանկություն ունենա հետևելու իր խնամարկյալին, սակայն չի կարող այդ անել այն պարզ պատճառով, որ տեխնիկապես գրագետ չէ։ Մեր խանութների աշխատողներն ի վիճակի չեն նույնիսկ միացնելու կամ անջատելու ավտոմատները, էլ չենք խոսում որևէ անսարքության, խափանում շտկելու մասին։ Այդ է պատճառը, որ ամեն մի հասարակ խափանվածքի դեպքում զանգահարում, մեխանիկ կամ էլեկտրիկ են հրավիրում, իսկ վերջիններս, ցանկության դեպքում էլ անկարող են հասնելու ամեն տեղ։

Միաժամանակ չի կարելի չխոսել նաև որոշ սարքավորումների կոնստրուկցիաների թերությունների մասին։ Այդ է վկայում թեկուզ հետևյալ փաստը. ՍՍՌՄ Մինիստրների սովետի առևտրի պետական կոմիտեի որոշմամբ այս տարի արտադրությունից հանվում է տանյոթ տիպի սարքավորում։

— Հասկանալի է, գործը նոր է և նման բաներ անխուսափելի են։ Սակայն նման թերությունները վերացվում են արմատավորման պրոցեսում, ընդհանուր ջանքերով։ Թերությունների մասին պետք է տեղյակ պահել համապատասխան կազմակերպություններին, գիտական և կոնստրուկտորական հիմնարկներին։ Հավանաբար, նման բաներ երբեք չեն արվել։

— Ինչ ճիշտն է, ճիշտը, մեզ մոտ որոշ անտարբերություն կա ավտոմատների նկատմամբ. աշխատո՞ւմ են՝ լավ, չե՞ն աշխատում՝ ոչինչ։ Սրտացավ հոգատարություն և շահագրգռվածություն չկա։

Մոտավորապես այդպիսին էր մեր զրույցը ռեսպուբլիկայի առևտրի մինիստրությունում։

Առաջին իսկ միտքը, որ ծագում է այս զրույցի կապակցությամբ, հետևյալն է. իսկ ինչո՞ւ է բացակայում հսկողությունը։ Մինիստրությունում խոսում են, թե իբր չեն կարողանում կազմակերպել տեխնիկական տեսչության նման մի բան։

Մենք կտրականապես առարկում ենք՝ պետք չէ նոր օրգան ստեղծել։ Եթե իսկապես ցանկություն լինի գործի կպչելու, կարելի է բազմաթիվ լավ և բանիմաց օգնականներ գտնել։ Ինչո՞ւ չի կարելի, օրինակ, այդ գործի մեջ ներգրավել հասարակայնությանը։ Վերջապես հսկողություն կարելի է կազմակերպել առևտրի տեսչության ուժերով։ Այնուամենայնիվ, ոչ մի հսկողություն էլ չի օգնի, եթե բացակայում է ավտոմատների սարքինության և աշխատանքի համար անձնական պատասխանատվությունը։ Անկեղծ ասած, մենք առաջին անգամ ենք հանդիպում այնպիսի մի փաստի, երբ թանկարժեք սարքավորումը «անապաստան է» թողնվում։ Անհրաժեշտ է մտածել ո՛չ միայն ավտոմատների տեղակայման, այլև դրանց պահպանության մասին։ Այդ գործը պետք է հանձնարարել տեխնիկային գիտակ, շահագրգռված մարդկանց։

Ավտոմատների անգործության պատճառներից մեկն էլ այն է, որ վատ է

*դրված մեխանիզմների նկատմամբ տեխնիկական հսկողության գործը։ Ավտոմատները շատ երկար են սպասում նորոգման. այստեղ էլ ծագում է մի նոր նորոգման բազայի ստեղծման խնդիրը։ Մինչև վերջերս նորոգման պարտականությունը դրված էր «Հայինվենտարաշ» վարչության վրա։ Այժմ այն հանձնվել է «Հայառմոնտաժին»։ Ենթադրվում է կազմակերպել ֆիրմային խանութ, որի աշխատողները կսպասարկեն ավտոմատները։ Թե որքանով է նպատակահարմար նման սիստեմը և որքանով կարդարացնի իրեն, կյանքը ցույց կտա։*

*Սակայն վերադառնանք մեր զրույցի հիմնական թեմային։ Ուզում ենք շոշափել ավտոմատների երկարակեցության հարցը։ Այդ կախված է այն բանից, թե ում ձեռքում են դրանք գտնվում։ Ռեսպուբլիկայի առևտրական ցանցում ավտոմատները հանձնված են տեխնիկային անտեղյակ մարդկանց։ Նրանց պետք է սովորեցնել։ Հատուկ դասընթացներ, սեմինարներ— ահա ճիշտ ուղին։ Դրա պահանջը վաղուց է հասունացել։ Չէ՞ որ առևտրական ձեռնարկություններում չտեսնված արագությամբ աճում է մեխանիկական օգնականների թիվը։ Աճում է ո՛չ միայն քանակով, այլև որակապես։ Կյանքը հրամայաբար թելադրում է. այժմ արդեն պետք է լրջորեն մտածել վաճառասեղանի աշխատողների տեխնիկական ուսուցման մասին։*

*Անհրաժեշտ է մտածել նաև ստացվող ավտոմատների որակի մասին։ Չէ՞ որ բոլորովին պետք չեն այն սարքերը, որոնք միայն արտաքուստ են ավտոմատացում հիշեցնում և վարկաբեկում են ավտոմատացման գաղափարը։ Ավտոմատը լավ է այն դեպքում, երբ իր վրա է վերցնում ձեռքի բոլոր աշխատանքները։ Բայց երբ որևէ միջանկյալ պրոցես դուրս է մնում ավտոմատացման շրջանակներից, ապա արդյունքը նպատակին չի ծառայում։ Ավտոմատացումը, ինչպես նշում են «Իզվեստիա» թերթի մի խումբ հեղինակներ, պետք է մշակվի կոմպլեքսային ձևով, կոմպլեքսային մեքենայացման բազայի վրա։ Օրինակ, կարելի է նախօրոք ասել, որ հյութերի և ըմպելիքների վաճառքի ավտոմատը հաջողություն չի ունենա միայն այն պատճառով, որ նախատեսված չէ թղթե բաժակների ուտիլացումը։ Կամ, ասենք ո՞ւմ են պետք այն ավտոմատները, որոնց կասետները մթերքներով պետք է լիցքավորեն գործակատարները, իսկ գնորդը մյուս կողմից վերցնի դրանք։*

*— Մենք չենք կարող հրաժարվել, ստիպում են,— անմիջապես լսում ենք պատասխանը։*

*Այդ դեպքում, հարկավոր է հարց բարձրացնել միութենական կազմակերպությունների առջև, որպեսզի պատասխանատվության ենթարկվեն թերի կոնստրուկցիաներ թողարկող անձինք։ Նրանց պետք է ասել. «Մենք ընդհանրապես դեմ չենք ավտոմատացմանը, այլ դեմ ենք վատ ավտոմատներին։*

*Ո՞վ կարող է ժխտել նաև այն, որ ավտոմատների շահավետ աշխատանքը կախված է նաև դրանց խելացի տեղաբաշխումից։ Երբեմն կարելի է ջրի վաճառքի ավտոմատ հանդիպել մի ինչ-որ նրբանցքում, որտեղ համարյա անց ու դարձ չկա։ Բնական է, որ ավտոմատն այդտեղ անգործության կմատնվի։ Դրա տեղը զբոսայգին է, կայարանը, ստադիոնը և այլն։*

*Կամ լինում է այսպես. հացի վաճառքի ավտոմատը տեղադրվում է հացի խանութում։ Հարց է ծագում, ավելի լավ չէ՞ այդ ավտոմատի մուտքն անել դրսից և միացնել այն ժամերին, երբ խանութը փակ է։ Ասենք, մարդ ուշ երեկոյան տուն է վերադարձել և հանկարծ հիշել է, որ տանը հաց չկա։ Դուրս է*



*գալիս փողոց, նետում դրամը և ավտոմատը նրան հաց է հրամցնում։ Հարմար չէ՞։*

*Կամ մի այլ օրինակ։ Երբեմն ծխախոտ ու լուցկի վաճառող կրպակի կողքին տեղադրվում է ծխախոտ և լուցկի վաճառող ավտոմատ, որն, իհարկե, նպատակահարմար չէ։ Տարակուսանք են հարուցում կենտրոնական փոստում տեղադրված փոստային բացիկներ վաճառող բազմաթիվ ավտոմատները։ Հենց այդ է պատճառը, որ օրվա մեծ մասը դրանք անգործության են մատնված։ Մեր կարծիքով, դրանց մի մասի տեղը հյուրանոցների նախասրահներն են, կայարանները։*

*Վերջացնենք. առևտրական ձեռնարկություններում ավտոմատացումը նոր գործ է։ Այն պահանջում է խելացի մոտեցում։ Ավտոմատացման հետ գործ ունեցող մարդիկ պետք է իմանան, որ այդ ոչ թե ժամանակավոր երևույթ է, այլ մեր կյանքի օրինաչափությունը, որ դրանից չի կարելի օձիքն ազատել։ Այդ պետական կարևոր գործ է և պետք է պետականորեն մոտենալ դրան։*

*Վերջերս Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեն ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի հետ կատարած ստուգման նյութերի հիման վրա քննարկեց առևտրական սարքավորումների օգտագործման ու պահպանման վիճակը և արձանագրեց որ ռեսպուբլիկայի առևտրի և հասարակական սննդի ձեռնարկություններում պատշաճ ուշադրություն չի նվիրվում այդ կարևոր գործին։ Մնում է, որ առևտրական կազմակերպությունները դրանից գործնական հետևություններ անեն և պրակտիկայում ապահովեն պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի նշած միջոցառումների անթերի կատարումը։*

Հ. ԲԱԳՐԱՋՅԱՆ



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ԳԼԽԱՎՈՐՆ Է

Մեր օրերում յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկության, շինարարության, կոլտնտեսության, սովխոզի և այլ կազմակերպության կոլեկտիվից պահանջվում է ճշգրտությամբ լուծել իր առջև դրված խնդիրները, իսկ դրան հասնելու համար անհրաժեշտ է բարձր հիմքերի վրա դնել կատարման ստուգումը, որի նպատակը միայն թերություններ հայտաբերելը չէ, այլև դրական փորձի տարածումը։

Պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ լավ է կազմակերպված կատարման ստուգումը, գործերը հաջող են ընթանում և հակառակը։ Օրինակ, Կիրովականի քիմիական կոմբինատի պարտկոմը (քարտուղար ընկ. Ա. Բաղյան) սիստեմատիկաբար ստուգում է կոմիտեի և վերադաս պարտիական օրգանների որոշումների կատարումը՝ այդ գործում ներգրավելով ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովներին, պարտիական պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբի անդամներին։ Կոմբինատի կոլեկտիվը 1963 թվականի համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարեց ժամկետից շուտ, երկրին տալով 660 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Այստեղ զգալի աշխատանք է կատարվում ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի որոշման կատարման ուղղությամբ։ Պարտիական կոմիտեն և ցեխային պարտիական կազմակերպությունները, պլենումի որոշումներից անմիջապես հետո կազմակերպական լայն գործունեություն ծավալեցին։ Նրանք կազմակերպեցին պլենումի որոշման ուսումնասիրումը և մասսայականացումը կոլեկտիվում, այդ գործում ներգրավելով 130 ագիտատորների, 91 պրոպագանդիստների, դասախոսական խմբի բոլոր անդամներին, «Քիմիագործ» բազմատիրաժ թերթը։ Որոշումը հանգամանորեն ուսումնասիրվեց նաև պարտիական լուսավորության ցանցում։ Պարտկոմը կոմբինատի դիրեկցիայի հետ միասին մշակեց կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ մելամինի արտադրության հետագա ընդլայնման, թողարկվող արտադրանքի (քիմիական պարարտանյութերի և, հատկապես, կորունդի) որակի բարելավման, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման և աշխատատար պրոցեսների մեքենայացման համար։

Քիմիագործները որոշեցին օգնել կոլտնտեսականներին՝ ձեռք բերելու քիմիական գիտելիքներ։ Պարտիական կոմիտեի նախաձեռնությամբ կոմբինատի կենտրոնական լաբորատորիայում ստեղծվեց հասարակական հիմունքներով գործող ագրոքիմիական լաբորատորիա, ինժեներա-տեխնիկական անձնակազմից կազմվեց բրիգադա, որն օգնեց Սպիտակի արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողներին քիմիական մինիմում գիտելիքներ ձեռք բերելու, հանքային պարարտանյութերը ճիշտ օգտագործելու։

Այստեղ կատարման ստուգումն անց է կացվում ժամանակին, վեր են հանվում թերությունները և անհապաղ միջոցներ ձեռնարկվում դրանց վերացման համար։ Այսպես, հունվարին համախառն արտադրանքի թողարկման պլանը կոմբինատը կատարել էր 103,4, իսկ կորունդինը՝ միայն 97 տոկոսով։ Այդ խիստ անհանգստացրեց պարտիական կոմիտեին. առանձնացվեցին մարդիկ, որոնք ուսումնասիրեցին և բացահայտեցին թերակատարման պատճառները, ձեռք առնվեցին միջոցներ դրանք կարճ ժամանակամիջոցում վերացնելու համար։ Շուտով կորունդի ցեխը նույնպես սկսեց կատարել պլանները։

Այլ է դրությունը Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում։ Այստեղ պարտիական կազմակերպությունը, (պարտիական կոմիտեի քարտուղար Ս. Մոսինյան) վատ է կազմակերպում ինչպես սեփական, այնպես էլ վերադաս պարտիական օրգանների որոշումների կատարման ստուգումը։ Պարտիական կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները մակերեսորեն են զբաղվում արտադրության հարցերով, եղած թերությունները հազվագյուտ են քննության առարկա դառնում։ 1963 թվականին թերակատարվեցին սև և ռաֆինացված պղնձի, ծծմբաթթվի ու սուպերֆոսֆատի արտադրության տարեկան պլանները, 391 հազար ռուբլով բարձրացավ ինքնարժեքը, էլեկտրաէներգիայի գերածախսը կազմեց 4 միլիոն 150 հազար կիլովատ-ժամ։

Կոմբինատի պարտիական կազմակերպությանն անբավարար օգնություն ու ղեկավարություն է ցույց տվել Ալավերդու արդյունաբերական պարտիական կոմիտեն։ 1963 թվականին կոմիտեի բյուրոյի նիստերում տարբեր առիթներով 6 անգամ լսվել են կոմբինատի և նրա պարտիական կազմակերպության աշխատանքի հարցերը, սակայն կազմակերպական անբավարար աշխատանքի ու կատարման ստուգման վատ դրվածքի հետևանքով ընդունված որոշումների մեծ մասը նույնպես չի կատարվել և գործերը չեն բարելավվել։ Այսպիսի վիճակի համար ՀԿՊ XXIII համագումարում քննադատվեց Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի աշխատանքը։ Վերջերս ՀԿՊ Կենտկոմի ստուգումներից պարզվեց, որ կոմբինատի պարտիական կոմիտեն և դիրեկցիան այդ քննադատությունից էլ լուրջ եզրակացություն չեն արել։ 1964 թվականի առաջին եռամսյակում կոմբինատը նորից վատ աշխատեց, և համախառն արտադրանքի պլանը կատարեց 95,3 տոկոսով և թերակատարեց արտադրանքի մի շարք կարևոր տեսակների թողարկման առաջադրանքը։

Ալավերդու արտադրական պարտիական կոմիտեի և պղնձաքիմիական կոմբինատի օրինակը ցույց է տալիս, որ իրերի վիճակը բարելավելու համար անհրաժեշտ է ոչ թե բազմաթիվ որոշումներ ընդունել, այլ, առաջին հերթին, կազմակերպական աշխատանքով ապահովել դրանց իրականացումը, սիստեմատիկ ստուգել դրանց կատարումը։ Այլապես ամենալավ որոշումները, ամենահիմնավորված պլաններն ու պարտավորությունները կարող են մնալ թղթի վրա։

Լավ կազմակերպված կատարման ստուգումը դաստիարակում է կադրերին, բարձրացնում նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, մարդկանց դարձնում կարգապահ, օպերատիվ ու գործունյա, նպաստում նրանց աշխատանքի մեթոդ-

ների կատարելագործմանը։ Իսկ երբ վատ է դրված կատարման ստուգումը, երբ մարդիկ դուրս են մնում վերահսկողության ոլորտից, ամենալավ աշխատողն իսկ կարող է մեծամտանալ, ձախողել հանձնարարված գործը, դառնալ անկարգապահ և վատ աշխատող։ Օրինակ, Սիսիանի արտադրական վարչության Շաքի գյուղի կոլտնտեսության վարչության նախկին նախագահ ընկ. Ա. Հ. Խաչատրյանը մի ժամանակ լավ տնտեսվարի համբավ ուներ և արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման. Նա միշտ ընտրվում էր շրջանային պարտիական ու սովետական ղեկավար օրգաններում, պարտիական կոնֆերանսների, ակտիվի ժողովների նախագահությունների կազմում ու նրա գործունեությունը կոլտնտեսությունում սիստեմատիկ ստուգման չէր ենթարկվում... Եվ այսպես, աստիճանաբար նա դուրս մնաց վերահսկողության ոլորտից։ Այդ հասցրեց այն բանին, որ ընկ. Խաչատրյանը մեծամտացավ, կարծեց, թե ինքն անսխալական է, կոլտնտեսության կյանքի կարևոր հարցերի լուծման ժամանակ հաշվի չէր առնում կոլտնտեսականների ու պարտիական կազմակերպության կարծիքը, ինքնագլուխ փոխում էր արտադրական նորմաները, խախտում կոլտնտեսականներին վարչական տույժի ենթարկելու կարգը։ Նա նույնիսկ թույլ էր տվել կոլտնտեսային կանոնադրության և ֆինանսական կարգապահության կոպիտ խախտումներ, հավելագրումներ և այլն։ Խաչատրյանն սկսել էր վատ զբաղվել աշխատանքի կազմակերպման հարցերով։ Այս բոլորի հետևանքը եղավ այն, որ մեծ հնարավորություններ ունեցող այդ կոլտնտեսությունը ո՛չ միայն չառաջադիմեց, այլ վերջին տարիներին մի շարք բնագավառներում ետ գնաց։

Սիսիանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի բյուրոն բազմաթիվ ահազանգումներից հետո, 1963 թվականի փետրվարին քննարկեց ընկ. Խաչատրյանի հարցը և նրան հայտարարեց նկատողություն։ Այստեղ ևս բյուրոն նրա նկատմամբ բարեհոգի վերաբերվեց, դրանից որոշ ժամանակ անց միայն, 1963 թվականի աշնանը ընկ. Խաչատրյանն զգաց, որ ինքն այլևս ի վիճակի չէ ղեկավարելու այդ կոլտնտեսությունը և իր դիմումի համաձայն ազատվեց կոլտնտեսության վարչության նախագահի պաշտոնից։ Հետևապես անհրաժեշտ է ստուգել բոլորին, որովհետև, ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, չեն սխալվում միայն նրանք, ովքեր ոչինչ չեն անում։

Կատարման ստուգումը հետապնդում է մի այլ նպատակ ևս։ Եթե սխալներն աշխատողի անբավարար փորձի արդյունք են, ապա նրան պետք է օգնել դրանք ուղղելու և գործերի վիճակը բարելավելու։ Իսկ եթե դրանք մարդու կարողությունների պակասի կամ սխալ վերաբերմունքի արդյունք են, նա չի կարող իրեն արդարացնել տվյալ աշխատանքում, պետք է նրան փոխարինել մեկ ուրիշով։

Այսպիսով, չի կարող կադրերի ճիշտ դաստիարակություն լինել այնտեղ, որտեղ բացակայում է կատարման ստուգումը, որտեղ թերությունների կողքով են անցնում, ժամանակին չեն հայտաբերում ու շտկում կադրերի թույլ տված սխալներն ու թերությունները։

Կատարման ստուգումը, վերահսկողությունը կնպաստեն ղեկավարման բարելավմանը, տնտեսական և քաղաքական խնդիրների լուծմանը. պետք է ստուգել տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառները, պարտիական աշխատանքը, պարտիական կազմակերպությունների, սովետական և տնտեսական բոլոր օրգանների գործունեությունը։ Անհրաժեշտ է զուգակցել վերևից՝ պարտիական և պե-



տական ղեկավար օրգանների կողմից իրականացվող վերահսկողությունը մասսաների՝ ներքևից եկող վերահսկողության հետ։

Մասսայական վերահսկողության իրականացման համար այժմ ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծված։ Արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական, առևտրական կազմակերպությունների և սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծված են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովներ։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում գործում են 1216 այդպիսի հանձնաժողովներ, որտեղ ընդգրկված են ավելի քան 4771 կոմունիստներ։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) պլենումի որոշումների հիման վրա անցյալ տարի (հունվար-փետրվարին) ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում ու հիմնարկություններում ստեղծվեցին պարտիական-պետական վերահսկողության օրգաններին աջակցող 2337 խմբեր և 2458 պոստեր, ուր ընդգրկվեցին ավելի քան 31 հազար կոմունիստներ, կոմերիտականներ ու անպարտիականներ։ Պարտիական-պետական վերահսկողության քաղաքային, շրջանային կոմիտեները, նրանց աջակցող խմբերից շատերն իրենց ստեղծման առաջին իսկ օրվանից սկսեցին ստուգել պարտիական ու պետական ղեկավար օրգանների կողմից ընդունված որոշումների կենսագործման ընթացքը, պայքար ծավալեցին անտնտեսվարության, պետական ու կոլտնտեսային ունեցվածքի շռայլումների, հափշտակումների և մեր իրականությանը խորթ այլ երևույթների դեմ։

Սակայն պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբերի ստեղծումից հետո որոշ պարտիական կազմակերպություններում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովները թուլացրել են իրենց աշխատանքը։ Այդպիսի վերաբերմունքը սխալ է, պետք է գործի դնել այդ հանձնաժողովները, ամրապնդել դրանց և աջակցող խմբերի փոխադարձ կապը արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների հասարակական վերահսկողության ձևերի՝ արտադրական խորհրդակցությունների, արհմիութենական հանձնաժողովների, կոմերիտական լուսարձակների հետ։ Պարտիական կազմակերպությունները պետք է կոորդինացնեն վերահսկող այդ բոլոր օրգանների գործունեությունը, որպեսզի նրանք ավելորդ ստուգումներով չխանգարեն կազմակերպությունների նորմալ աշխատանքներին։

Պարտիական կազմակերպությունները և պարտիական կոմիտեներն իրենց պրակտիկ աշխատանքում կատարման ստուգման բազմաթիվ ձևեր ու մեթոդներ են կիրառում. վերադաս պարտիական, սովետական օրգանների և սեփական որոշումների կատարման ընթացքը քննարկում են պարտիական ժողովներում, պարտիական կոմիտեների բյուրոների նիստերում։ Կատարման ստուգման այդ ձևը ճիշտ է։ Սակայն դրանով չի վերջանում ստուգումը, որովհետև առանց կազմակերպական աշխատանքի, միևնույն հարցի մասին կարող են ընդունվել մի քանի որոշումներ, բայց ոչ մեկն էլ չկատարվի։ Կատարման ընթացքը քննարկվում է այն դեպքում, երբ նախկինում ընդունված որոշման մեջ չեն ընդգրկված բոլոր հարցերը, երբ որոշման կատարման ընթացքում առաջ են եկել նոր հարցեր, որոնք նախկինում ընդունված որոշման մեջ հնարավոր չէր նախատեսել, իսկ անհրաժեշտության դեպքում քննարկել որոշման կատարման ընթացքը և պա-

տասխանատվության ենթարկել այն ընկերներին, որոնք անպատասխանատվություն են հանդես բերում, ձախողում են որոշումների կատարումը։

Կատարման ստուգման կարևոր ձևերից մեկն էլ պարտիական կազմակերպությունների ընդհանուր կամ մասնակի հաշվետվություններ լսելն է՝ պարտիական կոմիտեների բյուրոներում և պլենումներում։ Սակայն պարտիական որոշ կոմիտեներ (ՀԿՊ Երևանի Լենինյան, Օրջոնիկիձեի, 26-ի անվան շրջկոմները, Դիլիջանի, Սիսիանի և այլ արտադրական պարտիական կոմիտեներ) անբավարար են օգտագործում կատարման ստուգման այդ ձևը։ Վերջին մեկ ու կես տարում այդ կոմիտեների նիստերում շատ քիչ են քննարկվել պարտկազմակերպությունների հաշվետվությունները։ Իսկ դա կարևոր է, քանի որ այս կամ այն պարտիական կազմակերպության հաշվետվության կապակցությամբ վաղօրոք մանրակրկիտ ուսումնասիրվում է պարտկազմակերպության գործունեությունը և հարցը կոմիտեի բյուրոյում կամ պլենումում քննարկելու ժամանակ բացահայտվում են պարտիական աշխատանքի դրական փորձը կամ տեղ գտած թերություններն ու սխալները, որոնք ամփոփվում են տվյալ պարտկազմակերպության հաշվետվության առթիվ ընդունված որոշման մեջ, միջոցառումներ են մշակվում թերությունների վերացման կամ դրական փորձի ընդհանրացման վերաբերյալ։

Կատարման ստուգման ամենակարևոր, ամենագործուն ձևերից է՝ պարտիական ղեկավար աշխատողների կողմից տեղում գործերի վիճակի հետ ծանոթանալը։ Պարտիական օրգանների վերակառուցումից հետո ավելի լայն հնարավորություններ են ստեղծվել դրա համար։ Այժմ գյուղական արտադրական պարտիական կոմիտեներն ունեն տեսուչ-պարտկազմակերպիչներ, որոնք իրենց աշխատանքային ժամերի մեծ մասն անց են կացնում կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Շատ պարտիական կոմիտեներ զգալիորեն կրճատել են բյուրոների նիստերի և զանազան խորհրդակցությունների թիվը։ Ներկայումս պարտիական ղեկավար աշխատողներն ավելի շատ են լինում տեղերում, որը հնարավորություն է ընձեռում խորանալու գործերի իրավիճակի մեջ, կազմակերպելով վերադաս օրգանների որոշումների կատարումը։

Կատարման ստուգման մեկընդմիշտ տրված ձևեր ու մեթոդներ չկան։ Ինչպես ամբողջ պարտիական աշխատանքը, այնպես էլ կատարման ստուգումը շաբլոն չի հանդուրժում, այն օրըստօրե պետք է կատարելագործվի տվյալ մոմենտին, պարտիական կազմակերպությունների առջև կանգնած խնդիրներին համապատասխան։

Ա. ՄԿՐՏՉՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտօրգանների բաժնի վարիչի տեղակալ

## ԵՐԲ ԳՈՐԾԸ ՃԻՇՏ Է ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՒՄ

Մինչև 1962 թվականը Երևանի էլեկտրալամպերի գործարանը տևականորեն ետ մնացող ձեռնարկություն էր, որի գործունեությունը սուր քննադատության ենթարկվեց ՀԿՊ XXII համագումարում։ Գործարանի պարտիական կազմակերպությունը, ադմինիստրացիայի հետ միասին, մշակեց կոնկրետ միջոցառումներ ներքին ռեզերվների հայտաբերման և օգտագործման, նոր տեխնիկայի ներդրման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, մեքենայացման ու ավտոմատացման, ինչպես նաև աշխատանքի կազմակերպման բնագավառում։ Հարցեր, որոնց կենսագործման ուղղությամբ գործարանի մշակած տեխնիկական-կազմակերպչական միջոցառումները տարիներ շարունակ անկատար էին մնում։ Այդ հարցերը դարձան մեր կազմակերպության ամենօրյա պարտիական-կազմակերպչական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հիմքը։ Դրա հետ միասին կոնկրետ միջոցառումներ իրագործվեցին կոլեկտիվի անդամների դաստիարակության ու քաղաքական ուսուցման ուղղությամբ, որոնք տվեցին գոհացուցիչ արդյունքներ։

Կոլեկտիվում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքները բարձր հիմքերի վրա դնելու նպատակով պարտիական կոմիտեին կից ստեղծվեց գաղափարական հանձնաժողով, որը կոորդինացնում, ուղղություն է տալիս պարտիական կազմակերպություններին՝ մարդկանց կոմունիստական աշխարհհայացքի ձևավորման, աշխատանքային դաստիարակության բարձր հիմքերի վրա դնելու գործին։ Գաղափարական հանձնաժողովն զբաղվում է դասախոսական պրոպագանդայի և քաղուսուցման նպատակասլաց ու արդյունավետ կազմակերպմամբ։ Այժմ իրենց գիտելիքները և աշխատանքային փորձը զեկուցումների ու զրույցների միջոցով ունկնդիրներին են հաղորդում գործարանի դասախոսական խմբի անդամները՝ արտադրության առաջավորներ, ինժեներա-տեխնիկական անձնակազմի աշխատողներ։ Դասախոսությունների թեմատիկայում տեղ են գտել գործարանի առջև դրված հուզող հարցեր, արտադրությանը վերաբերող պրոբլեմներ։ Գործարանում սահմանված է դասախոսությունների ու զեկուցումների կազմակերպման միասնական օր, որը հնարավորություն է տալիս պարտիական կազմակերպություններին ավելի լավ նախապատրաստելու և անցկացնելու յուրաքանչյուր դասախոսություն ու զեկուցում։ Այդ օրը գործարանի զեկուցողների խմբի անդամների, ինչպես և «Գիտելիք» ընկերության անդամների ուժերով, կոլեկտիվի տարբեր ցեխերում ու բաժիններում կարդացվում են 10—12 դասախոսություն ու զեկուցում։

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում որոշակիորեն նշվեց, որ պարտիական կազմակերպությունների գաղափարական գործունեության հիմքը մասսայական քաղաքական կրթությունն է ու լուսավորությունը։ Մեր գործարանի պարտիական կոմիտեն, սկզբնական պարտիական կազմակերպություններն աշխատել են կոլեկտիվի անդամների քաղաքական ու տնտեսական գիտելիքների ուսուցման գործը մշտապես պահել ուշադրության կենտրոնում և այն դարձնել ավելի նպատակասլաց, սերտորեն կապելով արտադրության կոնկրետ խնդիրների հետ։

Միայն այս ուսումնական տարում, նախորդ տարվա համեմատությամբ, կրկնապատկվել է սեմինարների, քաղխմբակների և դրանցում ընդգրկված ունկնդիրների թիվը։ Ավելացել է, հատկապես, արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող քաղխմբակների և սեմինարների թիվը, կադրերի տնտեսագիտական ուսուցումը պատշաճ բարձրության վրա դնելու նպատակով։ Կոմպլեկտավորված 47 պարտիական ու կոմերիտական քաղխմբակներից և սեմինարներից 20-ում ուսումնասիրում են արդյունաբերության էկոնոմիկան, 17-ում՝ ՍՄԿՊ պատմությունը, իսկ մնացածներում կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը և ընթացիկ քաղաքականության հարցերը։

Պրոպագանդիստական աշխատանքում հիմնականում ընդգրկված են գործարանի ղեկավար աշխատող-

ները, որոնք, ինչպես պրակտիկան ցույց է տալիս, կարողանում են անցկացնելիք յուրաքանչյուր թեմա կապել գործարանի, ցեխի առջև դըրված խնդիրների հետ։ Այսպես՝ ապակու ցեխի արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի ղեկավար, գործարանի պլանբաժնի վարիչ Մելիք Աթաջանյանը, նորմալ լուսավորման լամպերի հավաքման ցեխի արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող տարրական տիպի քաղխմբակի պրոպագանդիստ, էկոնոմիստ Միշա Վասիլյանը, ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող սեմինարի ղեկավար, գործարանի գլխավոր ինժեների տեղակալ Բենիամին Թումանյանը ունեն պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձ։ Մեծ պատասխանատվությամբ ու խնամքով են նրանք նախապատրաստվում յուրաքանչյուր պարապմունքին և կարողանում են տեսական հարցերը խելացիորեն զուգակցել պրակտիկ հարցերին։ Այսպիսի խմբակների և սեմինարների թիվը գործարանում փոքր չէ։

Քաղաքական ուսուցման նյութատակասլաց կազմակերպումը և ունկնդիրների ակտիվ մասնակցությունն ու հանձնարարված թեմայի խոր ուսումնասիրումը նպաստել են նրանց պրակտիկ աշխատանքին։ Այդ գործի հաջող կազմակերպմանը նպաստել է նաև արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի ղեկավար Մ. Աթաջանյանի, արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող տարրական տիպի քաղխմբակի պրոպագանդիստ՝ Վ. Բունիաթյանի, ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող սեմինարի ղեկավար Բ. Թովմասյանի պրոպագանդիստական աշխատանքի փորձի ընդհանրացումն ու տարածումը։

Պրոպագանդիստներին ու սեմինարի ղեկավարներին օգնելու նպատակով, ամիսը մեկ անգամ, նրանց հուզող հարցերի շուրջ կազմակերպվում են սեմինարներ, որտեղ պրոպագանդիստներն ու սեմինարի ղեկավարները տեղեկություններ են ստանում գործարանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների մասին։

Դրական արդյունք է տալիս նաև պրոպագանդիստական աշխատանքի բաց պարապմունքների կազմակերպումը՝ ըստ կոմպլեկտավորված խմբակների։ Նորմալ լուսավորման լամպերի հավաքման ցեխում կազմակերպված արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող քաղխմբակի (պրոպագանդիստ Մ. Վասիլյան) բաց պարապմունքին մասնակցում էին գործարանի արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող բոլոր քաղխմբակների ղեկավարները. մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկած պրոպագանդիստներն արեցին արժեքավոր դիտողություններ ու առաջարկություններ։

Ամրապնդելով պրակտիկայում ձեռք բերած լավագույնը, պարտիական կազմակերպությունն այսօր որոնում, գտնում է պարտիական կազմակերպական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ավելի հետաքրքրական ձևեր։ Մեր կոլեկտիվը պարտավորվել է 1964 թվականին համախառն արտադրանքի պլանը կատարել 104 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ 10 տոկոսով ավելացնել համախառն արտադրանքը։ Անցած եռամսյակում գերակատարվել են մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Համախառն արտադրանքի պլանը կատարվել է 106 տոկոսով։ Այս արդեն երաշխիքն է այն բանի, որ մեր գործարանի կոլեկտիվը պատվով կկատարի սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

Ս. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ
էլեկտրալամպերի գործարանի
պարտկոմի քարտուղար



*Գործուղում ընթերցողի խնդրանքով*

# ՀԻՆ ԾՈՒԽԸ ՆՈՐ ՕՋԱԽԻՑ

Վերջերս խմբագրությունն ստացավ մի նամակ՝ հետևյալ բովանդակությամբ.

Հարգելի խմբագրություն.[1]

Ձեզ տեղյակ եմ պահում քննադատության ճնշման և իմ նկատմամբ անարդարացի, անհոգի վերաբերմունքի փաստերին և խնդրում միջամտել:

Բոլորովին երիտասարդ կոմունիստ էի, երբ Ղափանի բժշկական ուսումնարանի պարտիական կազմակերպությունը, հակառակ իմ խնդրանքին, ինձ ընտրեց կազմակերպության քարտուղար: Ես խորապես ըմբռնում էի, որ դա ոչ միայն մեծ վստահություն էր իմ նկատմամբ, այլև շատ լուրջ պարտականություններ էր դնում ինձ վրա: Ես մեծ եռանդով ու ոգևորությամբ գործի անցա՝ ստանալով իմ աշխատանքային ավագ ընկերների և ՀԿՊ Ղափանի արդյունաբերական-արտադրական կոմիտեի օգնությունն ու աջակցությունը: Երբ արդեն բավականաչափ խորացել էի գործերի մեջ, նկատեցի, որ մեր ուսումնարանում տեղ են գտել մի շարք լուրջ թերություններ: Ինձ հատկապես մտահոգություն էին պատճառում ուսանողության ընդունելության, գնահատման, թոշակավորման և դաստիարակության գործում տեղ գտած բացերն ու սխալները: Ես նկատեցի նաև, որ ուսումնարանի դիրեկտոր ընկ. Ա. Գրիգորյանը ինչպես անձնական, այնպես էլ պարտիական ու պետական պարտականությունները կատարելիս թույլ է տալիս խախտումներ և անօրինականություններ (պակաս էր մուծում պարտիական անդամավճարը, ֆինբաժնում սխալ էր ձևակերպել իր աշխատանքային ստաժը, հաշվապահի ստորագրությունը չէր հաստատել բանկում և այլն):

Այդ ամենի և մի շարք այլ հարցերի մասին ես խոսեցի պարտիական ժողովում, իսկ լուծում չստանալուց հետո ահազանգեցի Ղափանի պարտիական կոմիտեին: Եվ ահա սկսվեց այն, ինչը խորապես հուզել է ինձ և ինչը հիմք ծառայեց դիմելու խմբագրության օգնությանը:

Ընկ. Ա. Գրիգորյանը փոխանակ կոմունիստին հատուկ ուղղամտությամբ ընդունելու իր հասցեին արված ընկերական դիտողություններն ու քննադատությունը, բռնեց տարբեր ձևերով ինձ վիրավորելու, հեղինակազրկելու, պատժելու և տնտեսապես ճնշելու ուղին:

1963 թվականի հուլիսի 16-ին Ղափանի պարտիական կոմիտեի բյուրոն քննեց «բժշկական ուսումնարանի դիրեկտոր Ա. Գրիգորյանի նկատմամբ ստացված նյութերի ստուգման արդյունքների մասին» հարցը և գտավ, որ իմ ահազանգը լիովին համապատասխանում է իրականությանն ու ընկ. Գրիգորյանին հայտարարեց.... խիստ զգուշացում: Դրանից հետո էլ ընկ. Գրիգորյանը ոչ միայն չփոխեց իմ նկատմամբ ունեցած վերաբերմունքը, այլև ավելի խորացրեց այն: Նա ինձ որպես պարտկազմակերպության քարտուղարի, ոչ միայն արգելեց մասնակցելու քննություններին, այլև հրապարակորեն, կոպիտ կերպով դուրս հրավիրեց հայոց լեզվի գրավոր քննությունից, ինձնից վերցրեց քիմիայի լաբորատորիան, ոտնահարելով պարտիական կարգ ու կանոնը,. ինձ հայտարարեց գրավոր խիստ նկատողություն վերջին նախազգուշացումով և այլն:

Ինձ համար ստեղծվեցին անտանելի պայմաններ, և ես ստիպված նորից դիմեցի պարտիական կոմիտեին, խնդրելով, որ ինձ ազատեն ոչ միայն պարտկազմակերպության քարտուղարի (ես վերընտրվել էի) պարտականություններից, այլև աշխատանքից: Կոմիտեի որոշ ընկերներ գտնելով, որ ես ճիշտ եմ, իսկ ընկ. Գրիգորյանը սխալ, բռնեցին, այսպես ասած, նրան չնեղացնելու, իսկ ինձ, ըստ էության, մեկուսացնելու ուղին: Բանը հասավ այնտեղ, որ ընկ. Գրիգորյանին պարտիայի շարքերը որպես անդամ ընդունելու ժամանակ ինձ, իբրև պարտկազմակերպության քարտուղարի, նույնիսկ չհրավիրեցին բյուրո:

Տեսնելով ու ապրելով այս ամենը, ես այլևս չկարողացա շարունակել աշխատանքը, իմ հաշվին արձակուրդ վերցրի և այժմ չեմ աշխատում:

Խնդրում եմ խմբագրությանը զբաղվել այս հարցով:

Հարգանքներով՝ ՆԱԴԵԺԴԱ ԽԻԿԱՐԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ղափանի բժշկական ուսումնարանի պարտկազմակերպության քարտուղար:

---

[1] *Նամակը տպագրվում է որոշ կրճատումներով։*

***

Ընկեր Հարությունյանի նամակը հետաքրքրեց խմբագրությանը, և մենք գնացինք նրա հետքերով։ Եվ ահա ստուգման արդյունքների շուրջը ցանկանում ենք անկեղծ ու սրտաբաց զրույց ունենալ ինչպես ընկ. Հարությունյանի, այնպես էլ ընկ. Ա. Գրիգորյանի, ՀԿՊ Ղափանի արդյունաբերական-արտադրական կոմիտեի ընկերների և ընթերցողի հետ, որովհետև այն, ինչ տեղի է ունեցել և ինչի մասին պետք է խոսենք, հուզում է ոչ միայն Հարությունյանին, այլև շատ շատերին։

Ձեր նամակը, ընկ. Հարությունյան, առիթ հանդիսացավ, որպեսզի 10 տարի անց մենք նորից լինենք Ղափանում։ Անկեղծորեն խոստովանում ենք, որ երբ գնացքը Ղափան մտավ, մենք ապրեցինք զարմանքի և անսահման ուրախության մի պահ, ապրեցինք օրինական հպարտության զգացում տաղանդավոր ու աշխատասեր այն մարդկանց նկատմամբ, ովքեր 10 տարվա ընթացքում հեքիաթը իրականություն են դարձրել, կառուցել են անկրկնելի գեղեցկությամբ մի հոյակերտ ու վարդաշեն քաղաք։ Նախկին Ղափանից քիչ բան է մնացել. մեծացել է քաղաքը, գեղեցկացել, անճանաչելի է դարձել։ Լեռնաշխարհի աշխատավորը ոչինչ, ոչինչ չի խնայել իր քաղաքի համար. նա իր մտքի ուժն ու սրտի հուրն է դրել նրա մեջ։

Ամեն, ամեն ինչ նոր ու գեղեցիկ է այստեղ. Նոր են հոյակապ մայրուղիները, բազմահարկ վարդագույն շենքերն ու սպորտային հրապարակները, կուլտուրայի օջախներն ու ուսումնական հաստատությունները։ Նոր է նաև Ձեր բժշկական ուսումնարանը, որն ընդամենը մի քանի տարվա պատմություն ունի։

Սակայն որքան էլ գեղեցիկ ու վեհաշուք լինի քաղաքն՝ իր ճարտարապետական անսամբլներով ու հաստատություններով, այնուամենայնիվ ամենագեղեցիկը, ամենավեհն ու հոյակապը մնում է նրա ստեղծողը՝ մարդը, իր բարոյական ու հոգևոր նոր գծերով ու առաքինություններով։ Նայեցե՛ք նրան. իր լեռնաշխարհի նման ամուր ու վստահ, զինված հայրենական գիտության և տեխնիկայի ամենավերջին նվաճումներով՝ մխրճվում է հայրենի լեռների կուրծքը՝ բազմապատկելու իր մեծ ու չքնաղ հայրենիքի փառքն ու հզորությունը։ Այստեղ է ծնվում աշխատանքի նոր մարդը, մեր օրերի իսկական հերոսը, անթառամ փառքով պսակելով իր լեռնաշխարհն ու մեր ողջ ռեսպուբլիկան։

Ինչպես Ղափան մեկնելու ճանապարհին, այնպես էլ բուն Ղափանում, մեզ շատ էպիզոդներ պատմեցին այդ համեստ ու աշխատասեր մարդկանց ամենօրյա գործերից, գործեր, որոնց առջև խամրում են անցյալի ամենահերոսական դրվագներն անգամ։ Այո՛, լիարյուն կյանքով է ապրում այսօր Զանգեզուր հանքաշխարհը, համաչափ է բաբախում նրա սիրտը՝ Ղափանը, հպարտ ու վստահ է քայլում նրա քաղաքացին՝ մեր օրերի հերոսը։ Այդ հերոսը, ընկ. ընկ. Ա. Գրիգորյան և Ն. Հարությունյան, ձեր կողքին է, ամեն օր քայլում է ձեզ հետ, շնչում է նույն օդը։ Դուք էլ կհամաձայնեք մեզ հետ, և չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ մեր հայրենիքին փառք բերող ամեն մի նվաճում յուրաքանչյուր օր կոփվում է նաև հենց այդ հերոսի բազուկներով՝ Ղափանում։ Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ մեր տիեզերանավերը, ատոմային սառցահատներն ու մեր հրթիռները ձուլվում ու կոփվում են հենց այդ հերոսի ձեռքով՝ նաև Ղափանում։ Նա՛ է հանում կոմունիզմի մետաղը։ Եվ այդ հերոսը ձեր ընկերն է, դուք՝ նրա ժամանակակիցը։

Ամեն, ամեն ինչ նոր, գեղեցիկ ու հերոսական է Ղափանում, բայց... բայց այդ նորի, հերոսականի ընդհանուր ֆոնի վրա ավելի ցցուն և շեշտված են երևում առանձին սև բծերը, որոնք ստվերարկում են մեր կյանքի գեղեցկությունը։ Այդ բծերը, դժբախտաբար, կան, փաստ են, և մենք ափսոսանքով ու ցավով պետք է խոսենք դրանց մասին։

Դժբախտությունը, սակայն, միայն այն չէ, որ այդ բծերը կան, այլ այն, որ դրանք կան ոչ այնքան, ասենք, քաղաքային տնտեսության, արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության և նման երևույթների մեջ, որքան մարդկանց գիտակցության, նրանց հոգեբանության մեջ։ Զարմանալի է, չէ՞, որ գիտության և տեխնիկայի աշխարհացունց թռիչքների մեր դարում, երբ մարդն ակոսում է տիեզերքի խոպանը, մխրճվում նրա գաղտնիքների մեջ, երբ նա իր հանճարի ուժով իսկական հրաշքներ է գործում, դժվարանում է ազատագրվել հին ժառանգությունից, անցյալի մտածելակերպի և հոգեբանության մնացուկներից։ Իսկ որ այդ մնացուկներն իրոք կան և իրենց զգացնել են տալիս, դրա համոզիչ վկայությունը հենց այն է, որ ընկ. Ն. Հարությունյանի նամակում բերված փաստերը ճիշտ են և համապատասխանում են իրականությանը։

... Իրոք, ընկ. Հարությունյանը դեռևս մեկ տարվա պարտիական ստաժ ուներ, երբ նրան վստահեցին և ընտրեցին բժշկական ուսումնարանի պարտիական կազմակերպության քարտուղար։ Ճիշտ է նաև այն, որ նա հենց առաջին օրվանից եռանդուն կերպով գործի անցավ, ամեն կերպ աշխատելով արդարացնել իր նկատմամբ եղած մեծ վստահությունը, օգնել ուսումնարա-



նի ղեկավարությանը աշխատանքում տեղ գտած թերությունները վերացնելու, ուսումնա-դաստիարակչական գործը ամուր հիմքերի վրա դնելու համար։ Պարտկազմակերպության ժողովներում նա սկզբունքային դիրքերից (հակառակը ոչ ոք չկարողացավ ապացուցել) վեր է հանում ինչպես ուսումնարանում, այնպես էլ դիրեկտորի և մյուսների աշխատանքում եղած բացերը։ Կարդում ես այդ ժողովների արձանագրությունները և չես կարող չհիանալ պարտկազմակերպության քարտուղարի մարտականությամբ, նրա ուղղամտությամբ, ընդհանուր գործի համար նրա սրտացավությամբ։ Պարտիական ժողովների արձանագրություններից, ինչպես նաև անձնական զրույցներից մենք ստացանք նաև մեկ այլ, բոլորովին հակառակ տպավորություն։ Ուսումնարանի դիրեկտոր ընկ. Ա. Գրիգորյանը չափազանց գոհ է իր ղեկավարած հիմնարկի գործերի վիճակից, տառացիորեն ոչ մի թերություն կամ սխալ չի տեսնում և ամեն ինչին նայում է վարդագույն ակնոցներով։

Միևնույն հաստատության երկու ղեկավար աշխատողներ, երկու բոլորովին հակադիր տրամադրություններ և կարծիքներ։ Հասկանալի է, իհարկե, որ վաղ թե ուշ այդ կարծիքները պետք է բախվեին և բախվեցին, ու եթե այդ պրոցեսը տեղի ունենար առողջ, սկզբունքային հողի վրա կծնվեր ճշմարտությունը, կշահեր ընդհանուր գործը։ Սակայն այդպես չեղավ, իսկ չեղավ, որովհետև նոր մարդուն ճնշեց հինը, անհատապաշտական հոգեբանության և վիրավորված ինքնասիրության զգացումը, գլուխ բարձրացրեց փառամոլության կիրքը։ Այո՛, դժբախտաբար մեր առանձին մարդկանց մոտ դեռևս ամուր է նստած այդ կիրքը և այն իրեն զգացնել է տալիս, երբ «եսը», այսպես ասած, վիրավորված է զգում իրեն։

Այդպես պատահեց նաև, շախմատային լեզվով ասած, Հարությունյան—Գրիգորյան մատչում։ Առաջինը սկզբնական շրջանում գնաց իր ընտրած ճիշտ, սկզբունքային ճանապարհով, իսկ երկրորդը անզոր գտնվեց իր մեջ խեղդելու հիվանդոտ ինքնասիրության զգացումը և բռնեց կոմունիստին ու ղեկավար աշխատողին ոչ վայել ուղի։

Ճիշտ է, ընկ. Գրիգորյա՛ն, Դուք վարչական աշխատանքում նոր եք, և գուցե դեռևս շատ ու շատ հարցեր Ձեզ համար պարզ չեն և առանձին սխալներն ու բացթողումները՝ անխուսափելի։ Բայց Դուք էլ հաստատ համոզված էիք, որ իրոք թույլ եք տվել կոպիտ սխալներ և ուղղամտությունը պահանջում էր շիտակ ու անկեղծ ընդունելու Ձեր հասցեին եղած դիտողությունները, մտածելու եղած թերությունները հաղթահարելու մասին։ Տվյալ մոմենտին, սակայն, դուք ուժ չունեցաք սառը և խոր դատելու, ընդհակառակը, Ձեր մեջ ավելի զորեղ գտնվեց վիրավորված ինքնասիրության զգացումը, այն մտայնությունը, թե ինչպե՞ս է մի երիտասարդ և շարքային ուսուցչուհի համարձակվում քննադատել Ձեզ, բարձրացնել ուսումնարանին և կոլեկտիվին հուզող հարցեր և վճռականորեն ու հետևողական կերպով պահանջել դրանց լուծումը։ Դուք համարձակություն չունեցաք ուղիղ նայելու ճշմարտությանը և բռնեցիք մեր պարտիայի կողմից վաղուց դատապարտված ուղին՝ քննադատողին ուղղակի կամ անուղղակի հալածելու և վիրավորելու ճանապարհը։ Հակառակն ապացուցել չեք կարող, այլապես դուք անմիջապես ձեռնամուխ կլինեիք այն արմատական հարցերի լուծմանը, որոնց մասին այնպես կրքոտ խոսեց Ն. Հարությունյանը դեռևս 1963 թվականի մայիսի 24-ի ժողովում և որոնց շուտափույթ կատարումը Ձեզանից պահանջում էր պարտկազմակերպության նույն ժողովի որոշումը։ Բայց դուք մատը մատին չխփեցիք այնքան ժամանակ, մինչև ՀԿՊ Ղափանի արդյունաբերական-արտադրական կոմիտեի բյուրոն համապատասխան որոշում կայացրեց։

Նկատելով, որ ուսումնարանի դիրեկտորը ցավագին է ընդունում իր հասցեին եղած դիտողությունները, քիչ բան է անում թերությունները շտկելու համար, պարտկազմակերպության քարտուղարը կատարվածի մասին տեղյակ պահեց ՀԿՊ Ղափանի արդյունաբերական-արտադրական կոմիտեին։ Պարտիական կոմիտեն 1963 թվականի հուլիսի 16-ի իր բյուրոյում արձանագրեց, որ իրոք «Բժշկական ուսումնարանի դիրեկտոր, ՍՄԿՊ անդամության թեկնածու Աղավնիկ Գրիգորյանը թեկնածուական ժամանակաշրջանում պակաս է մուծել 20 ռ. 71 կոպեկ պարտիական անդամավճար։ Վարչական ստաժը 1963 թ. հունվարից ֆինբաժնում սխալ գրանցելու պատճառով 5 ամսվա ընթացքում ավելի են վարձատրել 85 ռուբլի (5—10 տարվա դրույքով)։ Առանց ավարտական վկայականի 1962—63 ուստարում առաջին կուրս են ընդունել Ֆլորա Աղագուլյանին։ Ուսանողներին թոշակավորելու համար հանձնաժողով չի ստեղծված, որի պատճառով այդ գործում տեղ են գտել անճշտություններ։ Դիրեկտորի կողմից ուսումնական տարվա ընթացքում սահմանված քանակությամբ դասաժամեր չի լսել...

Հաշվապահ Լենա Անտոնյանը, որն աշխատում է 1961 թվականի հոկտեմբերի մեկից, ստորագրությունը բանկում չի հաստատված և ֆինանսական փաստաթղթերը ձևակերպվում են առանց հաշվապահի ստորագրության»։ Այս ամենի համար պարտիական կոմիտեի բյուրոն ընկ. Ա. Գրիգորյանին միայն խիստ զգուշացրել է։

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԲԱԽՈՒՄՆԵՐԸ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԼԱԳԵՐՈՒՄ

ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԸ վերջին շահագործողական սոցիալական սիստեմն է, որի բազմապիսի հակասությունները պայմանավորեցին նրա պատմական դատապարտվածությունը և հող ստեղծեցին հասարակության կազմակերպման ավելի բարձր ձևին՝ կոմունիզմին անցնելու համար։ Հենց այդ անցումն է արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը։

Կոմունիզմը դարձել է արդիականության ամենաազդեցիկ ուժը և աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային կասեցնել նրա հաղթարշավը։ Պոլ Վայան Կուտյուրեի պատկերավոր արտահայտությամբ, կոմունիզմը մարդկության պատանեկությունն է և այն նախապատրաստում է «երգերով լի» վաղվա օրը։

Սոցիալիզմի առաջացումը նշանավորեց ճնշված ժողովուրդների ազատագրության դարագլխի սկիզբը։ Նրանք «թևակոխել են իրենց զարգացման մի նոր ժամանակաշրջան։ Նրանք ոտքի են ելել որպես նոր կյանքի ստեղծողներ և միջազգային քաղաքականության ակտիվ մասնակիցներ, որպես իմպերիալիզմի կործանման ռևոլյուցիոն ուժ» (ՍՄԿՊ ծրագրից)։

Արդեն քաղաքական անկախություն են նվաճել նախկին գաղութային և կիսագաղութային 54 երկրներ, որոնց բաժին է ընկնում աշխարհի (առանց սոցիալիստական երկրների) բնակչության 42,5 տոկոսից ավելին և տարածության 55,7 տոկոսը։ Ներկայումս իմպերիալիստական խոշոր տերություններին (ԱՄՆ, Անգլիա, Ֆրանսիա, ԳՖՌ, Ճապոնիա, Իտալիա) ընկնում է երկրագնդի բնակչության 16 և տարածության 8 տոկոսը։

## ԵՐԿՈՒ ՏԵՆԴԵՆՑ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԼԱԳԵՐՈՒՄ

Ներկայումս իմպերիալիզմի լագերում համատեղ գործում են երկու տենդենց։ Ռևոլյուցիոն բնույթի սոցիալական այն վերափոխումները, որ կատարվեցին հետպատերազմյան տարիներին, չեն կարող անտեսել անգամ բուրժուազիայի ամենապնդաճակատ ներկայացուցիչները։ Սոցիալիզմի վերաճումը համաշխարհային սիստեմի և նրա անընդհատ աճող հզորությունը, կոմունիստական շարժման հաջողությունները, ազգային-ազատագրական ռևոլյուցիաները, իմպերիալիզմի լագերում միավորման, տնտեսական, քաղաքական և ռազմական ուժերի ինտեգրացման՝ համախմբման ու կենտրոնացման տենդենց են ծնում։ Մյուս կողմից՝ նույն օրինաչափությամբ գործում են կապիտալիզմի օբյեկտիվ օրենքները, որոնք արտացոլվում են իմպերիալիզմը բզկտող հակասություններում։ Այսպիսով, իմպերիալիզմը զարգանում է «միավորիչ» և «բաժանարար» տենդենցների փոխգործողության պայմաններում։ Սակայն իրենց նշանակությամբ ու քաղաքական հետևանքներով զարգացման այդ երկու իրարամերժ ձգտումները հավասարազոր չեն։ Տվյալ դեպքում իրականության երևույթներին ճիշտ գնահատական տալու համար անհրաժեշտ է հակասությունների շղթայում որսալ հիմնական հակասությունը, որը տվյալ պրոցեսի, էտապի հիմնական բովանդակության ադեկվատ արտացոլումն է, զարգացման վճռական ազդակը։

Արդի դարաշրջանի հիմնական հակասությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև եղած հակասությունն է։ Այդ հակադիր սիստեմների միջև ծավալվող պայքարն ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը, որի լուծումը կհանգեցնի կապիտալիզմի կործանմանն ու սոցիալիզմի հաղթանակին համաշխարհային մասշտաբով։ Ահա թե ինչու սոցիալիզմի նկատմամբ այնպիսի խոր ատելությամբ են համակված մոնոպոլիստական կապիտալի ասպետները։ Գերիշխելով կապիտալիստական երկրներում, մոնոպոլիստական միությունները իրենց արտոնությունները ու հարստությունը պահպանելու նպատակով դիմում են իրենց ժառանգական մեղքին՝ ռազմամոլությանը, այդ հողի վրա միավորելով իրենց ուժերը։ Վաղվա նկատմամբ ունեցած անվստահությունից կատաղած, կոմունիզմի գաղափարների տարածումից ու դրանց կենսագործումից սարսափած մոնոպոլիստական բուրժուազիան անզուսպ մոլեռանդությամբ ձգտում է իր շուրջը համախմբել ժամանակակից ռեակցիոն ուժերը՝ հակակոմունիստական միասնական ճակատ ստեղծելու համար։ Եվ այդ տենդենցը կապիտալիստական աշխարհում գերակշռում է։

Կապիտալիստական գլխավոր պետությունների կառավարությունների քաղաքականության մեջ բացահայտորեն դրսևորվում է, այսպես կոչված, «ազատ աշխարհը» «Կոմունիստական վտանգից» պաշտպանելու գիծը։ Եվ, որպես միջազգային ռեակցիայի գլխավոր հենարան հանդես է գալիս ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիան, որն ստանձնել է կապիտալիզմի «փրկչի» դերը։ Կազմակերպվում են իմպերիալիստական ագրեսիվ ռազմական խմբավորումներ ու «սրբազան դաշինքներ»։ Լայնորեն տարածվում է կապիտալիստական աշխարհի տնտեսական ու քաղաքական ուժերի «ինտեգրացիայի» գաղափարը։ Այդ բոլորը ծառայում է մեկ հիմնական նպատակի՝ հաղթահարել միջիմպերիալիստական հակասությունները կամ առնվազն արտաքինից քողարկել կապիտալիզմը բզկտող հակասությունները կամ ապահովել միասնական գիծ կոմունիզմի դեմ մղվող պայքարում։

Սակայն այդ նշանակո՞ւմ է արդյոք, թե կապիտալիզմը .փոխվել է, թե անդառնալիորեն չքացել են այն հակասությունները, որոնք մեկ սերնդի կյանքի ընթացքում հասցրին երկու համաշխարհային արյունահեղությունների, թե՞ ներկայումս կապիտալիզմը զերծ է բաժանարար ձգտումներ ծնող հակասություններից, և միջիմպերիալիստական մրցակցային պայքարը մարել է։ Անշուշտ, ո՛չ։

Մեր օրերում, երբ փոխվել է պատերազմի բնույթը, որն իր արտահայտությունն է գտնում ոչ թե քանակական փոփոխությունների դինամիկայի, այլ քանակից որակին անցնելու դիալեկտիկայի մեջ, հարկավոր է տեսնել և ճիշտ վերլուծել միջիմպերիալիստական հակասությունները, անհրաժեշտության դեպքում օգտագործել դրանք խաղաղության թշնամիների չարանենգ գիտավորությունները խափանելու համար։

## ԱՆՀԱՄԱՉԱՓ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ՄՐՑԱԿՑԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԻ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ

Ներկայումս 200 խոշոր մոնոպոլիստական միություններ իրենց ձեռքում են կենտրոնացրել համաշխարհային կապիտալիստական արտադրության մոտ մեկ երրորդը։ Իսկ մոնոպոլիաների տիրապետությունն ուժեղացնում է կապիտալիզմի զարգացման անհամաչափությունը և ընդլայնում մրցակցային պայքարի շրջանակները։

Ներկա էտապում, երբ կապիտալիզմն ամբողջովին վերաճել է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, իրադրությունն իմպերիալիստական աշխարհում ավելի է բարդացել։ Կապիտալիստական պետությունները հատուկ միջոցառումների են դիմում խոշոր մոնոպոլիաների շահերը պաշտպանելու նպատակով։ Դա մեկ ընդհանուր մեխանիզմի մեջ մոնոպոլիաների հզորության և պետական իշխանության միաձուլման դրսևորումներից մեկն է։ Մի կողմից պետության նպատակն է ապահովել այդ մոնոպոլիաների շահերը ներքին շուկայում՝ մանր և միջին ձեռնարկությունների և, մյուս կողմից՝ համաշխարհային շուկայում, օտարերկրյա մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում։ Գործնականում մրցակցային պայքարը վերաճում է պայքարի՝ խոշոր իմպերիալիստական տերությունների միջև համաշխարհային կապիտալիստական շուկայում տիրապետության հասնելու համար։ Այսպիսով, իմպերիալիստական պետությունները դառնում են ո՛չ միայն մրցակցային պայքարի գործիք, այլև դրա օբյեկտներից մեկը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից անմիջապես հետո կապիտալիզմի անհամաչափ զարգացման օրենքի գործողությունը փոխեց ուժերի հարաբերակցությունը իմպերիալիզմի աշխարհում, հօգուտ ԱՄՆ-ի։ Ամերիկյան մոնոպոլիստները ազատ մանևրում էին կապիտալիստական շուկայում, բազմապատկելով իրենց եկամուտները։ Դա հիմնականում բացատրվում էր նրանով, որ Գերմանիան ու Ճապոնիան որպես պարտված պետություններ, ժամանակավորապես շարքից դուրս եկան, իսկ Անգլիան ու Ֆրանսիան պատերազմի հետևանքով զգալի չափով թուլացան։ Հետևապես, ամերիկյան իմպերիալիզմի զգալի գերազանցությունը ոչ այնքան բացատրվում էր նրա հզորությամբ ու դիրքերի ամրապնդմամբ, որքան պարտնյորների մրցունակության թուլացմամբ։ Եվ բավական էր պատմական որոշակի ժամանակաշրջան, որպեսզի այդ երկրները ոտքի կանգնեին, և ամերիկյան մոնոպոլիստական միությունների գործերը ծանրացան։ Պայքարը համաշխարհային կապիտալիստական շուկայում իր նորմալ հունի մեջ մտավ։ Նորից ասպարեզը մնաց անհամաչափության օրենքին։

Հակասությունները կապիտալիստական խոշոր տերությունների միջև ծավալվում են միջազգային առևտրի, կապիտալի արտահանման և վալյուտային ոլորտներում։ ՍՄԿՊ ծրագրում ասված է, որ «Իմպերիալիզմի լագերում մրցակցային սուր պայքար է մղվում վաճառահանման շուկաների, կապիտալի ներդրման ոլորտների, հումքի աղբյուրների համար։ Այդ պայքարն է՛լ ավելի սուր բնույթ է ստանում, մանավանդ, որ

կապիտալիզմի տիրապետության տերիտորիալ ոլորտը խիստ նեղացել էր։

Երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ Արևմտյան Եվրոպան երեք անգամ ավելի շատ ապրանքներ էր արտահանում, քան ԱՄՆ-ը։ Դրությունն արմատապես փոխվեց պատերազմից անմիջապես հետո, երբ ԱՄՆ-ը ժամանակավորապես ազատվեց իր մրցակիցների գրոհից, որոնք այն ժամանակ անզոր էին լուրջ դիմադրություն ցույց տալու իրենց անդրատլանտյան հակառակորդին։ Իսկ 50-ական թվականների վերջերին արևմտաեվրոպական մոնոպոլիաներն արդեն այնքան էին ամրապնդվել ու վերականգնել իրենց վաղեմի մրցունակությունը, որ ակտիվ հարձակում սկսեցին ամերիկյան մոնոպոլիստական միությունների դիրքերի վրա։ Այսպես, 1937 թվականին ԱՄՆ-ին բաժին էր ընկնում կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի 41,4, Անգլիային՝ 12,5, Ֆրանսիային՝ 6, Գերմանիային՝ 9 և Ճապոնիային՝ 4,8 տոկոսը։ Հետպատերազմյան առաջին տարիները բնորոշ էին ԱՄՆ-ի հետագա առաջխաղացմամբ։ 1948 թվականին Ամերիկայի արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը կապիտալիստական արտադրության մեջ հասավ 53,4 տոկոսի, մինչդեռ Անգլիայինն իջավ 11,2, Ֆրանսիայինը 3,9, Գերմանիայինը՝ 3,6, Ճապոնիայինը՝ 1 տոկոսի։ Մի քանի տարի անց իրավիճակը լրջորեն փոխվեց։ Արդեն 1962 թվականին ԱՄՆ-ին բաժին էր ընկնում կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության 43,6 տոկոսը այն ժամանակ, երբ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի բաժինն աճեց, հասնելով 8,9 տոկոսի, Ֆրանսիայինը՝ 5,4 տոկոսի։ Ինչ վերաբերում է Անգլիային, ապա նրա տեսակարար կշռի մեջ անկման տենդենց է նկատվում։ 1962 թվականին նրան բաժին էր ընկնում 8,8 տոկոսը։

Այս տեսակետից հատկանշական է Արևմտյան Գերմանիայի առաջընթացը։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում ԱՄՆ-ը հակակոմունիստական ռազմական բլոկներ կազմելու մոլուցքով համակված որոշակի շահագրգռվածություն ցուցաբերեց արևմտագերմանական ռազմատնտեսական պոտենցիալը վերականգնելու մեջ։ Բավական է ասել, որ 1950—60 թթ. ընկած ժամանակաշրջանում ԱՄՆ-ը Արևմտյան Գերմանիային տվեց 892 մլն. դոլարի ռազմական օգնություն։

Ֆինանսավորելով Արևմտյան Գերմանիային՝ ԱՄՆ-ի մոնոպոլիստական շրջաններն օբյեկտիվորեն նպաստեցին այն բանին, որ Արևմտյան Գերմանիան նորից համաշխարհային կապիտալիստական շուկա դուրս եկավ, որպես իր դաշնակիցների հզոր մրցակից։

Օգտագործելով երկու սիստեմների, ինչպես նաև հենց իմպերիալիստական մյուս տերությունների միջև եղած հակասությունները՝ Արևմտյան Գերմանիան գնալով գերիշխող դիրքեր է նվաճում կապիտալիստական Եվրոպայում։ ԳՖՌ-ն ներկայումս իր տնտեսական պոտենցիալով մոտավորապես երկու անգամ ուժեղ է Ֆրանսիայից։ Եթե 1953—1962 թվականին ընկած ժամանակաշրջանում ԱՄՆ-ի տեսակարար կշիռը համաշխարհային կապիտալիստական արտադրության մեջ ընկավ ավելի քան 7, Անգլիայինը՝ 1,3 տոկոսով, ապա Արևմտյան Գերմանիայինը բարձրացավ 3,3 տոկոսով։ Համաշխարհային կապիտալիստական արտադրության մեջ վերջինիս բաժինը հավասար է ամբողջ Գերմանիայի 1937 թվականի բաժնին։ ԳՖՌ-ի ազգային համախառն արտադրանքն այժմ չի զիջում Անգլիայի ազգային համախառն արտադրանքին։

Համաշխարհային կապիտալիստական արդյունաբերական արտադրության մեջ կապիտալիստական տերությունների տնտեսական ուժերի հարաբերակցության փոփոխությունն ուղեկցվում է այդ հարաբերակցության փոփոխությամբ ապրանքների արտահանման բնագավառում։ Բերված աղյուսակը պարզորոշ պատկերացում է տալիս այս ասպարեզում տիրող իրավիճակի մասին։

Առանձին երկրների բաժինը կապիտալիստական աշխարհի ընդհանուր արտահանման մեջ (տոկոսներով)

| | 1937 | 1947 | 1962 |
|---|---|---|---|
| ԱՄՆ | 14,2 | 32,5 | 17,3 |
| Ճապոնիա | 5,1 | 0,4 | 4,0 |
| Արևմտյան Եվրոպա | 42,9 | 28,5 | 46,9 |
| այդ թվում | | | |
| ԳՖՌ | 10,1 * | 0,5 | 10,7 |
| Անգլիա | 11,2 | 9,8 | 8,6 |
| Ֆրանսիա | 4,1 | 4,0 | 6,0 |
| Իտալիա | 2,4 | 1,4 | 3,8 |

Ճիշտ է, ներկայումս ԱՄՆ-ի տեսակարար կշիռը դեռևս ավելի բարձր է, քան 1937 թվականին, սակայն այն փաստորեն իջել է նախապատերազմյան մաքսիմումի մակարդակին՝ 17 տոկոսի (1929 թ.)։ Դրա կողքին ակնհայտ են Արևմտյան Գերմանիայի ու Ֆրանսիայի վերելքը և Անգլիայի վայրէջքը (համեմատությունը կատարվում է արևմտաեվրոպական պետությունների զարգացման ասպեկտով)։

50-ական թվականներին Անգլիան կորցրեց իր տրադիցիոն II տեղը համաշխարհային կապիտալիստական արտահանության մեջ, իսկ 1962 թվականին այն զիջեց ԳՖՌ-ին։ Պատահական չէ, որ անգլիական «էկոնոմիստ» ամսագիրը գրել է, որ Անգլիան երկրորդ կարգի պետության է վերածվել։ 1950-ից 1961 թվականներն ընկած ժամանակաշրջանում ԳՖՌ-ի արտաքին առևտրի ծավալը մեծացավ 10 անգամ։ 1961 թվականի երկրորդ կեսին արևմտագերմանական մոնոպոլիաները պատրաստի արդյունաբերական արտադրանքի արտահանման գծով հավասարվեցին ամերիկյան տրեստներին և առաջին տեղը դուրս գալու ռեալ հնարավորություններ ունեն, եթե նկատի ունենանք արևմտագերմանական մոնոպոլիաների ֆինանսա-տնտեսական հզորությունը։ Բավական է հիշեցնել, որ ԳՖՌ-ի արտահանած պատրաստի արտադրանքի ինքնարժեքը 18—20 տոկոսով ցածր է ամերիկյանից։ Այս հանգամանքը հնարավորություն է տալիս դիմել դեմպինգի մեթոդին, որպես մի միջոց ԱՄՆ-ին արտաքին շուկաներից դուրս մղելու և դրանց վրա իր թաթը դնելու համար։ Բնական է, որ ԱՄՆ-ի հետ վստահորեն մրցող արևմտագերմանական մոնոպոլիաների համար այնքան էլ դժվար չէ պայքարը անգլիական և ֆրանսիական մրցակիցների դեմ։

Արևմտյան Եվրոպայի կոնտինենտալ երկրների տնտեսական հզորության ուժեղացումը, ԱՄՆ-ի ազդեցության թուլացման և Անգլիայի տնտեսական լճացման պայմաններում, իմպերիալիստական տերությունների միջև հակասությունների սրման գործոններից մեկն է։

Շուկաների համար մղվող պայքարը զուգորդվում է կապիտալի ներդրման ոլորտների համար մղվող պայքարի հետ։ Այս հարցում ԱՄՆ-ի գերազանցությունն անվիճելի է. բավական է ասել, որ նրան բաժին է ընկնում բոլոր կապիտալիստական երկրների արտասահմանյան կապիտալ ներդրումների կեսից ավելին։ 1962 թվականի վերջին ԱՄՆ-ի ներդրումները նախապատերազմյան տարիների համեմատությամբ ավելացան 7 անգամ, հասնելով 80 մլրդ. դոլարի։ Ամերիկյան մոնոպոլիաների հետ այս գործում որոշ չափով մրցում են անգլիական և, մասամբ էլ, ֆրանսիական մոնոպոլիստական միությունները։ Եվրոպայում Անգլիան ապահովել է իր առաջնությունը։ Նրա կապիտալ ներդրումներն արտասահմանում 9 անգամ գերազանցում են ԳՖՌ-ի ներդրումները։

* Ամբողջ գերմանիան

## ՆԱՏՕ-ի երկրների ռազմական ԾԱԽՍԵՐԸ

ՆԱՏՕ-ի գոյության տասնհինգ տարվա ընթացքում այդ ագրեսիվ կազմակերպության մասնակից երկրների ռազմական ծախսերը 1963 թվականի համադրելի գներով կազմեցին 912,8 միլիարդ դոլար (832,1 միլիարդ ընթացիկ գներով):

Ռազմականացումը որպես մի վիթխարի բեռ ընկած է ՆԱՏՕ-ի երկրների ֆինանսների վրա. նրանց ընդհանուր բյուջետային ծախսումների 51 տոկոսը կազմում են ուղղակի ռազմական ծախսերը:

Եթե 15 տարվա ընթացքում ռազմական ծախսերի վրա ՆԱՏՕ-ի երկրների մսխած 913 միլիարդ դոլարը հատկացվեր քաղաքացիական կարիքներին, ապա այդ միջոցներով, արևմտաեվրոպական միջին գներով հաշված, հնարավոր կլիներ կառուցել 2075 հազար դպրոց (յուրաքանչյուրը 600 աշակերտի համար), կամ 651 հազար ջերմաէլեկտրակայան, յուրաքանչյուրը 100 հազար կիլովատ կարողությամբ, կամ 304 հազար խոշոր ցեմենտի գործարան, կամ 14710 օվկիանոսային խոշոր նավեր, կամ Ասուանի նման 956 ամբարտակ:

Սպառազինությունների մրցավազքից ամենից ավելի տուժում են աշխատավոր մասսաները: Միայն ուղղակի ռազմական ծախսերը ԱՄՆ-ում 1963 թվականին բնակչության մեկ շնչի հաշվով կազմեցին 289 դոլար. իսկ արևմտաեվրոպական երկրներում՝ 61 դոլար: Այդ գումարները բնակչությունից գանձվում են հարկերի ձևով:

## ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐԹՄԱՆ, ԹԵ ՍՐՄԱՆ ՄԻՋՈՑ

*Հայտնի է, որ համաշխարհային պատերազմներն ու տնտեսական ճգնաժամերը, միլիտարիզմը և քաղաքական ցնցումներն արագացրին մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի։ Ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունը հօգուտ սոցիալիզմի և դասակարգային շահերը հարկադրում են իմպերիալիստական տերություններին մեթոդներ և ուղիներ որոնելու իրենց միջև ծավալվող հակասությունները մեղմացնելու ու հաղթահարելու համար։ Սակայն մյուս կողմից խոշոր մոնոպոլիաների ու պետության շահերի միաձուլումն ու համատեղ գործունեությունը օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծում իմպերիալիստական տերությունների միջև նոր բախումների համար։*

*Իմպերիալիստական պետությունը մոնոպոլիստական բուրժուազիայի գործերի կառավարման կոմիտե է։ Կապիտալիստական արտադրական հարաբերությունները խանգարում են ժամանակակից արտադրողական ուժերին լիաթոք շնչելու։ Իմպերիալիստական բուրժուազիան ձգտում է արտադրողական ուժերը պահպանել պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի շրջանակներում։ Այդ նպատակով նա դիմում է «ինտեգրացիայի» քաղաքականությանը։ «Ինտեգրացիայի» լոզունգի տակ ստեղծվում են նոր միջպետական կազմակերպություններ, որոնք գործնականում կապիտալիստների խոշորագույն միությունների միջև համաշխարհային կապիտալիստական շուկան բաժանելու նոր ձևեր են և ուժեղացնում են հակասություններն ու պայքարը իմպերիալիստական երկրների միջև։ Միաժամանակ «ինտեգրացիան» ավելի ուժեղ իմպերիալիստական պետությունների կողմից թույլ պարտնյորների էկոնոմիկայի մեջ թափանցելու ձև է։*

*«Ինտեգրացիան» իր դրսևորումն է գտնում Արևմտյան Եվրոպայում վերջին տարիներին կապիտալիստական տնտեսական խմբավորումներ ստեղծելու մեջ։ Դեռևս 1957 թվականին ստեղծվեց, այսպես կոչված, «ընդհանուր շուկան», որն ուժի մեջ մտավ 1959 թվականին։ Դրա մեջ մտան Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը։ Հենց սկզբից էլ Անգլիան բացասական վերաբերմունք ցուցաբերեց այդ շուկայի նկատմամբ։ Պարզ էր, որ այդ շուկան սուր ծայրով ուղղված է Անգլիայի տնտեսական շահերի դեմ և սպառնում է դուրս մղել անգլիական ապրանքներն արևմտաեվրոպական շուկաներից։ Ջգտելով իր եվրոպական մրցակիցներին պահել որոշակի շրջանակներում՝ Անգլիան փորձեց այդ շուկան ընդլայնել, այն վերածելով «ազատ առևտրի գոտու»։ Այդ պլանի իրագործումը ոչ մի վտանգ չէր ներկայացնում Արևմտյան Գերմանիայի համար, քանի որ դրա առաջատար դրությունը Արևմտյան Եվրոպայի արդյունաբերական արտադրության մեջ բոլոր դեպքերում ապահովում էր գերակշռություն մյուս անդամների նկատմամբ։ Սակայն այլ կերպ էին մտածում Ֆրանսիայի կառավարող շրջանները։ Հաղթեցին Անգլիային մեկուսացնելու և Եվրոպական մայր ցամաքում արևմտագերմանական «բարեկամի» հետ անբաժան տիրապետելու տենդենցները։ Անգլիական նախագիծը վիժեցվեց։ Դրան հաջորդեց Անգլիայի անմիջական նախաձեռնությամբ «Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիայի» ստեղծումը, այսպես կոչված՝ «յոթի շուկան» ի հակակշիռ «վեցի շուկայի»։ Արևմտաեվրոպական տերությունների սեպարատիստական վարքագիծը խիստ մտահոգություն պատճառեց Վաշինգտոնին։*

*Ամերիկյան կառավարող շրջաններն իմպերիալիզմի ուժերը կոնսոլիդացնելու և իրենց արևմտաեվրոպական դաշնակիցների տարաձայնությունները հաղթահարելու նպատակով փորձեցին միավորել նրանց։ Եվրոպայում երևան եկավ «վեցի շուկայի» մեջ Անգլիայի մասնակցության գաղափարը։ Այդ ուղղությամբ որոշակի քայլեր կատարվեցին։ Բանակցությունների ընթացքն ու հետևանքները բավականաչափ համոզիչ կերպով ցույց տվեցին «վեցի շուկայի» հակաանգլիական «ուղղությունը»։ Ֆրանսիական կառավարող շրջաններում հակաանգլիական տրամադրությունները զգացվում էին մշտապես։ 1962 թվականին Բրյուսելում տեղի ունեցած բանակցությունների ժամանակ ֆրանսիական կողմն աներկդիմորեն արեց ամեն ինչ Անգլիային «Փոքր Եվրոպայի» մեջ թույլ չտալու համար։*

*Ֆրանսիան «վեցի շուկան» համարում է միջուկային հարվածային ուժ ստեղծելու և ՆԱՏՕ-ում «անգլո-սաքսերի տիրապետությանը» հակադրվելու մի գործուն միջոց։ Ֆրանսիական պաշտոնական անձինք չեն թաքցնում իրենց այն կարծիքը, թե ԱՄՆ-ի շահագրգռվածությունը Անգլիային «վեցյակի» անդամ դարձնելու մեջ պայմանավորված է հանձին Անգլիայի «ընդհանուր շուկայում» գործակալ պահելու նրա դիտավորությամբ։ Բացի դրանից ամերիկյան իմպերիալիստները, ձգտելով մեկ ընդհանուր միավորման մեջ կենտրոնացնել իրենց արևմտաեվրոպական դաշնակիցներին, հետապնդում են երկու հիմնական նպատակ. մի կողմից՝ ուժեղացնել իրենց տնտեսական տիրապետությունն Արևմտյան Եվրոպայում և մյուս կողմից՝ վերահսկողություն սահմանել իմպերիալիզմի ամբողջ ռազմական մեքենայի վրա։*

*«Վեցյակի» մեջ Ֆրանսիային ապահովված է մեծ տերության «արժանի տեղը», նա ունի ատոմային զենք։ Անգլիայի մուտքը «վեցյակի մեջ» Ֆրանսիային անմիջապես ետ կմղի երկրորդ պլան։ Ահա թե ինչու Ֆրանսիայի կառավարողներին հաջողվեց վիժեցնել «Փոքր Եվրոպայում» Անգլիայի մասնակցության պլանը։*

*Հատկանշական է, որ Անգլիային «վեցյակին» մասնակից դարձնելու կապակցությամբ տեղի ունեցած բանակցությունների ձախողումից հետո, 1963 թվականի հունվարին, Ֆրանսիայի և Բոննի միջև դաշինք ստորագրվեց։ Դա ոչ այլ ինչ էր, եթե ոչ ՆԱՏՕ-ի ներսում ռազմա-քաղաքական սեպարատ խմբավորման առաջացում։ Եվ, ընդհանրապես, պետք է ընդգծել, որ վաթսունական թվականների սկզբներից ակնառու կերպով դրսևորվեցին Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի մերձեցման տենդենցները։ Ընդ որում, Բոննի կառավարողները կարողանում են խորամանկորեն օգտագործել այն հակասությունները, որոնք ժամանակ առ ժամանակ պոռթկում են, մի կողմից՝ Ֆրանսիայի, մյուս կողմից՝ ԱՄՆ-ի ու Անգլիայի միջև։ Այդ հակասությունները նպաստավոր արտաքին քաղաքական իրադրություն են ստեղծում Արևմտյան Գերմանիայի համար, հնարավորություն տալով նրան մանևրելու։*

*Արևմտյան Գերմանիան, չնայած իր տնտեսական հզորության ուժեղացմանը, դեռևս բացահայտորեն չի ընդհարվում ԱՄՆ-ի հետ, մնալով առայժմ նրա հուսալի դաշնակիցը Արևմտյան Եվրոպայում։ Անգլիայի հետ նա պայքար է մղում ո՛չ միայն արտաքին շուկաների և Եվրոպայի արևմտյան մասում իր հեգեմոն դերը ապահովելու, այլև իմպերիալիստական լագերում ԱՄՆ-ի գլխավոր դաշնակցի տեղը գրավելու համար։ Անկախ նրանից՝ Անգլիան կներգրավվի «Փոքր Եվրոպայում» թե ոչ, արևմտագերմանական իմպերիալիստները համոզված են, որ իմպերիալիստական այդ նվագախմբում առաջին ջութակն իրենցն է լինելու։ Արևմտյան Եվրոպայում առաջնակարգ դեր պետք է խաղան ԳՖՌ-ն ու Ֆրանսիան. այս է Բոննի կառավարողների կարծիքը։ Քրիստոնյա դեմոկրատական միության ղեկավարության հետ ունեցած զրույցի ժամանակ, 1962 թվականի սեպտեմբերի 5-ին, Ադենաուերը հայտարարեց. «Բրիտանացիները պետք է վերջապես հասկանան, որ նրանք այլևս չեն կարող ղեկավարել մայր ցամաքը։ Մայր ցամաքի ղեկավարներն են Գերմանիան և Ֆրանսիան»։*

*Անկասկած, այսպիսի հավաստիացումներն ու քաղաքական առանձին միջոցառումներ Ֆրանսիայի հետ մերձենալու ուղղությամբ և նրա դերն ընդգծող հայտարարությունները չեն կարող թաքցնել Եվրոպական տնտեսական համագործակցության ներսում գործող հակասությունները։ Այստեղ Արևմտյան Գերմանիայի դրությունը խիստ գերադասելի է՝ այդ խմբավորման մյուս մասնակիցների համեմատությամբ։ Փաստորեն Ֆրանսիան «վեցի շուկայում» կրտսեր պարտնյորի դեր է խաղում։ Այսպես, օրինակ, ԳՖՌ-ին բաժին է ընկնում Եվրոպական տնտեսական համագործակցության երկրների համախառն արտադրանքի 40 և արդյունաբերական արտադրության 45 տոկոսը։ Այն արտադրում է պողպատի 46, ավտոմեքենաների 51 տոկոսը։ Այս համագործակցության 10 խոշորագույն մոնոպոլիստական միություններից 8-ը արևմտագերմանական են։ Գերիշխելով «վեցյակի» ներսում, ԳՖՌ-ն, այսպիսով, տնտեսական հզորության տեսակետից ապահովել է իր գերազանցությունը Եվրոպայի կապիտալիստական մյուս երկրների նկատմամբ։ «Իսկ երբ ուժի փոխհարաբերությունները փոխվել են, ապա կապիտալիզմի ժամանակ ինչը կարող է լուծել հակասությունը, եթե ոչ ուժը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 365)։*

## ԲԱԺԱՆԱՐԱՐ ՏԵՆԴԵՆՑՆԵՐԸ ՆԱՏՕ-Ի ՆԵՐՍՈՒՄ

*Ընդամենը երկու տասնամյակ է անցել այն օրից, երբ ֆաշիստական Գերմանիան ջախջախվեց հակահիտլերյան կոալիցիայի ուժերի կողմից։ Իսկ այսօր արևմտյան տերությունների և, ամենից առաջ, ԱՄՆ-ի մոնոպոլիստական ուժերի առատաձեռն ֆինանսական օգնության շնորհիվ ԳՖՌ-ն դարձել է հակակոմունիստական ֆորպոստը Արևմտյան Եվրոպայում։ Սոցիալիզմի նկատմամբ ունեցած ատելությունից կուրացած ֆինանսական օլիգարխիան զինում է բոլոր նրանց, ովքեր պատրաստակամություն են հայտնում միացնել իրենց միլիտարիստական վայնասունը հակակոմունիստական երգչախմբին։ «Վեցի շուկան» մի միջոց է արևմտագերմանական իմպերիալիստների համար Արևմտյան Եվրոպայում իրենց տիրապետությունն ապահովելու, իրենց ռազմական հզորությունը վերականգնելու և ամրապնդելու համար։ Նրանք ձգտում են այդ նպատակներին հասնել, ամենից առաջ, այսպես կոչված, Եվրոպական տնտեսական համագործակցության և համանման պետական-մոնոպոլիստական կազմակերպությունների միջոցով։*

*ԳՖՌ-ն ստացել է հավասար իրավունքներ իր դասակարգային բարեկամների լագերում, իրա-*

վանացնում է հրթիռների արտադրությունը և ձեռքը մեկնում միջուկային զենքին։ Կոնյունկտուրային նկատառումներով համագործակցելով Ֆրանսիայի կառավարող շրջանների հետ, Բոննի քաղաքագետները միացյալ ուժերով և դեռևս քողարկված ձևով խարխլում են ԱՄՆ-ի ու Անգլիայի դիրքերը Արևմտյան Եվրոպայում։

Չպետք է աչքաթող անել այն հանգամանքը, որ անգլո-ամերիկյան ազդեցության հիմքերը թուլացնելու ձգտումները նույնպես կարևոր գործոն են, որ որոշում են դը Գոլի խմբի մերձեցման իմպուլսը Բոննի հետ։ Սակայն նրանց համատեղ տնտեսական ու քաղաքական համագործակցության և հավատարմության ու բարեկամության ձգտման մասին փոխադարձ հավաստիացումների արժեքը շատ ցածր է։ Երկու կողմերն էլ հանդես են գալիս Արևմտյան Եվրոպայում գերիշխելու հավակնություններով և ցած չեն դնում մահակը։ Պրոֆեսոր Լավերնը գրում էր. «Փոքր Եվրոպայի ճակատագրին հատկապես սպառնում է այն, որ գերմանական կանցլերը տիրապետության նույնպիսի հավակնություններ ունի, ինչպես և ֆրանսիական գեներալը»։ «Ընդհանուր շուկան» ոչ միայն հակաանգլիական, այլև հակաամերիկյան երանգներ ունի։ Քրիստոնեա-դեմոկրատական միության պարագլուխներից մեկը՝ Հուտենբերգը, հույս էր հայտնում, որ ապագայում «ընդհանուր շուկայի» Եվրոպան ձեռք կբերի ԱՄՆ-ի տեխնիկական և գիտական պոտենցիալին հասնող պոտենցիալ, որից հետո, ամերիկյան տեսաբան Կիպմանի կարծիքով, Ֆրանսիան և ԳՖՌ-ն ԱՄՆ-ին կհասկացնեն, որ ամերիկացիները Եվրոպայում այլևս բան չունեն անելու։

Եվրոպական մայր ցամաքի Արևմտյան դաշնակիցների մեկուսացնող և սեպարատիստական ձգտումները փակուղու առաջ են կանգնեցրել ամերիկյան իմպերիալիզմին։ Ամեն գնով նա փորձում է թուլացնել ու հաղթահարել այն բաժանարար տենդենցներն ու անտագոնիզմը, որոնք գործում են ատլանտյան համագործակցության շրջանակներում։ ԱՄՆ-ը այսօր իր դաշնակիցների նկատմամբ աշխատում է կիրառել «համախմբի՛ր ու թելադրի՛ր» սկզբունքը։

Չնայած ամերիկյան իմպերիալիզմի դիրքերը համեմատաբար թուլացել են, կասկածից վեր է, որ ԱՄՆ-ը շարունակում է գլխավորել կապիտալիստական լագերը, հանդիսանալով ամենախոշոր համաշխարհային շահագործողը։ Սակայն փաստերը վկայում են այն մասին, որ ԱՄՆ-ի համար գնալով ավելի դժվար է դառնում իր արևմտա-եվրոպական դաշնակիցներին հաշտեցնելը և նրանց թելադրելը։

Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկը դարձել է գզվռտոցի ու փոխադարձ կշտամբանքների օջախ։ Հայտնի է, որ ՆԱՏՕ-ի գործողության ժամկետը լրանում է 1969 թվականին։ Անգլիայի նախկին պրեմիեր մինիստր Մակմիլանի հետ ունեցած հանդիպման ժամանակ դը Գոլն ուղղակի ասաց, որ Ֆրանսիան ՆԱՏՕ-ում գնալով ավելի քիչ կմասնակցի։ Ամերիկյան «Լայֆ» ամսագիրը 1963 թվականի նոյեմբերի 15-ին դը Գոլի մասին գրում էր. «Ետ կանչելով իր նավատորմը և հրաժարվելով իր պարտավորությունները կատարելուց... նա անում է ամեն ինչ, որպեսզի ՆԱՏՕ-ն վարկաբեկի... ՆԱՏՕ-ի նկատմամբ դը Գոլի թշնամանքը կարող է վիժեցնող ներգործություն ունենալ»։

Սակայն նման հարցադրման արատավորությունն աչք է ծակում։ Առնվազն միամտություն կլինի իմպերիալիստական տարաձայնությունների մոտիվները որոնել այս կամ այն քաղաքական գործչի վարքագծի մեջ։ Այն պետք է փնտրել խոր ճգնաժամի մեջ, որ ապրում է իմպերիալիզմի ամբողջ ռազմական քաղաքականությունը։

Արևմուտքում «դաշնակից» հասկացությունը խիստ հարաբերական իմաստ է ձեռք բերել։ Այս տեսակետից հատկանշական են Հյումի այն խոսքերը, որ Ամերիկան իրենց դաշնակիցն է, բայց, եթե մենք մի հայացք գցենք պատմությանը, կտեսնենք, որ եղել են դեպքեր, երբ մենք մենակ ենք մնացել։ Բացառված չէ այն հնարավորությունը, որ Անգլիան մենակ մնա։ Այդ խոսքերն արտասանվեցին Հյումի ԱՄՆ-ից վերադառնալուց անմիջապես հետո։

Այս բոլոր փաստերը պերճախոս արտահայտությունն են ՆԱՏՕ-ի ճգնաժամի։ «Լայֆը» վերջերս հանդես եկավ «ՆԱՏՕ-ի դաշինքը վտանգի մեջ է։ Ինչպես փրկել այն» խմբագրական հոդվածով։ Արևմուտքում հաճախ են խոսում այն մասին, որ հյուսիս-ատլանտյան բլոկը մեռնող դաշինք է։

Եվ, միայն միջուկային քաղաքականության հարցում չէ, որ բախվում են արևմտյան տերությունների տեսակետները։ Դը Գոլն ուղղակի հայտարարում էր, որ բանը միայն միջուկային զենք ձեռք բերելու մեջ չէ։ Հակասություններն ավելի խոր են և ընդգրկում են հարցերի մեծ շրջան։ Դրանք դրսևորվում են սոցիալիստական երկրների հանդեպ ունեցած վերաբերմունքի, նրանց հետ առևտուր անելու, ՉԺՌ-ն ճանաչելու և շատ այլ հարցերում։

1964 թվականի փետրվարին Հյումի այցելությունը ԱՄՆ և տեղի ունեցած բանակցությունները բացահայտեցին այն լուրջ տարաձայնություններն ու հակասությունները, որոնք գոյություն ունեն ԱՄՆ-ի և Անգլիայի միջև արտաքին քաղաքական մի շարք պրոբլեմների շուրջ։ Հատկապես ակնառու կերպով դրսևորվեցին իրարամերժ տեսակետները սոցիալիստական երկրների հետ առևտուր անելու հարցում։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները սոցիալիզմի լագերի նկատմամբ վարում են առևտրական կապերը կրճատելու և առհասարակ շրջափակելու կուրս։ Նման քաղաքական վարքագիծը հարվածում է արևմտաեվրոպական կապիտալիստական երկրների տնտեսական շահերին։ Ահա թե ինչու, չնայած ամերիկյան կողմի դժգոհությանը, Դուգլաս Հյումը ուղղակի հայտարարեց, որ Անգլիան մտադիր է ընդլայնելու առևտրական կապերը սոցիալիստական երկրների հետ։ ԱՄՆ-ի կառավարության որոշումը, որով դադարեցվում է օգնությունը այն երկրներին, որոնց նավերը ապրանք են տեղափոխում Կուբա, միջիմպերիալիստական հակասությունների նոր արտահայտություն է։ Չէ որ այդ երկրներից են և Անգլիան ու Ֆրանսիան։ Մի՞թե այդ հակասությունները չի արտացոլում և այն փաստը, որ միևնույն բլոկի երկու մեծ անդամները՝ Անգլիան ու Ֆրանսիան, պաշտոնապես ճանաչել են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, իսկ մյուսը՝ ԱՄՆ-ը, համառորեն շարունակում է իր պնդաճակատ քաղաքականությունն այս հարցում։

Այսպիսով, փաստերը վկայում են, որ միջիմպերիալիստական հակասությունները ծավալվում են պետական մոնոպոլիստական միությունների և ռազմական խմբավորումների ներսում, պառակտելով իմպերիալիզմի ուժերը։ Սակայն չպետք է մոռանալ այն անառարկելի փաստը, որ իրենց սոցիալական բովանդակությամբ, հակասությունների խորությամբ ու մասշտաբներով սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ծավալվող ու սրվող հակասությունները գերիշխում են միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմում, կապիտալիզմի լագերում՝ իրենց կնիքը դնելով միջպետական հարաբերությունների վրա։

ՍՄԿՊ ծրագրում ասված է. «Համաշխարհային իմպերիալիստական սիստեմը բզկտվում է խոր և սուր հակասություններից։ Աշխատանքի և կապիտալի հակամարտությունը, ժողովրդի և մոնոպոլիաների հակասությունները, աճող միլիտարիզմը, գաղութային սիստեմի տրոհվելը, իմպերիալիստական երկրների միջև եղած հակասությունները, երիտասարդ ազգային պետությունների և հին գաղութարար տերությունների միջև եղած կոնֆլիկտներն ու հակասությունները և ամենագլխավորը՝ համաշխարհային սոցիալիզմի շեշտակի աճը քայքայում ու խարխլում են իմպերիալիզմը, տանում են դեպի նրա թուլացումն ու կործանումը»։

ՍՏ. ՔՈՉԱՐՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԽՐՈՆԻԿԱ

## ԱՄՆ

● Աշխատանքի մինիստրության տվյալներով գործազուրկների թիվը ԱՄՆ-ում ավելացել է 719 հազարով և 1964 թվականի հունվարի տվյալով կազմում է 4,6 միլիոն մարդ։ Գործազուրկների բաժինը աշխատողների ընդհանուր թվի մեջ ավելացել է մինչև 5,6 տոկոս։

● Ներկայացուցիչների պալատի արտասահմանյան գործերի հանձնաժողովը հավանություն է տվել այն օրինագծին, որով 1964—65 ֆինանսական տարում թույլատրվելու է 115 միլիոն դոլար ծախսել «խաղաղության կորպուսի» գործունեության վրա, որի ֆունկցիան, ինչպես հայտնի է, թույլ զարգացած երկրներում հետախուզական աշխատանքի կազմակերպումն է։ Այդ 13 միլիոն դոլարով ավելի է, քան այս տարվա նախատեսվածն է։

● «Չեյզ Մանխետեն» բանկի տվյալներով, որոնք հրապարակվել են 1963 թվականի դեկտեմբերին, ամերիկյան ընկերությունների կապիտալ ներդրումները Արևմտյան Եվրոպայում 1962 թվականի վերջին կազմել է մոտ 8,8 միլիոն դոլար։

## ԳՖՌ

● Հունվար ամսվա ընթացքում գործազուրկների թիվը ԳՖՌ-ում աճել է ավելի քան 85 հազարով և 1964 թվականի փետրվարի սկզբին կազմել է մոտ 337 հազար մարդ։

## ՃԱՊՈՆԻԱ

● Ներկայումս Ճապոնիայում գոյություն ունեն 263 ֆիրմա՝ արտասահմանյան կապիտալի մասնակցությամբ (դրանց 78 տոկոսը կապված է ամերիկյան ընկերությունների հետ)։ Այդ ֆիրմաների բոլոր ակցիաների 58,3 տոկոսը գտնվում է ճապոնական ընկերությունների ձեռքում։

## ՀՍԿԱՆ ՓԱՍՏԵՐՈՎ

*Ինչպես հայտնի է Ասուանի ամբարտակի նախագիծը մշակվել է սովետական ականավոր հիդրոտեխնիկ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ն. Ա. Մալիշևի ղեկավարությամբ։ Ի՞նչ է ներկայացնում իրենից Ասուանի կառույցը, եթե նրա մասին խոսենք թվերի լեզվով։*

* * *

*Ասուանը կլինի աշխարհում ամենախոշոր ջրամբարը։ Նրա երկարությունը կհասնի 500 կիլոմետրի, միջին լայնությունը՝ 10 կիլոմետրի, իսկ առավելագույն խորությունը՝ 90 մետրի։*

* * *

*Ջրամբարի ընդհանուր տարողությունն է 146,7 միլիարդ խորանարդ մետր ջուր։ Ասուանի արհեստական ծովը իր ծավալով, երեք անգամ կգերազանցի Կույբիշևյան ջրամբարին։*

* * *

*Ամբողջ կոմպլեքսի խոշորագույն կառույցը կլինի հիդրոէլեկտրակայանը, որի ընդհանուր կարողությունը կկազմի 2 միլիոն 100 հազար կիլովատ։ Նշենք, որ ԱՄՆ-ի ամենախոշոր՝ Գրենդ-կուլի կայանի հզորությունը 1 միլիոն 974 հազար կիլովատ է։ Ասուանի հիդրոէլեկտրակայանը մեր Դնեպրոգեսից երեք անգամ զորեղ կլինի։*

* * *

*Ներկայումս ՄԱՌ-ի և Սուդանի գյուղացիները ոռոգման համար Նեղոսից տարեկան վերցնում են 52 միլիարդ խորանարդ մետր ջուր։ Ասուանի ջրամբարից ՄԱՌ-ը տարեկան լրացուցիչ կարող է վերցնել 84 միլիարդ խորանարդ մետր ջուր։*

* * *

*Կառույցի առաջին հերթի ավարտով անհրաժեշտ պայմաններ են ստեղծվել ջրամբարում լրացուցիչ չորս խորանարդ կիլոմետր ջուր կուտակելու համար, որը հնարավորություն կտա 1964 թվականի աշնանը ոռոգելու 100 հազար հեկտար։ Ջրամբարն իր նախագծային հզորությանը կհասնի 1977—1980 թվականներին։*

* * *

*Թե ինչպիսի հսկայական տնտեսական նշանակություն ունի Ասուանը ՄԱՌ-ի համար, կարելի է դատել հետևյալ տվյալներից։ Ասուանի հիդրոհանգույցն ամեն տարի կբերի 234 միլիոն եգիպտական ֆունտ ազգային եկամուտ, որը կկազմի նախառևոլյուցիոն Եգիպտոսի ամբողջ եկամտի մոտավորապես կեսը։*

* * *

*Ասուանի հիդրոհանգույցի շահագործումից ստացված տարեկան եկամուտը հավասար կլինի նրա շինարարության արժեքի 57 տոկոսին։ Նշանակում է հիդրոհանգույցի շինարարության վրա կատարված ծախսերը կվերադարձվեն երկու տարում։*

---



# Ազատագրված ԱԼԺԻՐԸ

*1962 թվականի մարտի 18-ին վերջացավ Ֆրանսիայի 132-ամյա տիրապետությունը Ալժիրում։ Այդ օրը Շվեյցարիայի սահմանի մոտ գտնվող ֆրանսիական Էվիան քաղաքում Ալժիրի ռեսպուբլիկայի ժամանակավոր կառավարության ու Ֆրանսիայի ներկայացուցիչների միջև ստորագրվեցին համաձայնագրեր Ալժիրի՝ որպես անկախ սուվերեն պետության ինքնորոշման ու պատերազմի դադարեցման մասին։ Այդ փաստաթղթերը, չնայած իրենց թերություններին, վկայում են Ալժիրի ժողովրդի պատմական հաղթանակի մասին։*

*Սովետական Միության ժողովուրդների և սովետական կառավարության անունից ողջունելով Ալժիրի ժողովրդի ու նրա ժամանակավոր կառավարության այդ փայլուն հաղթանակը, Ն. Ս. Խրուշչովը հայտարարեց, որ ՍՍՌՄ-ը ճանաչում է երիտասարդ ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկան և պատրաստ է նրա հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատելու։ Սովետական կառավարության այդ քայլը լուրջ աջակցություն էր Ազգային ազատագրության ճակատի և ամբողջ Ալժիրի ժողովրդի համար պատմական պատասխանատու ժամանակաշրջանում, երբ նա պատրաստվում էր երկրի ինքնորոշմանն ուղղված համաժողովրդական հանրաքվեին, որի արդյունքներից էր մեծ չափով կախված գաղութարարների դեմ յոթնամյա հերոսական պայքարի ելքը։*

*Ալժիրի Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որը հռչակվեց 1962 թվականի սեպտեմբերի 25-ին, գրավում է 2.382 հազար քառակուսի կիլոմետր տարածություն (աշխարհում 10-րդ տեղը), բնակչության թիվը հասնում է մոտ 12 միլիոնի։ Սահմանակից է Մարոկկոյին, Մավրիտանիային, Մալիին, Նիգերին, Լիբիային և Թունիսին։ Երկրի մայրաքաղաքն է Ալժիրը, որն ունի ավելի քան 800 հազար բնակիչ։ Մյուս խոշոր քաղաքներից են. Օրանը՝ 450 հազար և Կոնստանտինան՝ 250 հազար բնակչով։*

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐ

*132 տարի շարունակ Ալժիրը Ֆրանսիայի ագրարա-հումքային կցորդն էր։ 1962 թվականին երկրի ազգային եկամտի մեջ արդյունաբերությունը կազմում էր 30 տոկոսից պակաս մասը, իսկ վերամշակող արդյունաբերությունը հազիվ հասնում էր 10 տոկոսի։ Բնակչության ավելի քան 80 տոկոսն զբաղվում էր գյուղատնտեսությամբ։ Ամենալավ և բերքատու հողամասերը պատկանում էին գաղութարարներին, որոնցից շատերն ունեին մի քանի հազար հեկտարի հասնող կալվածքներ։*

*Ալժիրի Ազգային ազատագրության ճակատ պարտիայի 1962 թվականի հունիսին Տրիպոլիում (Լիբիա) ընդունած ծրագրում ռևոլյուցիոն անհրաժեշտ վերափոխումների շարքում կենտրոնական տեղ գրավեց հողային ռեֆորմը, որը պետք է իրականացվեր «հողը նրան, ով այն մշակում է» նշանաբանով։ Հողային ռեֆորմը Ալժիրում արմատապես կփոխի հասարակության սոցիալական կառուցվածքը, բացա կստեղծի գաղութային էկոնոմիկան ազգայինի վերափոխելու համար։ Հաջողությամբ իրականաց-*

նել հողային ռեֆորմը, տվյալ դեպքում նշանակում է՝ ռևոլյուցիոն խորագույն հեղաշրջում կատարել։

Պաշտոնական տվյալներով հողը, մինչև անկախության հռչակումը, Ալժիրում բաժանվում էր հետևյալ կերպ. եվրոպացի 22 հազար հողատերերի ձեռքին էին 2.726 հազար հեկտար լավագույն, ամենաբերրի տարածությունները, այսինքն՝ մեկ տնտեսությանը միջին թվով հասնում էր 124 հեկտար։ Մինչդեռ 630 հազար ալժիրցի գյուղացիներին պատկանում էր 7.350 հազար հեկտար հող, այսինքն՝ մեկ տնտեսությանը միջին հաշվով հասնում էր 11 հեկտարից մի փոքր ավելի, որից միայն 5 հեկտարն էր մշակության համար պիտանի։ Մեկ միլիոն գյուղացիական ընտանիքներ բոլորովին զուրկ էին հողից։ Գյուղատնտեսության մեջ զբաղված եվրոպացու տարեկան միջին եկամուտը կազմում էր 14 հազար նոր ֆրանկ, ալժիրցունը՝ 300 ֆրանկ (47 անգամ պակաս)։ Այս համառոտ թվաբանության մեջ պարզ երևում է, թե ինչու ալժիրցի գյուղացին, պայքարելով հանուն հայրենիքի ազատության և անկախության, երազում էր հողի մասին, դարավոր անիրավության վերացման մասին։ Ալժիրցի ֆելլահների ուսերին էր ընկած պատերազմի հիմնական ծանրությունը (նրանք կազմում էին ազգային-ազատագրական բանակի զինվորների ու սպաների 80 տոկոսը) և ռևոլյուցիան չէր հաղթանակի, եթե նրանք չդառնային իրենց կողմից մշակվող հողի տերը։

Ֆրանսիական մոնոպոլիստական ընկերությունները, ինչպիսիք են՝ «Բանկ դե լ Յունիոն պարիզիեն», Ռոտշիլդի «Բանկ դե լ Ենդոշին», Փարիզյան-Նիդեռլանդյան բանկը և մյուսները վերահսկում էին Ալժիրի արդյունաբերական բոլոր ձեռնարկություններին, բանկային սիստեմին, արտաքին և ներքին առևտրին։ Նրանք էին արդյունահանում Ալժիրի հանքային ողջ հարստությունները։

Չափազանց ծանր էր աշխատավորների վիճակը։ Մասսայական գործազրկությունը տասնյակ հազարավոր ալժիրցիների ստիպում էր հեռանալ հայրենիքից և «բախտ» որոնել օտարության մեջ։ Երկրի հիմնական բնակչության 95 տոկոսն անգրագետ էր։ Ավելի քան 7 տարի տևող պատերազմը բոլորովին քայքայեց Ալժիրի առանց այն էլ թույլ էկոնոմիկան։ Հարկավոր էր վճռել Թունիսում և Մարոկկոյում գտնվող 500 հազար փախստականների, ֆրանսիական ճամբարներում գտնվող երկու միլիոն ալժիրցիների բախտը։ Երկրում կային մոտ երկու միլիոն գործազուրկ, 300 հազար որբ։

Այս բոլոր դժվարությունները կարճ ժամանակամիջոցում հաղթահարելու համար Բեն Բելլայի կառավարությունը պետք է կանգներ միակ ճիշտ ուղու, էկոնոմիկայի ազգայնացման վրա։ Ծայրահեղ ծանր վիճակը պահանջում էր անհապաղ միջոցներ ձեռնարկել։ Այդ պատճառով արդեն 1962 թվականի հոկտեմբերի 3-ին, Բեն Բելլայի կառավարության ստեղծումից 7 օր անց, հատուկ դեկրետ ընդունվեց, որով օրինականացվում էին գյուղացիների տարերային գործողությունները։ Նախկինում Ալժիրից փախած ֆրանսիական գաղութարարներին պատկանած և այժմ բռնագրավված հողերի վրա կազմակերպվում էին ինքնուրույն կառավարման կոմիտեներ։ Մի այլ դեկրետով օրինականացվում էր նաև փախած ֆրանսիացիների ձեռնարկությունների վրա հասարակական վերահսկողություն սահմանելը։ Այդ դեկրետները, «Ալժե ռեպյուբլիկեն» թերթի արտահայտությամբ, «Երկրի սոցիալիստական զարգացման ուղու սկիզբ հանդիսացան»։

Դրական նշանակություն ունեցավ այն հանգամանքը, որ կառավարությունն սկզբից ևեթ հրաժարվեց փախած գաղութարարների խոշոր կալվածքները մանր գյուղացիական հողամասերի բաժանելուց։ Դա կարող էր նպաստել, ինչպես նշում էին Ալժիրի ղեկավարները, հողի սպեկուլյացիային, կստեղծվեր սոցիալական մի նոր խավ, որը հակառևոլյուցիայի հենարանը կդառնա։

1963 թվականի մարտին և հոկտեմբերին ընդունված մի շարք կարևորագույն դեկրետներով ազգայնացվեցին ֆրանսիացի կալվածատերերի և ալժիրցի խոշոր սեփականատերերի հողամասերը։ «Անկախ նրանից,— հայտարարեց Բեն Բելլան,— թե սպեկուլյանտներն ու հարստահարիչները եվրոպական շլյապա թե արաբական ֆես ունեն իրենց գլխին, բայց 132 տարվա ընթացքում Ալժիրի ժողովրդի տզրուկներն են եղել և խիստ ճարպակալել են, մենք կսարքենք այնպիսի քարաբաղնիս, որտեղ կհալվի նրանց չարագույն ճարպը»։ Այդ դեկրետներով սահմանափակվեց հողի սեփականությունը։ Բռնագրավված հողամասերը հանձնվեցին ընդհանուր օգտագործման։ Կարճ ժամանակում երկրում ստեղծվեցին գյուղատնտեսական հազարավոր կոոպերատիվներ։

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՏԵՂԱԴՐՈՒՄԸ

Դեռևս երկու տարի էլ չի անցել Ալժիրի Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հռչակումից։ Ալժիրի ռևոլյուցիան այժմ թևակոխել է նոր փուլ. նրա առջև դրված են քաղաքական նոր խնդիրներ։ Քանի դեռ տեղի էր ունենում ազգային-ազատագրական պայքար, բանվորները, գյուղացիները, մանր առևտրականները և մինչև անգամ տեղական ֆեոդալները շահագրգռված էին շուտ վերջ տալ ընդհանուր թշնամուն՝ ֆրանսիական գաղութարարներին։ Պայքարի այդ ընդհանուր նպատակը համախմբում էր բոլորին նաև Ազգային ազատագրության ճակատում, որը Ալժիրի ժողովրդի ազգային ձգտումների քաղաքական արտահայտիչը հանդիսացավ։

Այժմ, երբ իրականացվել է ռևոլյուցիայի առաջին նպատակը, և Ալժիրը անկախություն է նվաճել, սկսվել է դասակարգային սահմանազատման բնական պրոցեսը, որն իր արտահայտությունը գտավ նաև երկրի զարգացման ուղիների հարցում ղեկավարության ներսում եղած տարաձայնություններում։

Ո՞ր դասակարգերն են այժմ մասնակցում ռևոլյուցիայի զարգացմանը։ Ո՞վ է գտնվում Ալժիրի երիտասարդ պետության ղեկի մոտ։ Առաջին տեղումն են չքավոր գյուղացիությունը, մշտական և սեզոնային գյուղատնտեսական բանվորները, մանր հողատերերը, որ աչքի են ընկել և՛ թվով, և՛ պայքարի մեջ ակտիվ մասնակցությամբ։ Դրանցից պետք է հատուկ նշել 500 հազար գյուղատնտեսական բանվորներին, որոնք տարբերվում են բարձր կազմակերպվածությամբ։ Գյուղական մեծաթիվ պրոլետարներն արդյունաբերական պրոլետարիատի հետ միասին կազմում են ժողովրդի ամենառևոլյուցիոն խավը։

Ալժիրցի բանվորները, ինչպես նաև եվրոպական բանվորների այն առաջավոր մասը, որը չենթարկվեց օասականների շովինիստական ագիտացիային և պայքարում էր Ալժիրի ժողովրդի հետ ուս-ուսի, հանդիսանում են ազգային-ազատագրության համար մղվող պայքարի լավագույն մարտիկները։ Այժմ, պատերազմից հետո, Ալժիրի բանվոր դասակարգը գլխավոր հենարան է հանդիսանում հակագաղութային և հակակապիտալիստական վճռական միջոցառումների իրականացման գործում։ Նրա դերը և տեսակարար կշիռը նոր կյանքի շինարարության մեջ ավելի ու ավելի են աճում։

Սոցիալական մյուս խավը, որն ակտիվ մասնակցեց հանուն ազգային-ազատագրման մղվող պայքարին, մանր բուրժուազիան է— արհեստավորները, մանր առևտրականները, ազատ մասնագիտությունների ներկայացուցիչները, ինչպես նաև մանրբուրժուական ինտելիգենցիան։

Ինչ վերաբերում է ազգային բուրժուազիային, ապա այն իր թուլության պատճառով շարժման մեջ ղեկավար դեր չէր խաղում և հաղթանակ ձեռք բերելուց հետո, քաղաքականապես մեկուսացվեց, որովհետև հարստանում էր պատերազմում և վարկաբեկվեց որպես ֆրանսիական մոնոպոլիստական կապիտալի գործակից։ Սակայն պետք է նշել, որ ազգային բուրժուազիան, գնելով երկրից փախած ֆրանսիացիների ունեցվածքը, զգալիորեն ամրացավ և շարունակում է գաղափարական որոշ ազդեցություն ունենալ իր և պրոլետարիատի միջև կանգնած դասակարգերի վրա։

Այսպիսով, պարզ է դառնում, որ ազգային-ազատագրական պատերազմի հուսալի հիմքը և նրա հզոր ուժը հանդիսացան աշխատավոր գյուղացիությունը, ալժիրցի ու եվրոպացի առաջավոր բանվորները և քաղաքների ծառայողները՝ բնակչության հիմնական աշխատավոր խավերը, որոնք համաժողովրդական բնույթ հաղորդեցին պայքարին։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ

Արաբական խոշոր երկրներից Ալժիրն ավելի ուշ դարձավ ինքնուրույն պետություն, բայց կարողացավ իր սոցիալական զարգացմամբ առաջ անցնել արաբական համարյա բոլոր երկրներից, իր պատվավոր տեղը գրավել միջազգային ասպարեզում։

Ժողովրդական զանգվածների ակտիվ նախաձեռնությունը և Բեն Բելլայի կառավարության առաջադիմական լուրջ քայլերը նպաստեցին սոցիալիստական սեկտորի առաջացմանն ու ամրապնդմանը ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության ու առևտրի մեջ։

Երիտասարդ ռեսպուբլիկան կարճ ժամանակամիջոցում կարողացավ հաղթահարել բազմաթիվ դժվարություններ և խափանել թշնամու շատ մեքենայությունները։ Իրենց քաղաքական իշխանությունը կորցրած գաղութարարները չարախնդորեն դիտում էին երիտասարդ պետության տնտեսական ու քաղաքական դժվարությունները, հուսալով, որ իրենց կհաջողվի այնտեղ վերադառնալ հետևի դռնից։ Սակայն այդ հույսերն ի դերև ելան։ «Եթե մենք 1963 թ. մարտին չընդունեինք սոցիալիստական դեկրետները,— ասում է Բեն Բելլան,— մենք կտեսնեինք, թե ինչպես բուրժուազիան կխեղդեր ռևոլյուցիան»։ Ժողովրդական զանգվածների, ռևոլյուցիոն բանակի և կառավարության միասնությունն ապահովեց մարտյան դեկրետների հաջող իրականացումը։

Ալժիրի ժողովրդի այդ պատմական հաղթանակին նպաստեցին մի շարք կարևորագույն գործոններ։ Ազգային ազատագրության ճակատ պարտիայի ղեկավարների մարտական կորիզը՝ Բեն Բելլայի գլխավորությամբ, վճռականորեն անցավ ժողովրդի կողմը և հակաիմպերիալիստական երկարատև պայքարի ընթացքում սերտ կապ էր պահպանում նրա հետ, և հետզհետե ավելի ու ավելի էր գիտակցում, որ միայն բանվորներն ու գյուղացիները կարող են գառ-

ԳԻՆԸ 25 Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՐԵՍՈՒՆԵՐՈՐԴ ՀԵՐԲԻՑԻԴԸ

«Պրեպարատ 50»—այսպես է պայմանականորեն կոչել իր նոր հերբիցիդը Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի հերբիցիդների սինթեզի և փորձարկման լաբորատորիայի վարիչ Վ. Դովլաթյանը։ Դաշտային պայմաններում կատարված փորձերը տվել են լավ արդյունքներ։ 400—500 գրամ նոր թունաքիմիկատը բավական է մեկ հեկտար հացահատիկային ցանքսի մոլախոտերի 90 տոկոսը ոչնչացնելու համար, ընդ որում ցորենի բերքատվությունն աճել է ավելի քան մեկ քառորդով։ Արդյունավետության տեսակետից հերբիցիդը չի զիջում հայտնի կրոտիլինին, իսկ որոշ հատկություններով գերազանցում է նրան։ Պրեպարատը հեշտությամբ է թափանցում բույսերի մեջ, գոլորշիացման նկատմամբ ավելի դիմացկուն է։ Հերբիցիդի համար հումքային նյութ է հանդիսանում քացախաթթուն։

Նոր պրեպարատը երեսուներորդ հերբիցիդն է, որ սինթեզվել է լաբորատորիայում։ Այս տարի այն լայնորեն կփորձարկվի արտադրության մեջ։

## ՔԻՄԻԱՆ ՔԻՄԻԿՈՍՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պոլիպրոպիլենը բոլոր սինթետիկ թելերից ամենաթեթևն է։ Այն բոլորովին չի ներծծում խոնավություն, ամրության տեսակետից չի զիջում կապրոնին և ավելի կայուն է ալկալիների ու թթուների նկատմամբ, քան մնացած քիմիական նյութերը։ Բացի դրանից պոլիպրոպիլենը ամենաէժանն է մյուս սինթետիկ թելերից։

Մետաքսի արդյունաբերության կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտում մշակվել է պոլիպրոպիլենից գործվածքներ ստանալու տեխնոլոգիա։ Այդ գործվածքների առաջին սպառողները կլինեն հենց այդ թելի ստեղծողները՝ քիմիկոսները։ Պոլիպրոպիլենից ստացվում է լավ պաշտպանողական մասնագիտական հագուստ՝ քիմիական արդյունաբերության աշխատողների համար, ինչպես և տեխնիկայում կիրառվող բազմապիսի ֆիլտրներ։

## ՔՆԱԲԵՐ ԱՊԱՐԱՏ

Ճապոնիայում պատրաստվել է անքնությամբ հաղթահարելու ապարատ՝ սլիպպինգտոն։ Նա առաջացնում է միօրինակ ձայն, որը հիշեցնում է թափվող կաթիլների կամ հավասարաչափ ծփացող ալիքների ձայնի։ Այդ ապարատը միանգամայն անվնաս է և ավելի էֆեկտիվ է, քան համապատասխան դեղանյութերը անքնության դեպքում։

## ՄԱՐԴԸ ԵՎ ՌԱԴԻՈՆ

Տրանզիստորային ընդունիչների սնուցման համար նախագծվել է ջերմա-էլեկտրական մարտկոցի նոր տիպ. մարտկոցը կրում են գրպանում և այն գործում է մարդկային մարմնի ջերմության ներգործությամբ (Ճապոնիա)։

## ԿԱՊԿԻ ԵՐԻԿԱՄՆԵՐԻ ՊԱՏՎԱՍՏՈՒՄԸ ՄԱՐԴՈՒՆ

Շիմպանզեի երիկամների հաջող պատվաստման վիրահատումը 44-ամյա բանվորի վրա կատարվել է հետևյալ կերպ։ Երիկամները վերցվել են 90 ֆունտ կշիռ ունեցող կապկից։ Դրանք սկսել են գործել հենց որ միացվել են հիվանդի օրգանիզմի անոթներին։ Խրոնիկ բորբոքումով տառապող հիվանդի երիկամները թողնվել են տեղում։ Վիրահատումը տևել է 39 րոպե։ Վիրահատումից մի շաբաթ առաջ հիվանդին սկսել են սրսկել բիոլոգիական անհամատեղության ռեակցիան ճնշող պրեպարատներ։ Թե ինչքան ժամանակ կգործեն պատվաստված երիկամները, դժվար է ասել։ Բայց այժմ բանվորն իրեն լավ է զգում (ԱՄՆ)։